

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**9**

ՍԵՊՏԵՄԲԵՐ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

*ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ* . . . . . . . . . . . . . 3

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

*Մ. ԱԴՈՆՑ— Տնտեսական մեխանիզմը և նրա կատարելագործումը* . . . . . 7
*Ջ. ՋԱՆՈՅԱՆ— Էկոնոմիկայի նոր վերելքի նշանաբանով* . . . . . . . 14

ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ

*Է. ՄԱՐԿՈՍՅԱՆ— Արդյունավետության բարձրացման ուղիով* . . . . . . 22
*Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, Գ. ԱՐԵԼՅԱՆ— Խնայողությանը՝ կոմպլեքսային մոտեցում* . . 28

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

*Ռ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Շրջկոմի հրահանգիչը* . . . . . . . . . . 33
*Ա. ՍԱՐԳՍՅԱՆ— Կուսշարքերի համալրման կարևոր ռեզերվը* . . . . . . 38

ՍՍՀՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

*Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ— Բարեկամության մեծ ուժը* . . . . . . . . . . 44

ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ 40 ՏԱՐԻՆ

*Հ. ՄԱՆՈՒԿՅԱՆ— Հայաստանի կոմունիստների մոբիլիզացիան Կերչ* . . . . . 51
*Վ. ՍԱՀԱՐՅԱՆ— Դաստիարակենք իսկական հայրենասերներ* . . . . . . 56

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ— Ականավոր հեղափոխականն ու պետական գործիչը* . . . . 62

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

*Հ. ՀԱԿՈԲՅԱՆ— ԱՄՆ-ը երկընտրանքի առջև* . . . . . . . . . 69

ԳԻՏԱԿԱՆ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ՝ Ի ԲԱՐՕՐՈՒԹՅՈՒՆ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ

*Ժ. ՀԱԿՈԲՅԱՆ— Գիտնականի պատասխանատվությունը* . . . . . . . 78

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

*Ս. ՀԱԿՈԲՅԱՆ— Անվերջության պրոբլեմը և մաթեմատիկայի «ճգնաժամը»* . . . 84

ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

*Տանյա ԹԱՆԴԻԼՅԱՆ— Իբրև սիրո առհավատչյա* . . . . . . . . 93

ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ


В ЦЕНТРАЛЬНОМ КОМИТЕТЕ КПСС . . . . . . . . 3

ПРОБЛЕМЫ СОВЕРШЕНСТВОВАНИЯ РАЗВИТОГО СОЦИАЛИЗМА

М. АДОНЦ — Хозяйственный механизм и его совершенствование . . . 7

Дж. ДЖАНОЯН — Девиз—подъем экономики . . . . . . 14

НА РУБЕЖАХ ОДИННАДЦАТОЙ ПЯТИЛЕТКИ

Э. МАРКОСЯН — Путем повышения эффективности . . . . 22

Р. АРУТЮНЯН, Г. АБЕЛЯН — Бережливости — комплексный подход . 28

ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА

Р. ГЕВОРГЯН — Инструктор райкома . . . . . . . 33

А. САРГСЯН — Важный резерв пополнения партийных рядов . 38

В БРАТСКОЙ СЕМЬЕ СОВЕТСКИХ НАРОДОВ

А. ВАРДАНЯН — Великая сила дружбы . . . . . . 44

К 40-ЛЕТИЮ ВЕЛИКОЙ ПОБЕДЫ

Г. МАНУКЯН — Мобилизация коммунистов Армении в Керчь . . 51

В. СААРЯН — Воспитывать настоящих патриотов . . . . . 56

ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ

С. АЛИХАНЯН — Выдающийся революционер и государственный деятель 62

НА МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ

А. АКОПЯН — США перед дилеммой . . . . . . . 69

НАУЧНЫЕ ОТКРЫТИЯ — НА БЛАГО ЧЕЛОВЕЧЕСТВА

Ж. АКОПЯН — Ответственность ученого . . . . . . 78

ТРИБУНА МОЛОДОГО УЧЕНОГО

С. АКОПЯН — Проблема бесконечности и «кризис» математики . . 84

ЛЮДИ НАШИХ ДНЕЙ

Таня ТАНДИЛЯН — Как залог любви . . . . . . 93






# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է ընդունել «Աշխատավորության շրջանում կատարվող քաղդաստիարակչական աշխատանքին Էստոնական ՍՍՀ-ի ղեկավար կադրերի մասնակցության մասին»։**

*Որոշման մեջ նշված է, որ Էստոնիայի կոմկուսի Կենտկոմը, կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, կատարելով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան, 1984 թվականի փետրվարյան ու ապրիլյան պլենումների որոշումները, ուժեղացրել են ուշադրությունը գաղափարախոսական, քաղդաստիարակչական գործունեության նկատմամբ։ Հանրապետական կուսակցական կազմակերպությունը նպատակասլաց հակապրոպագանդա է մղում, հակահարված է հասցնում արտասահմանյան հեռուստատեսության ու ռադիոյի, հետադեմ տարագրության և կղերական կենտրոնների գաղափարախոսական դիվերսիաներին։*

*Աշխատավորության շրջանում կատարվող քաղաքական աշխատանքում կուսակցական կոմիտեները լայնորեն հենվում են ղեկավար կադրերի վրա։ Կուսակցական, սովետական, արհմիութենական աշխատողները, տնտեսական ղեկավարները ակտիվորեն են մասնակցում ՍՄԿԿ-ի ու սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության պարզաբանմանն ու կենսագործմանը, ապահովում են գաղափարախոսական, կազմակերպչական ու տնտեսական գործունեության ավելի ու ավելի սերտ միասնությունը։*

*Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության Գերագույն սովետի նախագահության ու Մինիստրների խորհրդի ղեկավար աշխատողները, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարները, մինիստրները կանոնավոր կերպով ելույթներ են ունենում մամուլի կոնֆերանսներում, մամուլի էջերում, հեռուստատեսությամբ ու ռադիոյով, բնակչությանը տեղեկացնում են կառավարման մարմինների գործունեությանը, պատասխանում հարցերի։*

*Նրանց մասնակցությամբ անցկացվում են միասնական քաղօրեր, հասարակաքաղաքական ընթերցումներ, բաց նամակի օրեր։ Ավելացել է տնտեսական ղեկավարների թիվը պրոպագանդիստների, զեկուցողների և դասախոսների շրջանում։ Նրանցից շատերը գլխավորում են ագիտկոլեկտիվներ, տնտեսագիտական կրթության խորհուրդներ, ժողովրդական համալսարաններ, մտնում են գաղափարախոսական հանձնաժողովների կազմի մեջ։ Կուսակցական կոմիտեները բարձրացնում են ղեկավար կադրերին ներկայացվող պահանջկոտությունը մարդկանց դաստիարակության համար։ Այդ հարցերի վերաբերյալ անցկացվում են զրույցներ, հաշվետվություններ են լսվում կուսակցական ու բանվորական ժողովներում, կոմկուսի Կենտկոմի, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների բյուրոների նիստերում և պլենումներում։*

*Ղեկավար կադրերի քաղդաստիարակչական աշխատանքը նպաստում է աշխատավորների արտադրական ու հասարակական ակտիվության զարգացմանը, հանրապետության առջև կանգնած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծմանը։ Կոլեկտիվների մեծ մասում ամրապնդվել է կարգապահությունը,*

կրճատվել են աշխատաժամանակի կորուստները, կադրերի հոսունությունը։ Կատարելագործվում է ագրոարդյունաբերական համալիրի կառավարումը։ Հաջողությամբ են կատարվում աշխատանքի արտադրողականությունը պլանից ավելի մեկ տոկոսով բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ 0,5 տոկոսով իջեցնելու սոցիալիստական պարտավորությունները։ Ազգային եկամտի աճի տեմպերը գերազանցում են հնգամյակի առաջադրանքները։

Սրա հետ միասին աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակության ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների և ղեկավար կադրերի գործունեության մեջ կան թերություններ ու վրիպումներ։ Դեռևս ոչ բոլոր ղեկավարներն են գաղափարախոսական աշխատանքին մասնակցելը դիտում որպես իրենց ուղղակի պարտականությունը։ Բացակայում է գործուն վերահսկողությունը նրանց գաղափարատեսական մակարդակի բարձրացման նկատմամբ։ Որոշ ղեկավար աշխատողներ թույլ են տալիս վարչարարություն, անհամեստություն, սնապարծություն, չարաշահում են իրենց պաշտոնեական դիրքը։

Առանձին ղեկավարներ հարկ եղած ուշադրությունը չեն նվիրում հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությանը։ Բավարար խորությամբ չեն հետազոտվում ազգային հարաբերությունների պրոբլեմները, ինտերնացիոնալիստական գիտակցության ձևավորման հարցերը։ Միշտ չէ, որ մշակույթի հիմնարկներ և ստեղծագործական միություններ գլխավորող կոմունիստներին հարկ եղած պահանջկոտություն է ներկայացվում գրականության ու արվեստի ստեղծագործությունների գաղափարական և գեղարվեստական մակարդակի համար։

Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական աշխատողները հազվադեպ են ելույթ ունենում երիտասարդական լսարաններում, առևտրի, հասարակական սննդի, կենցաղսպասարկման, առողջապահության աշխատողների կոլեկտիվներում, բնակչության շրջանում։ Զեկուցումներին ու զրույցներին, մամուլում տպագրվող ելույթներին երբեմն պակասում են կոնկրետությունը, համոզչությունը, քաղաքական սրությունը, որոշ պրոպագանդիստ տնտեսական ղեկավարներ անբավարար են պատրաստվում պարապմունքներին, դրանց անցկացումը վերահանձնարարում են իրենց տեղակալներին։ Անբավարար են օգտագործվում անհատական դաստիարակչական աշխատանքի մեթոդները։

Ամենուրեք չէ, որ հոգում են այն մասին, որ աշխատավորների բարեկեցության աճն ուղեկցվի նրանց գաղափարաբարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացումով։ Թերագնահատվում է սոցիալիստական մրցության, աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևի դաստիարակչական նշանակությունը։ Բոլոր ղեկավարները չէ, որ բարձր պատասխանատվությամբ են վերաբերվում պետական պլանների ու պարտավորությունների կատարմանը, բարձրարտադրողական աշխատանքի և կենցաղի համար անհրաժեշտ պայմանների ստեղծմանը։ Առաջին կիսամյակում յուրաքանչյուր ութերորդ ձեռնարկություն խախտել է արտադրանքի մատակարարումների պայմանագրերը։ Չեն կատարվում հումքի և նյութերի տնտեսման առաջադրանքները։ Հնգամյակի սկզբից թերակատարվում են մսի ու կաթի գնումները։ Խիստ դանդաղ են զարգանում ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունները։

ՍՄԿԿ Կենտկոմը Էստոնիայի կոմկուսի Կենտկոմին, կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրել է վերացնել վերոհիշյալ թերությունները։ Որոշման մեջ նշված է, որ ղեկավար կադրերի կազմակերպչական ու քաղաքական գործունեությունը պետք է լիովին համապատասխանի զարգացած սոցիալիզմի կատարելագործման խնդիրներին, կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան, 1984 թվականի փետրվարյան ու ապրիլյան պլենումների պահանջներին։ Կարևոր է, որ լենինյան ոճը և մասսաների շրջանում կատարվող ամենօրյա քաղաքական աշխատանքի ավանդույթները դառնան բո-



լոր մակարդակների ղեկավարների ներքին պահանջմունքը։ Նրանք կոչված են անդուլ կերպով խորացնելու կուսակցության կապերը ժողովրդի հետ, դաստիարակելու ոչ միայն խոսքով, այլև գործով՝ աշխատանքի հստակ կազմակերպումով, մարդու նկատմամբ կոնկրետ հոգատարությամբ, անձնական օրինակով, իրենց բարոյական կերպարով։

Կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, ղեկավար կադրերը պարտավոր են կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանքի միջոցների, ձևերի ու մեթոդների հարուստ զինանոցը հմտորեն օգտագործել, որպեսզի աշխատավորական կոլեկտիվներին մոբիլիզացնեն ըստ ամենայնի ինտենսիվացնելու արտադրությունը, արագացնելու գիտատեխնիկական առաջադիմությունը, կենսագործելու պարենային ու էներգետիկ ծրագրերը։ Անհրաժեշտ է ուժեղացնել ուշադրությունը ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկման ոլորտի ընդլայնման, բնակարանային պայմանների բարելավման, բնակչության բժշկական ու կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավման հարցերի նկատմամբ։

Հանրապետական կուսակցական կազմակերպության կարևորագույն խնդիրը համարել աշխատավորների դասակարգային դաստիարակության ուժեղացումը։ Հասնել այն բանին, որ մասսաների շրջանում կատարվող քաղաքական աշխատանքի բովանդակությունը ավելի լրիվ համապատասխանի մարդկանց գիտակցական ու կրթական հարաճուն մակարդակին։ Խորապես և մատչելիորեն պարզաբանել կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը, համոզիչ կերպով պրոպագանդել սոցիալիստական ապրելակերպի առավելությունները։ Ցայտունորեն ցույց տալ, որ էստոն ժողովրդի պատմական բախտն անխզելիորեն կապված է սովետական պետության զարգացման ու ամրապնդման հետ։ Փաստարկված կերպով մերկացնել հակասովետական գաղափարախոսական կենտրոնների զրպարտչական հերյուրանքները, արժանի հակահարված հասցնել ամբոխավարներին և չարախոսներին։

Պրոպագանդան և ագիտացիան մղել, հաշվի առնելով կոնկրետ պայմանները և բնակչության զանազան խմբերի առանձնահատկությունները։ Մշտապես հոգալ երիտասարդության գաղափարական, աշխատանքային, բարոյական կոփման, նրա ռազմահայրենասիրական դաստիարակության մասին։ Ուժեղացնել կուսակցության ազդեցությունը գիտական ու արվեստագետ մտավորականության վրա, գիտության ու մշակույթի գործիչներին ավելի ակտիվորեն ներգրավել մասսայական-քաղաքական աշխատանքում։

Էստոնիայի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, ղեկավար կադրերը պետք է բարելավեն աշխատավորներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործը։ Այդ նպատակով լայնորեն օգտագործել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակի 40-ամյակի և հիտլերյան ֆաշիզմից հանրապետության ազատագրման 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստումը։ Ղեկավար կադրերը պարտավոր են հաստատակամորեն տիրապետել տնտեսական ու դաստիարակչական գործունեության՝ մյուս միութենական հանրապետություններում կուտակված փորձին, բնակչությանը ավելի լայնորեն հաղորդակից դարձնել ՍՍՀՄ-ի ժողովուրդների բազմազգ մշակույթի նվաճումներին։

Հանրապետության կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է բարձրացնեն ղեկավար կադրերի պատասխանատվությունը կուսակցության որոշումների անշեղ կենսագործման համար, աշխատավորության շրջանում կատարվող քաղաքական աշխատանքին անձամբ մասնակցելու համար, տնտեսական գործունեության դաստիարակչական հետևանքների համար։ Ելակետ պետք է լինի այն, որ ենթակաների հետ ղեկավարի վստահալից, անկեղծ հարաբերություններ կարող են հաստատվել լոկ այն դեպքում, երբ նրանք հանձին ղեկավարի տեսնում են գոր-

ծարարության, կուսակցական սկզբունքայնության, ազնվության, օրինավորության տիպարի։

Կադրային քաղաքականության ասպարեզում անշեղորեն իրականացնել վստահությունը պահանջկոտության հետ զուգորդելու կուսակցության հիմնադրույթը, զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Ազատվել անձեռներեց, անկարգապահ աշխատողներից, որոնք, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, հակված են «գործը փոխարինելու վիճաբանությամբ, աշխատանքը՝ խոսակցություններով»։ Ընդլայնել որակյալ բանվորական կադրերի պատրաստումը տեղացիներից, ամրապնդել բազմազգ կոլեկտիվները։

Էստոնիայի կոմկուսի Կենտկոմին, կուսակցական կոմիտեներին առաջարկված է հաստատակամորեն կատարելագործել ղեկավար կադրերի գաղափարատեսական ուսուցումը, նրանց մեջ ձևավորել քաղաքական բարձր կուլտուրա, տնտեսագիտական մտածողության նոր տիպ։ Դրա համար ավելի լավ օգտագործել բարձրագույն կուսակցական ուսումնական հաստատությունների, մարքսիզմ-լենինիզմի համալսարանի, վերապատրաստման դասընթացների հնարավորությունները։

Բարձրացնել կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարների պատասխանատվությունը կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցների աշխատանքի համար։ Ուսուցումը մոտեցնել ունկնդիրների հասարակական պրակտիկայի պահանջներին, նրանց սովորեցնել կառավարման, քաղաքական դաստիարակության արդյունավետ մեթոդներ, մանկավարժության, սոցիալական հոգեբանության, սոցիոլոգիայի հիմունքներ։ Կադրերին օպերատիվորեն տեղեկացնել կուսակցության քաղաքականության հրատապ հարցերին։

ՍՄԿԿ Կենտկոմը նշել է, որ ղեկավար կադրերին մեծ դեր է պատկանում աշխատավորական կոլեկտիվների մասին ՍՍՀՄ օրենքի իրականացման գործում, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալման ասպարեզում։ Նրանք պարտավոր են մշտապես հենվել հասարակական կազմակերպությունների վրա, անսալ բանվորական միջավայրից եկող խոսքին, սովորել մասսաներից, խորհուրդ անել նրանց հետ, հաշվի առնել գործարար առաջարկություններն ու քննադատական դիտողությունները, հասնել դրանց լրիվ կենսագործման։ Անշեղորեն, ամենուրեք և ամեն ինչում հաստատել սոցիալական արդարության սկզբունքը, ուշի-ուշով քննել նամակները, խնդրանքները, գանգատները, աշխատավորների ընդունելությունը կատարել նրանց համար հարմար ժամանակ։

Էստոնիայի կոմկուսի Կենտկոմը, կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, ղեկավար կադրերը անպայման պետք է ուժեղացնեն պայքարը խուլիգանության ու հարբեցողության դեմ, սոցիալիստական սեփականության հափշտակումների, դրամակուտակման և այլ իրավախախտումների դեմ։

Թերթերի, ամսագրերի, ռադիոյի, հեռուստատեսության խմբագրությունները պետք է սիստեմատիկաբար ընդհանրացնեն և պրոպագանդեն աշխատավորների դասակարգային, հայրենասիրական, ինտերնացիոնալ դաստիարակության փորձը, պատմեն ղեկավարի՝ կուսակցության ու պետության այդ վստահված անձի, արտադրական ու հասարակական բազմազան գործունեության մասին, բացահայտեն սոցիալ-տնտեսական, գաղափարախոսական գործունեության մեջ եղած թերությունների պատճառները, սկզբունքային քննադատության ենթարկեն բացասական երևույթները։

ՍՍՀՄ պետպլանին, ՍՍՀՄ ֆինանսների մինիստրությանը, ՍՍՀՄ կապի մինիստրությանը, ՍՍՀՄ հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեին հանձնարարված է հանրապետությանը օգնություն ցույց տալ մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների նյութական բազան ամրապնդելու գործում։

---

Զարգացած սոցիալիզմի

կատարելագործման պրոբլեմներ

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԸ ԵՎ ՆՐԱ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

**Մ. ԱԴՈՆՑ**
Տնտեսական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻՆ ԲՆՈՐՈՇ է արտադրաուժերի զարգացման բարձր մակարդակ։ Դրանց դինամիկ զարգացման և գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ է՛լ ավելի է խորացել աշխատանքի հասարակական բաժանումը, առաջացել են նյութական արտադրության բազմաթիվ ճյուղեր, սկզբունքային տեղաշարժեր են կատարվել արտադրաուժերի տեղաբաշխման մեջ։ Այդ ամենի հետևանքով ընդլայնվել ու բարդացել են տնտեսության տարբեր ճյուղերի, օղակների ու շրջանների փոխադարձ կապերը։ Մեր երկրում ստեղծվել է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս, մի բարդ ու չափազանց խոշոր տնտեսական օրգանիզմ, որի անխափան զարգացումը պահանջում է խելացիորեն կազմակերպել նրա կառավարումը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում ընկ. Կ. Ու. Չեռնենկոն նշեց, որ արդի պայմաններում «Լուրջ վերակառուցման կարիք ունեն էկոնոմիկայի կառավարման համակարգը, մեր ամբողջ տնտեսական մեխանիզմը։ Այս ասպարեզում աշխատանքը դեռ նոր է սկսվել։ Դա ընդգրկում է ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման և նրանց պատասխանատվության բարձրացման լայնամասշտաբ տնտեսափորձը»։

Տնտեսական մեխանիզմը հասարակական արտադրության կազմակերպման ու կառավարման ձևերի ու մեթոդների մի ամբողջական համակարգ է։ Այն սոցիալիզմի տնտեսական օրենքների ու կատեգորիաների գիտակցված կիրառման եղանակ է, որի նպատակը արտադրության դինամիկ զարգացումն է և ժողովրդի բարեկեցության բարձրացումը։ Այդ եղանակը հատուկ է միայն սոցիալիստական հասարակարգին։

Տնտեսական մեխանիզմի էության բացահայտման համար այստեղ ևս պետք է ելակետ ունենալ մատերիալիստական դիալեկտիկայի օրենքները։ Սովետական տնտեսագետների որոշ շրջաններում երկար ժամանակ տարածված էր այն թյուր կարծիքը, թե սոցիալիստական տնտեսության մեջ առկա հակասությունները միայն պլանավորման ու արտադրության կառավարման թերությունների հետևանք են։ Նրանք գտնում էին, որ եթե կատարելագործվեն պլանավորումը և ողջ տնտեսական մեխանիզմը, այդ դեպքում կվերանան տնտեսական կյանքում եղած հակասությունները։ Սխալ կլինի պնդել, թե սոցիալիստական հասարակարգում հակադրությունների միասնության սկզբունքը չի գործում կամ գործում է որոշ ընդհատումներով։ Չէ որ այն համընդհանուր բնույթ ունի և առանց դրա զարգացում լինել չի կարող։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում տված իր զեկուցման մեջ ընկեր Կ. Ու. Չեռնենկոն նշել է. «Այսօր պահանջվում է համակողմանիո-

րեն ուսումնասիրել հասուն սոցիալիզմին հատուկ ու անտագոնիստական հակասությունները և դրանց լուծման առանձնահատկությունները սովետական հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական ամրապնդվող միասնության պայմաններում։ Այստեղ, ինչպես և ամեն մի սոցիալական օրգանիզմում, տեղի է ունենում նորի պայքարը հնի հետ, ներգործում են ոչ միայն ստեղծարար, այլև բացասական միտումները»։

Իրենց ծագումով ու բովանդակությամբ սոցիալիստական հասարակարգում գոյություն ունեն երկու տեսակի սոցիալական հակասություններ։ Առաջինը դա անցյալից ժառանգած, իր դարն ապրած և նոր առաջացած առաջադիմական հարաբերությունների միջև եղած հակասություններն են, ասենք՝ սոցիալիստական նոր ապրելակերպի և բուրժուական ու մանր բուրժուական հոգեբանության մնացուկների միջև եղած հակասությունները։ Երկրորդ տեսակի հակասությունները զարգացած սոցիալիզմի նոր միտումների, կոմունիզմի ծիլերի և սոցիալիզմի օրոք առաջացած, բայց արդեն հնացած հարաբերությունների միջև եղած հակասություններն են։ Սրանք բխում են սոցիալիստական հասարակարգի էությունից և վերարտադրվող հակասություններ են։

Տնտեսական կյանքում բազմաթիվ են այդպիսի հակասությունները։ Շատ դեպքերում պլանային այս կամ այն ցուցանիշը չի համապատասխանում երկրի տնտեսական զարգացման այսօրվա պահանջներին, հետևապես այն պետք է փոխվի, կատարելագործվի։ Եթե նախկինում ձեռնարկության տնտեսական գործունեությունը գնահատվում էր համախառն արտադրանքի ցուցանիշով, իսկ հետո այն փոխարինվեց ապրանքային արտադրանքի ցուցանիշով, ապա այժմ օգտագործվում է իրացված արտադրանքի և զուտ արտադրանքի ցուցանիշը։ Այսօր դրանք ևս կատարելագործման կարիք ունեն։

Առկա են նաև սոցիալիստական արտադրաեղանակի էությունից չբխող, ոչ օրինաչափ կամ «պատահական» հակասություններ։ Վերջիններս առաջանում են պլանավորման թերություններից կամ տնտեսական խնդիրների սխալ լուծումից։ Երկար ժամանակ գյուղատնտեսական մթերքների գները նշանակալի չափերով ցածր էին դրանց արտադրության վրա կատարվող ծախսերից, որը խոչընդոտում էր ճյուղի զարգացումը։ Գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում նյութական շահագրգռվածությունը խթանելու նպատակով, սկսած 1953 թվականից, մի քանի անգամ բարձրացվեցին մթերքների գնման գները։ Բայց քանի որ գրեթե միաժամանակ ավելացվում էին նաև գյուղատնտեսական մեքենաների, պարարտանյութերի և վառելիքի գները, ապա գնման գների բարձրացման հետևանքով ստացվող լրացուցիչ եկամուտները նվազում էին։ 1983 թվականին գնման գները վերստին ավելացվեցին, բացի դրանից, վնասով աշխատող գյուղատնտեսական ձեռնարկությունների համար սահմանվեցին նաև գնման գների հավելումները։ Այդ ամենի շնորհիվ այժմ տնտհաշվարկային նորմալ պայմաններ են ստեղծվում գյուղատնտեսական ձեռնարկությունների աշխատանքի համար։

Տնտեսական մեխանիզմի հիմքը արտադրության սուբյեկտների տնտեսական շահերն են, որոնք արտադրահարաբերությունների դրսևորման ձևեր են։ Տնտեսական սուբյեկտների (պետական իշխանություն, աշխատանքային կոլեկտիվ, առանձին աշխատող) գործունեության գլխավոր շարժառիթը տնտեսական շահն է։ Տնտեսական զարգացման պրոցեսում հասարակական արտադրության արդյունավետությունն առաջին հերթին որոշվում է նրանով, թե տվյալ ժամանակաշրջանում գործող տնտեսական մեխանիզմը ինչքանով է համապատասխանում արտադրության սուբյեկտների շահերին, թե ինչպես են դրանք փոխհամաձայնեցված։

Քանի որ տնտեսական շահերը արտադրահարաբերությունների արտահայտման ձևեր են, հետևապես դրանք միաժամանակ արտահայտում են սոցիալիստական հասարակարգում առկա սեփականության ձևերի միասնությունն ու հակասությունները։

Հանրային սեփականության զարգացման արդի փուլում գոյություն ունեն պետական համաժողովրդական, աշխատանքային կոլեկտիվի կամ ձեռնարկության, անձնական, գերատեսչական, ռեգիոնալ շահեր և այլն։ Պետական հա-



մաժողովրդական շահերը հիմնված են պետական սեփականության վրա։ Այն հանրային սեփականության բարձրագույն ձևն է, որը որոշում է նաև կոոպերատիվ կոլտնտեսային սեփականության սոցիալական էությունը և ապահովում դրա զարգացումը։ Մեր երկրում միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի հիմքը պետական սեփականությունն է։ Ժողովրդատնտեսական կոմպլեքսն ընդգրկում է հանրային սեփականության բոլոր ձևերը, և դրա զարգացմամբ շահագրգռված են սոցիալիստական արտադրության բոլոր տնտեսական սուբյեկտները, այդ պատճառով էլ համաժողովրդական շահերը ինտեգրացված են։ Սակայն դրանք առանձին տեսակի շահերի թվաբանական գումարը չեն, քանի որ լինելով միասնական, դրանք զերծ չեն նաև ոչ անտագոնիստական հակասություններից։ Համաժողովրդական շահերն ընդհանուր բնույթ ունեն, որոնց նպատակը նյութական բարիքների արտադրության ընդլայնումն է ողջ հասարակության և նրա յուրաքանչյուր անդամի պահանջմունքների բավարարման համար։ Իսկ ձեռնարկության տնտեսական շահերը երկակի բնույթի են։ Դրանք միաձուլում են գլխավոր ժողովրդատնտեսական և ձեռնարկության ուրույն շահերը։ Ձեռնարկությունը ժողովրդատնտեսական կոմպլեքսի բջիջն է, ուստի նրա շահերը համընկնում են ժողովրդատնտեսականին։ Դրա հետ մեկտեղ, որպես ինքնուրույն տնտեսական միավոր, ձեռնարկությունն ունի նաև իր ուրույն շահերը, որոնք կարող են և չհամընկնել ժողովրդատնտեսականին։ Յուրաքանչյուր ձեռնարկություն առաջին հերթին ձգտում է բարելավել իր աշխատանքի ցուցանիշները, կատարել իրացված արտադրանքի թողարկման պլանը, ավելացնել իր շահույթը, նյութական խրախուսման ֆոնդը։ Երբեմն այդ ամենին ձեռնարկությունը հասնում է արտադրանքի տեսականու պլանի խախտման, արտադրանքի որակի իջեցման, տնտեսական պայմանագրերով նախատեսված պարտավորությունները չկատարելու գնով։

Ձեռնարկության և համաժողովրդական շահերի միջև եղած այդ ոչ հակամարտ հակասությունը պատահական չէ, այն բխում է արտադրամիջոցների հասարակական սեփականության առանձնահատկություններից։ Չնայած նրան, որ պետությանը պատկանող արտադրամիջոցների սեփականատերը ամբողջ հասարակությունն է, գործնականում պետական արտադրաֆոնդերը և այլ միջոցները հանձնվում են առանձին ձեռնարկությունների տնօրինությանն ու օգտագործմանը։ Յուրաքանչյուր ձեռնարկության վերապահված է տնտհաշվարկային ինքնուրույնություն։ Նա ունի իր սեփական եկամուտներն ու ծախսերը և օպերատիվ կարգով լուծում է բոլոր տնտեսական ու արտադրական հարցերը։

Այդպիսի հանգամանքները ծնում են երկակի միտում՝ ողջ ժողովրդատնտեսական կոմպլեքսի հետ միաձուլվելու և միաժամանակ ձեռնարկության հարաբերական ինքնուրույնությունը պահելու միտում։ Հաշվի առնելով այդ, տնտեսական մեխանիզմը պետք է այնպես կառուցել, որ տնտեսական հաշվարկի կատարելագործման միջոցով զուգակցվեն համաժողովրդական, ձեռնարկության, ինչպես նաև անձնական շահերը։ Դրան հասնելու հուսալի միջոցը պայքարն է համաժողովրդական շահերն անտեսելու, ձեռնարկության ինքնուրույնության իրավունքները չարաշահելու, տեղայնականության, գերատեսչական շահերը գերագնահատելու երևույթների դեմ։ Մի կողմից պետք է ուժեղացնել ձեռնարկությունների պատասխանատվությունը համաժողովրդական շահերի պաշտպանության, պետական պլանների առաջնահերթ կատարման գործում և միաժամանակ ձեռնարկություններին լայն իրավունքներ ընձեռել իրենց նյութական ու ֆինանսական միջոցների ինքնուրույն օգտագործման ասպարեզում։

Տնտեսական սուբյեկտների գործունեությանը միասնական նպատակային ուղղություն է տրվում տնտեսական մեխանիզմի միջոցով։ Սակայն հենց իր՝ տնտեսական մեխանիզմի ներսում ևս հակասություն գոյություն ունի. մի կողմից, ցենտրալիզմի զարգացման անհրաժեշտության, մյուս կողմից՝ ձեռնարկությունների ինքնուրույնության ուժեղացման անհրաժեշտության միջև։ Կենտրոնացման և ձեռնարկությունների ինքնուրույնության համամասնությունների սահմանումը ինքնին բավական դժվար խնդիր է, քանի որ դրանք փոփոխվում են ժողովրդական տնտեսության և գիտատեխնիկական առաջընթացի

հետ մեկտեղ։ Այդ հարցի լուծման ժամանակ շեղումն այս կամ այն կողմ նկատելի վնաս է հասցնում երկրի արտադրաուժերի զարգացմանը։ Չափից ավելի կենտրոնացումը խախտում է տնտեսական հաշվարկի սկզբունքները, թուլացնում տեղերի նախաձեռնությունը, մեծացնում կենտրոնական մարմինների ծանրաբեռնվածությունը, որն էլ իր հերթին դժվարացնում է բազմաթիվ կարևոր ու կոնկրետ տնտեսական հարցերի ժամանակին լուծումը։ Մյուս կողմից՝ ձեռնարկությունների և տեղական կազմակերպությունների իրավունքների չափից ավելի ընդլայնումը ուժեղացնում է տեղայնական ու գերատեսչական միտումները և, հանգեցնում նյութական միջոցների փոշիացման ու դրանց օգտագործման արդյունավետության նվազեցման։ Մի բան պարզ է, որ առաջիկայում չպետք է թուլացվի ժողովրդական տնտեսության կառավարման կենտրոնացումը։ Միայն կենտրոնացված պլանավորման միջոցով է, որ կարելի է ապահովել ժողովրդատնտեսական կոմպլեքսի բոլոր ճյուղերի և ոլորտների, երկրի բոլոր շրջանների ներդաշնակ ու համամասնական զարգացումը։

Տնտեսության ղեկավարման կենտրոնացման և ձեռնարկությունների ինքնուրույնության օպտիմալ զուգակցման հարցերն իրենց ճիշտ լուծումն են գտել պլանավորման ու տնտեսական գործունեության ասպարեզում արդյունաբերական արտադրական միավորումների (ձեռնարկությունների) իրավունքների ընդլայնման և աշխատանքի վերջնական արդյունքների նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացման մասին կուսակցության ու կառավարության ձեռնարկած միջոցառումներում։

Տնտեսական մեխանիզմի կատարելագործումը համակողմանիորեն պետք է կատարել, սկսած նրա կազմակերպական ձևերից, պլանավորումից, վերջացրած տնտեսական լծակներով ու խթաններով, ներառյալ՝ գնագոյացումը, վարկաֆինանսային համակարգը, ձեռնարկության արտադրական ու տնտեսական գործունեության գնահատման ցուցանիշները և այլն։ Այդ մեխանիզմի կատարելագործման հիմնական նպատակը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումն է, որն արդի փուլի ստրատեգիական խնդիրն է։ Տնտեսական մեխանիզմի կատարելագործման նպատակը դրա բոլոր օղակների նպատակամղված փոխգործողության ապահովումն է։

Արտադրաուժերի զարգացման ու գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ խորանում է աշխատանքի հասարակական բաժանումը, առաջանում են արտադրության նորանոր ճյուղեր, հիմնվում նեղ մասնագիտացված բազմաթիվ ձեռնարկություններ, այդ պայմաններում ուժեղանում են արտադրության տարբեր ճյուղերի փոխադարձ տնտեսական ու արտադրատեխնիկական կապերը։ Նման փոփոխված իրադրությունը պահանջում է ժողովրդական տնտեսության կառավարման կազմակերպական կառուցվածքը հարմարեցնել հասարակական արտադրության նոր պայմաններին։

Արտադրաուժերի զարգացման արդի մակարդակին համապատասխանում են արտադրամիավորումները՝ որպես տնտեսության կազմակերպման ձև։ Այժմ ժողովրդական տնտեսության ներքին օղակներում տեղի է ունենում անցում առանձին ֆաբրիկաներից ու գործարաններից՝ գիտատեխնիկական միավորումների տիպի խոշոր ձեռնարկությունների։ Գիտատեխնիկական միավորումներն ավելի հաջող են լուծում արտադրության մասնագիտացման ու կոոպերացման հարցերը, օժտված են տնտեսական ու տեխնիկական ինքնուրույնությամբ և հնարավորություն ունեն ավելի նպատակահարմար օգտագործել աշխատանքային, նյութական ու ֆինանսական միջոցները։ Արտադրամիավորումներն աստիճանաբար հավասարեցնում են իրենց ձեռնարկությունների աշխատանքի ու վարձատրության պայմանները, միավորում նրանց կոլեկտիվ շահերը, վերացնում ձեռնարկությունների միջև եղած պատնեշները։

Արտադրամիավորումներ կազմակերպելիս չպետք է տարվել գիգանտոմանությամբ։ Զարգացած շատ երկրների փորձը ևս վկայում է, որ երբեմն միջակ և նույնիսկ փոքր ձեռնարկություններն ավելի ճկուն են գործում, նրանց վերակառուցումն ու շուկայի պահանջներին հարմարեցնելը համեմատաբար հեշտ է կատարվում։

Ի դեպ, ժողովրդական տնտեսության որոշ ճյուղերում արտադրամիավո-



րումների կազմակերպման գործը դանդաղ է ընթանում. դեռևս միավորումներից դուրս գործում են բազմաթիվ մանր, տեխնիկապես հետամնաց ձեռնարկություններ։ Երբեմն էլ արտադրամիավորումների կազմակերպումը ձևական բնույթ է կրում, նրանում ընդգրկված ձեռնարկություններն աշխատում են նախկինի պես, առանց մասնագիտացման ու տեխնիկական վերափոխումների։

Միջճյուղային կապերի ընդլայնման և ուժեղացման շնորհիվ ձևավորվում են նաև միջճյուղային և տերիտորիալ-արտադրական կոմպլեքսներ։ Միջճյուղային կոմպլեքսների օրինակ կարող է ծառայել ագրոարդյունաբերական կոմպլեքսը, որը կազմված է երեք գլխավոր օղակներից՝ գյուղատնտեսություն, որը կոմպլեքսի կենտրոնական օղակն է, գյուղատնտեսությանը արտադրամիջոցներ մատակարարող արդյունաբերության ճյուղեր, գյուղատնտեսական հումքը վերամշակող արդյունաբերության ճյուղեր և այդ կոմպլեքսի ինֆրաստրուկտուրա (տրանսպորտը, առևտուրը, պահեստները, սառնարանները և այլն)։

Կազմակերպական փոփոխություններ են կատարվում նաև ժողովրդական տնտեսության կառավարման վերին ոլորտներում։ Եթե մինչև այժմ ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր ճյուղերում կազմակերպվել են մի շարք նոր մինիստրություններ, ապա այժմ որոշակի աշխատանքներ պետք է կատարվեն տնտեսության նույն ճյուղերում գործող մինիստրությունների և գերատեսչությունների միացման նպատակով։

Կազմակերպական լուրջ փոփոխությունների անհրաժեշտություն է առաջացել շինարարության կառավարման բնագավառում։ Ժողովրդական տնտեսության այս ճյուղում զուգահեռ գործում են բազմաթիվ շինարարական կազմակերպություններ ու ձեռնարկություններ։ Այժմ խնդիր է դրված միավորել ընդհանուր շինարարական տիպի մինիստրություններն ու գերատեսչությունները և միաժամանակ տարբեր կազմակերպությունների պատկանող շինօբյեկտները համակենտրոնացնել շինարարական խոշոր գերատեսչություններում։

Տնտեսական կառավարման հիմնական օղակը պլանավորումն է։ Ժողովրդական տնտեսության համակարգում գլխավոր նպատակային ֆունկցիան որոշվում է պլանների միջոցով։ Տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանը սահմանում է ընդլայնված վերարտադրության տեմպերն ու համամասնությունները, տնտեսության զարգացման համար պահանջվող նյութական, աշխատանքային ու ֆինանսական միջոցները և վերջնական արդյունքները։

Ելնելով տվյալ ժամանակամիջոցում երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրներից և պետական պլաններում դրանցով պայմանավորվող նախապատվությունից՝ կապիտալ ներդրումները և մյուս միջոցները համապատասխանորեն բաշխվում են ըստ տնտեսության ճյուղերի և երկրի շրջանների։

Պլանավորման կատարելագործման հարցերը մանրամասն արտացոլվել են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. համապատասխան որոշման մեջ։ Այդ որոշումը, ցավոք, դանդաղ է իրականացվում և, բացի այդ, տնտեսական կյանքում կատարվող տեղաշարժերին համապատասխան՝ պլանավորումը ևս փոփոխություններ է պահանջում։ Բոլոր դեպքերում պլանավորման կատարելագործման ուղին նախ և առաջ պլանի որակի բարձրացումն է։

Երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանը միշտ չէ, որ ապահովում է ժողովրդական տնտեսության համամասնական, հավասարակշռված զարգացումը, որի հետևանքով առաջանում են արտադրանքի որոշ տեսակների ավելորդ կուտակումներ, միաժամանակ զգացվում է այլ արտադրատեսակների պակաս։ Ժողովրդական տնտեսության մեջ առաջացող անհամամասնությունների հետևանքով, բնականաբար, խախտվում են նյութատեխնիկական մատակարարումները և ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքը։ Այժմ անցկացվող տնտեսափորձի գլխավոր նպատակներից մեկը մատակարարման պայմանագրային պարտավորությունների ժամանակին ու լրիվ կատարումն է։

Պլանի որակի բարձրացման համար, մեր կարծիքով, պետք է հրաժարվել այն պրակտիկայից, ըստ որի արտադրության աճման տեմպերի առաջադրանքների ելակետը համարվում է ձեռք բերված մակարդակը։ Այդ եղանակով կազմված պլանները ձեռնարկություններին չեն շահագրգռում առկա ռեզերվների օգտագործմամբ ընդունելու բարձր առաջադրանքներ։

Կատարելագործման կարոտ են նաև տնտեսական ու սոցիալական զարգացման պլանի շատ ցուցանիշներ։ Ձեռնարկությունների գործունեության գնահատման գործող գների կարգը զերծ չէ թերություններից։ Հայտնի է, որ իրացված արտադրանքի ցուցանիշը նպաստում է նյութատար արտադրատեսակների առավել աճին, իսկ զուտ արտադրանքի ցուցանիշը, ընդհակառակը, շահագրգռում է ձեռնարկություններին՝ գերազանցապես արտադրել աշխատատար արտադրատեսակներ, իսկ դա աշխատանքային միջոցների պակասի պայմաններում բոլորովին ձեռնտու չէ։ Այդ պատճառով էլ զուտ արտադրանքն այլևս ձեռնարկության գործունեության գնահատման ցուցանիշ չէ, այն միայն օգտագործվում է աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի ֆոնդը հաշվարկելու համար։

Պլանային տնտեսության համակարգում մեծ տեղ ունի գինը, որը ներգործում է տնտեսական ու սոցիալական կյանքի բոլոր բնագավառների վրա՝ հասարակական արտադրության աճի տեմպերի ու համամասնությունների, արտադրության արդյունավետության, ժողովրդի կենսամակարդակի, դրամի շրջանառության վրա և այլն։ Գնի միջոցով հաշվի են առնվում ու պլանավորվում արտադրության վրա կատարվող ծախսումները և դրա արդյունքները, կազմակերպվում է տնտեսական հաշվարկը, խթանվում է արտադրության ցուցանիշների բարելավումը, բաշխվում ու վերաբաշխվում ազգային եկամուտը։ Պատմականորեն այնպես է ստացվել մեզ մոտ, որ ապրանքների գները նկատելիորեն շեղվում են իրենց արժեքից։ Այդ հանգամանքը թուլացնում է գնի դերը, որպես տնտեսական լծակի։ Արտադրամիջոցների գները իջնում են իրենց արժեքից, իսկ սպառման առարկաների գները արժեքից բարձր են։ Միաժամանակ բազմաթիվ սպառման առարկաների գները հավասար են արժեքին կամ դրանից ցածր են։

Ապրանքադրամային կատեգորիաները տնտեսական կյանքում ավելի արդյունավետ օգտագործելու նպատակով կուսակցությունը վարում է գները հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքային ծախսումներին մոտեցնելու քաղաքականություն։

Ապրանքների գների շեղումն արժեքից բարդացնում է արտադրանքի վրա կատարվող ծախսումների ստույգ հաշվարկումը, որը բացասաբար է ազդում տնտեսության հավասարակշռված զարգացման վրա, թուլացնում է տնտհաշվարկի ներգործուն ուժը, խախտում ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը։ Արժեքի համեմատ արտադրամիջոցների և որոշ սպառման առարկաների գների չհիմնավորված իջեցումը հանգեցնում է դրանց ոչ արդյունավետ օգտագործման։ Գնագոյացման թերությունները ոչ միայն նվազեցնում են գների խթանիչ դերը, այլև դանդաղեցնում են տեխնիկայի զարգացումը։ Շատ դեպքերում նոր մեքենաների գները դրանցից սպասվող արդյունքից ավելի շատ են բարձրացվում, որը չի խթանում նոր տեխնիկայի ներդրմանը։

Գների հարցում մյուս թերությունը դրանց նվազ ճկունությունն է։ Հաճախ գները երկար ժամանակ անփոփոխ են մնում, երբ արտադրածախքերը նկատելիորեն նվազում են, և փոխվում են ապրանքների սպառողական հատկությունները։ Հազվագյուտ դեպքերում են ապրանքների համար սահմանվում սահող՝ նվազագույն և բարձր գներ։

Տարակույս չկա, որ նշված թերությունների հաղթահարումն էապես կնպաստի գնագոյացման կատարելագործմանը, իսկ դա իր հերթին կկարգավորի արտադրության ու սպառման կապերը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը պլանավորման թերություններից մեկը համարեց թողարկված սպառման առարկաների ծավալի ու բնակչության եկամուտների միջև եղած անհամապատասխանությունը։ 1965—1983 թվականների ընթացքում բնակչության ավանդները խնայդրամարկղներում



ավելացել են 10 անգամ։ Դրա հետ միաժամանակ առևտրական ցանցում կուտակվել են ահռելի գումարների հասնող ապրանքներ, որոնք չեն գնվում՝ ցածր որակի և նորաձևության պահանջներին չհամապատասխանելու պատճառով։

Երկար ժամանակ արդյունաբերական և առևտրական կազմակերպությունները կարողացել են իրացնել ցածրորակ ապրանքներ՝ դրանց դեֆիցիտի պատճառով։ Այժմ պայմանները փոխվել են. բարձրացել է բնակչության բարեկեցությունը, շուկան հագեցել է մեծ քանակի լայն սպառման առարկաներով, այդ պատճառով էլ գնորդն ընտրություն է կատարում՝ հրաժարվելով ցածրորակ ապրանքներից։ Այդպիսի իրադրության մեջ նույնիսկ մեծածախ գների իջեցումը չի լուծում առևտրական ցանցում և արդյունաբերական ձեռնարկությունների պահեստներում կուտակված գերնորմատիվային պաշարների իրացման հարցը։ Այդ արժեքները ստիպված դուրս են գրվում՝ պետությանը պատճառելով նյութական մեծ վնասներ։

Պահանջարկի ու առաջարկի միջև համապատասխանություն ստեղծելու նպատակով պլանային մարմինները, մինիստրություններն ու գերատեսչությունները մշակել են ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և վճարովի սպասարկումների ընդլայնման կոմպլեքսային ծրագիր։ Այդ խնդրի լուծման գործում մեծ դեր կունենա պարենային ծրագրի կենսագործումը։ Բնակչության դրամական եկամուտների և արտադրված սպառման առարկաների քանակի միջև հավասարակշռության հաստատմանը կօգնեն նաև կոլտնտեսականների և բանվոր-ծառայողների անձնական օժանդակ տնտեսությունների զարգացումը և կոլտնտեսային շուկայում կոլտնտեսությունների մանրածախ վաճառքի ցանցի ընդլայնումը։

Ներկայումս անցկացվող տնտեսափորձը ևս կօգնի տնտեսական շրջանառության բարելավմանը։ Ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության ուժեղացումը կնպաստի արտադրամիջոցների մեծածախ առևտրի զարգացմանը։ Տնտեսափորձը ձեռնարկություններին իրավունք է ընձեռում նյութատեխնիկական մատակարարման մարմինների հաստատած ընդհանուր լիմիտների հաշվին, կոնկուրսային պայմանագրերի կարգով, արտադրամիջոցների մեծածախ առևտուր կազմակերպել։

Կատարելագործման կարոտ է նաև վարկային գործը։ Գլխավոր նպատակին՝ վարկավորվող ձեռնարկությունների աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելուն, կարելի է հասնել վարկավորման գործում ձեռնարկությունների ինքնուրույնության ուժեղացմամբ ու պատասխանատվության բարձրացմամբ։

Կարճատև վարկի տոկոսը ցածր է, որը վճարվում է շահույթից և համապատասխան չափով էլ պակասեցվում է ձեռնարկության շահույթից հատկացումները պետական բյուջե։ Անհրաժեշտ է բարձրացնել կարճատև վարկի տոկոսը և խիստ սանկցիաներ կիրառել այն ձեռնարկությունների նկատմամբ, որոնք վարկը ժամանակին չեն մարում։ Մեր կարծիքով, ձեռնարկությունները վարկի տոկոսները պետք է վճարեն ոչ թե շահույթի հաշվին, այլ դրանք պետք է մտցվեն արտադրանքի ինքնարժեքի մեջ։

Տնտեսական հաշվարկի ուժեղացման հետևանքով, երբ ձեռնարկություններն աշխատեն ինքնաֆինանսավորման սկզբունքով, կապիտալ ներդրումների մեծ մասը ևս պետք է կատարվի ձեռնարկության միջոցների հաշվին, օգտագործելով երկարատև վարկը։ Սարքավորումների ձեռքբերման և կապիտալ շինարարության համար ձեռնարկությունները պետք է իրենց սեփական եկամուտներից աստիճանաբար միջոցներ կուտակեն։ Այդ միջոցները կպահվեն բանկի հատուկ հաշիվներում, որի համար նրանք տոկոսներ կստանան։ Շինարարության ընթացքում, եթե սեփական միջոցները չեն բավականացնում, բանկը երկարատև վարկ կհատկացնի՝ համապատասխան տոկոսներով։

Հասուն սոցիալիզմի արդի փուլի տնտեսական մեխանիզմի կատարելագործումը կբարձրացնի հասարակական արտադրության տնտեսական արդյունավետությունը և կարագացնի երկրի տնտեսական ու սոցիալական զարգացումը։

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

**Զ. ԶԱՆՈՅԱՆ**
ՀՍՍՀ ֆինանսների մինիստր

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ հետագա զարգացման և կատարելագործման շահերը նոր, առավել բարձր պահանջներ են առաջադրում էկոնոմիկայի կառավարմանը։ Տնտեսական մեխանիզմն ամբողջությամբ չի կարող դիտվել մեկընդմիշտ սահմանված, մըշտական գործող կատեգորիա։ Չնայած սոցիալիզմի տնտեսական օրենքներով կանխորոշվող դրա էությունն անփոփոխ է, սակայն զարգացման տարբեր փուլերում էկոնոմիկայի կառավարումը, արտադրության պլանավորումը, դրա նյութական խթանումը և ժողովրդական տնտեսության մեջ դրամական կուտակումների բաշխման սիստեմն ընդունում են նոր ձևեր ու մեթոդներ։

Տարեցտարի ժողովրդական տնտեսության ծավալների մեծացման հետ մեկտեղ բարդանում են արդյունաբերական միավորումների ու ձեռնարկությունների տնտեսական կապերը։ Այժմ մեր երկրում տարեկան արտադրվում է ավելի քան 1,2 տրիլիոն ռուբլու հասարակական համախառն արտադրանք, որը 40 տոկոսով ավելի է, քան 10 տարի առաջ։ Երկրում տնտեսական գործունեությամբ զբաղված են շուրջ 600 հազար ձեռնարկություններ ու կոլտնտեսություններ, նրանց վճարման շրջանառության ծավալն անցել է 2 տրիլիոն ռուբլուց։ Մեծացել է երկրի տնտեսական պոտենցիալը, արագացել է հիմնական ֆոնդերի նորացումը, ակտիվացել աշխատանքի հասարակական բաժանման պրոցեսը։

Տասներկուերորդ հնգամյակի մասին խոսելիս ընկ. Կ. Ու. Չեռնենկոն ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի փետրվարյան պլենումում նշեց. «Նոր հնգամյակը նախ և առաջ պետք է դառնա արտադրության մեջ որակական խոր փոփոխությունների սկիզբը, դառնա մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացման գործում վճռական բեկման հնգամյակ»։

Հայտնի է, որ տնտեսական մեխանիզմի կատարելագործման հիմքը աշխատողի նյութական շահագրգռության բարձրացման սկզբունքն է։ Ֆ. Էնգելսի խոսքերով ասած՝ ամեն մի կոնկրետ հասարակության տնտեսական հարաբերությունները դրսևորվում են առաջին հերթին որպես շահեր։ Համապետական շահերի հետ մեկտեղ կան նաև անձնական ու կոլեկտիվ (ձեռնարկությունների կոլեկտիվների) շահեր։ Հարցի ամբողջ բարդությունն այն է, թե ինչպես զուգակցել համապետական, կոլեկտիվ ու անձնական շահերը և դրանք ուղղել ժողովրդատնտեսական խնդիրների լուծման հունով։ Կոմունիստական կուսակցության ու սովետական պետության տնտեսական քաղաքականության առանցքը այդ ճանապարհով ընթանալու ամենառացիոնալ եղանակների ու մեթոդների ընտրությունն է։

Մեր երկրում մշտապես կատարելագործվում է էկոնոմիկայի կառավարման ու տնտեսական մեխանիզմը։ Մինչպատերազմյան և ետպատերազմյան տարիներին անհրաժեշտ էր խրախուսել արտադրության քանակական կողմը, այդ պատճառով կոլեկտիվների խրախուսման համար ստեղծված ձեռնարկության



(դիրեկտորի) ֆոնդին հատկացումները կատարվում էին պլանային շահույթից 4—6 տոկոսի չափով, իսկ գերպլանային շահույթից՝ 50—60 տոկոսի չափով։ Դժվար չէ նկատել, որ այս կարգը մեծ շահագրգռություն էր ստեղծում գերպլանային շահույթի ստացման համար, որը ուղղակիորեն կապված է արտադրության ծավալի հետ։

1960-ական թվականների կեսերին, երբ երկրի արդյունաբերությունը հիմնականում լուծել էր արտադրության քանակական բնույթի հարցերը, առաջին պլան մղվեց արտադրանքի որակի պրոբլեմը։ Այդ նպատակով փոփոխություն մտցվեց պլանավորման սկզբունքի մեջ. առաջնային համարվեց իրացման պլանը, այսինքն պահանջվեց արտադրել ոչ թե ապրանք ընդհանրապես, այլ ժողովրդական տնտեսությանն ու բնակչությանը անհրաժեշտ, համապատասխան սպառողական հատկանիշներով ապրանք։ Սակայն, ինչպես պարզվեց հետագայում, նման հարցադրումը ևս լիովին չէր լուծում պրոբլեմը։ Առանց արտադրողի մոտ համապատասխան նյութական շահագրգռություն ստեղծելու՝ առաջադրված խնդիրը լուծել հնարավոր չէր։ Այդ պատճառով տնտեսական մեխանիզմի կատարելագործման առաջին փուլում, 1965 թվականի ռեֆորմով նախատեսվեց արտադրական ձեռնարկություններում պլանավորման կատարելագործման հետ մեկտեղ լուծել արտադրության խթանման և նյութական խրախուսման հարցերը։

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման երկրորդ փուլն սկսվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թվականի հուլիսի 12-ի «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշմամբ։

Այս փուլում առաջադրվեցին պլանավորման մեջ երկարաժամկետ տնտեսական նորմատիվների կիրառման, տնտհաշվարկի ամրապնդման և արտադրության խթանման ու նյութական խրախուսման ներգործության ուժեղացման խնդիրները։ Արտադրանքի իրացման հարցերն այժմ ավելի կոնկրետ ձև ընդունեցին, սկսեց գործել ըստ նախօրոք կնքված պայմանագրերի մատակարարման սկզբունքը։

Այսօր արդյունաբերության մեջ իրականացվող տնտեսափորձն ըստ էության 1979 թվականին սկսված տնտեսական մեխանիզմի կատարելագործման շարունակությունն է՝ առավել կոնկրետ ուղղություններով ու սահմանագծերով։ Այն դիտվում է որպես ժողովրդական տնտեսության ինտենսիվացման կարևոր պայման։

Հայտնի է, որ ժողովրդական տնտեսության մեջ կառավարման նոր ձևեր ու մեթոդներ ներդնելը բարդ գործ է։ Էկոնոմիկայի կառավարումը կատարելագործելու այսօրվա փուլի առանձնահատկությունը հասարակական արտադրության սկզբնական օղակի՝ ձեռնարկությունների աշխատանքի որակի ու արդյունավետության բարձրացման վրա ազդեցության ուժեղացման առավել կոնկրետ ուղիների, ձևերի ու մեթոդների որոնումն է։ Խոսքն այն մասին է, որ իրականում ապահովվի կոլեկտիվների ռեալ շահագրգռությունն արտադրության արդյունավետության բարձրացման գործում, ուժեղացվի աշխատանքի արդյունքների նկատմամբ նրանց պատասխանատվությունը, միաժամանակ ընդլայնվեն տնտեսական գործունեության բնագավառում ձեռնարկությունների իրավունքները։

Ելնելով այս պահանջներից, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1983 թ. հուլիսի 14-ի «Պլանավորման և տնտեսական գործունեության մեջ արդյունաբերության արտադրական միավորումների (ձեռնարկությունների) իրավունքների ընդլայնման և աշխատանքի վերջնական արդյունքների համար նրանց պատասխանատվության բարձրացման գծով լրացուցիչ միջոցառումների մասին» որոշմամբ 1984 թ. հունվարի մեկից միաժամանակ հինգ մինիստրություններում (ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության, ՍՍՀՄ ծանր ու տրանսպորտային մեքենաշինության, Ուկրաինական ՍՍՀ սննդարդյունաբերության, Բելոռուսական ՍՍՀ թեթև արդյունաբերության և Լիտ-

վական ՍՍՀ տեղական արդյունաբերության) տնտեսափորձ է անցկացվում։ Այս տնտեսափորձն առաջին անգամ կիրառվում է մեծ մասշտաբով և կոմպլեքսային ձևով։ Դրանում, ինչպես տեսանք, ներգրավված են 2 միութենական ենթակայության մեքենաշինական, 2 միութենական-հանրապետական ենթակայության ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող մինիստրություններ։ Խնդրի այդպիսի ընդգրկումը հնարավորություն կընձեռի գնահատելու արտադրության մեջ նոր, բարձր արդյունավետ տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի մշակման ու ներդրման, ինչպես նաև բնակչության համար արդյունաբերական ու պարենային ապրանքների թողարկման ավելացման, որակի բարելավման նպատակով ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման բնագավառում նախատեսված միջոցառումների արդյունավետությունը։ Ենթակայության բնույթով տարբեր մինիստրություններում տնտեսափորձի անցկացումը միաժամանակ ցույց կտա նաև ենթակայության ձևի հետ կապված առավելություններն ու թերությունները։

Տնտեսափորձի մյուս առանձնահատկությունն այն է, որ դրա կիրառման հետևանքով զգալիորեն կրճատվել են մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների համար հաստատվող պլանային ցուցանիշները։ Դրանց կազմից հանվել են արտադրության ծավալի արժեքային առաջադրանքները՝ համախառն, ապրանքային և նորմատիվային զուտ արտադրանքի ցուցանիշները։ Պլանավորման գործող կարգի հիմնական թերությունն այն է, որ համախառն արտադրանքի պլանի կատարմամբ հրապուրվելով, ձեռնարկությունները հաճախ չեն ապահովում ժողովրդական տնտեսությանը և բնակչությանն անհրաժեշտ ապրանքների թողարկումը։ Ուստի այժմ որպես գլխավոր ցուցանիշ սահմանվում են բնական արտահայտությամբ ցուցանիշներ՝ արտադրանքի թողարկման առաջադրանք ըստ հիմնական տեսականու։ Ըստ որում դրանց համար արժեքային ցուցանիշները ներկայացվում են որպես հաշվարկային և չեն հաստատվում։ Հաշվարկային է համարվում նաև ապրանքային արտադրանքի աճի տեմպերի ցուցանիշը, որի հիման վրա սահմանվում և հաստատվում է ինքնարժեքի իջեցման առաջադրանք, իսկ նորմատիվային զուտ արտադրանքի հաշվարկային ծավալը օգտագործվում է աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի պլանավորման համար։ Նորմատիվային զուտ արտադրանքի աճի տեմպերից ելնելով՝ որոշվում է աշխատավարձի ֆոնդի աճը։

Տնտեսափորձի անցած ձեռնարկությունների ու կազմակերպությունների տարեկան պլաններում ծավալային ցուցանիշը իրացված արտադրանքի ծավալն է՝ ըստ մատակարարումների պարտավորությունների կատարման։ Այս ցուցանիշը կարևոր պայման է դարձել սոցիալիստական մրցության արդյունքների ամփոփման և ամեն տեսակի խրախուսումների ու պարգևների վճարման համար։

Վերացված է մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի վրա նյութական ծախսումների լիմիտների սահմանումը, քանի որ այն մեխանիկորեն հաշվի է առնվում ինքնարժեքի իջեցման առաջադրանքի մեջ։

Ֆինանսական գործունեության վերջնական արդյունքների և տնտեսական հաշվարկի ամրապնդման գործում միավորումների և ձեռնարկությունների պատասխանատվության բարձրացման անհրաժեշտությունից ելնելով՝ մինիստրությունների տարեկան պլաններում սահմանվում են շահույթի առաջադրանքներ, քանի որ շահույթի մեջ արտացոլվում են թե՛ արտադրանքի իրացման ծավալը և թե ինքնարժեքի իջեցումը։

Ինչպես հայտնի է, վերջին տարիներին շահույթի աճը հիմնականում ձեռք է բերվում էքստենսիվ գործոնի՝ իրացման ծավալի աճի հաշվին, իսկ ինտենսիվ գործոնի՝ ինքնարժեքի իջեցման նշանակությունը նվազել է։ Այսպես, եթե ութերորդ հնգամյակում արտադրանքի ինքնարժեքի իջեցման հաշվին ստացվել է շահույթի աճի 47 տոկոսը, իններորդում՝ 39 տոկոսը, ապա տասներորդում՝ միայն 20 տոկոսը։ Տասնմեկերորդ հնգամյակի առաջին երեք տարիների ընթացքում շահույթի աճը ամբողջությամբ պայմանավորված էր իրացման ծավալի ավելացմամբ։ Բնական է, որ չի կարելի սահմանափակվել կուտակումների աճի միայն էքստենսիվ գործոնով։ Այժմ կարևորվում է ինտենսիվ գործոնի դերը։ Հաճախ պրակտիկայում ինքնարժեքի իջեցումը չի բերում համապատասխան շահույթ, որովհետև թույլ են տրվում անարտադրողական ծախսեր և կորուստներ։ Օրինակ, 1983 թվականին ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում ինքնարժեքի իջեցումից տնտեսումը կազմել է 2,7 մլն ռուբլի, իսկ շահույթի պլանը թերակատարվել է 11,1 մլն ռուբլով։ Այդ պատճառով էլ տնտեսափորձը նախատեսում է պլանավորել ոչ միայն շահույթի ընդհանուր գումարը, այլև արտադրանքի ինքնարժեքի իջեցումը։



Տնտեսափորձի պայմաններում պլանները կազմվում են կոնտրոլ թվերի և նորմատիվների հիման վրա։ Աշխատավարձի և տնտեսական խթանման ֆոնդերի կազմավորման համար սահմանվող նորմատիվները մտնում են մինիստրություններին և միավորումներին հանձնարարվող կոնտրոլ թվերի կազմում որպես կայուն ցուցանիշ ու մինչև հնգամյակի վերջը փոփոխման ենթակա չեն։

Կուսակցության և կառավարության վերոհիշյալ որոշմամբ արտադրության վերջնական արդյունքների արդյունավետության բարձրացման գործում կոլեկտիվների շահագրգռությունը բարձրացնելու նպատակով նրանց տրվել են մի շարք լրացուցիչ իրավունքներ Հատուկ պատասխանատու աշխատանքներում զբաղված բարձր որակավորում ունեցող բանվորների տարիֆային դրույքը աշխատավարձի ֆոնդի խնայողության հաշվին կարելի է բարձրացնել մինչև 24 տոկոս, իսկ ինժեներատեխնիկական աշխատողներինն ու ծառայողներինը՝ մինչև 50 տոկոս։ Բարձր որակավորում ունեցող աշխատողներին պաշտոնների և մասնագիտությունների համատեղման համար թույլատրվում է սահմանել ամսական մինչև 250 ռուբլու չափով աշխատավարձի անհատական դրույք։ Միավորումներին նաև իրավունք է վերապահված ինքնուրույն որոշելու սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության ֆոնդի միջոցների օգտագործման հարցերը։

Տնտեսափորձի անցած ձեռնարկություններում աշխատավարձի և նյութական խրախուսման ֆոնդերը ուղղակի պայմանավորված են արտադրության վերջնական արդյունքներով ու արդյունավետությամբ։

Նյութական խրախուսման ֆոնդի աճ պլանավորվում է՝ ելնելով բազմամյա տարվա նկատմամբ ապրանքային արտադրանքի մեկ ռուբլու հաշվով ծախսերի իջեցման համար սահմանված նորմատիվներից։ Այդ ֆոնդերի կարգավորման նպատակով նշված նորմատիվն այժմ կիրառվում է էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում, իսկ մյուս ճյուղերի համար կիրառվում է շահույթի աճի նորմատիվը։ Խրախուսման ֆոնդերի բացարձակ մեծությունը պայմանավորված է իրացման պլանի կատարմամբ՝ հաշվի առնելով մատակարարումների պլանի իրականացումը։ Այս ցուցանիշի կատարման դեպքում տնտեսափորձի անցած ձեռնարկությունների նյութական խրախուսման ֆոնդը լրացուցիչ ավելացվում է 15 տոկոսով՝ նախկին 10 տոկոսի փոխարեն։

Ձեռնարկությունների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով սահմանված է նյութական խրախուսման ֆոնդի ձևավորման այնպիսի կարգ, ըստ որի վերջիններս շահագրգռված են ընդունել լարված, բայց ռեալ պլաններ։

Ինչպես նախկինում, այնպես էլ տնտեսափորձի ժամանակ նյութական խրախուսման ֆոնդին է միանում բարձր արդյունավետ և որակի պետական նշանով արտադրանքի մեծածախ գների նկատմամբ խրախուսական վերադիրների մի մասը։ Այս կապակցությամբ նորությունները երկուսն են. առաջինը՝ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1983 թ. օգոստոսի 18-ի «Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցառումների մասին» որոշմանը համապատասխան վերադիրները կարող են սահմանվել մեծածախ գնի մինչև 30 տոկոսի չափով։ Երկրորդ՝ տնտեսափորձի պայմաններում նախատեսված է, որ պետական որականիշով արտահանվող արտադրանքը էլեկտրատեխնիկական արդյունաբերության և ծանր ու տրանսպորտային մեքենաշինության ձեռնարկությունները արտաքին

(60 տոկոսը) պետք է վճարել ըստ կնքված պայմանագրերի մատակարարման պլանի կատարման համար։ Այսպիսով, տնտեսական գործունեության այդ գլխավոր ցուցանիշն ունի պարգևատրման սեփական մաս։ Նշված պլանի կատարումն ապահովվում է նաև նրանով, որ այս ցուցանիշի համար վճարվող պարգևատրումը կախված չէ աշխատանքի մյուս բնագավառների արդյունքից։ Միաժամանակ մյուս ցուցանիշների՝ աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի որակի բարելավման, շահույթի ավելացման և ծախսերի կրճատման համար հաշվարկված պարգևատրումը չի վճարվում կամ պակասեցվում է, եթե թերակատարվել է մատակարարման պլանը։

Ղեկավար աշխատողների պարգևատրումները ձեռնարկությունների տնտեսական գործունեության ընդհանուր արդյունքների համար նույնպես սահմանափակվում են, եթե մատակարարման պլանների թերակատարումը գերազանցում է սահմանված առավելագույն չափերը։ Ամբողջ տարվա համար հաստատված արտադրանքի մատակարարման պլանի կատարման դեպքում ղեկավար աշխատողների համար սահմանված է հատուկ պարգևատրման կարգ՝ տարեկան երեք ամսվա աշխատավարձի չափով, մյուս բոլոր պարգևատրումների առավելագույն չափերից անկախ։

Ժողովրդական տնտեսության համար բոլորովին միևնույնը չէ, թե ինչպիսի ծախսերի գնով է ստեղծվել այս կամ այն ապրանքը։ Այդ պատճառով աշխատողների նյութական խրախուսումները սերտորեն կապված են աշխատանքի որակական ցուցանիշների կատարման հետ։ Նոր պայմաններում փորձարկվում են պարգևատրումների կատարելագործման առանձին առումներ, որոնք վերաբերում են ժողովրդական տնտեսության մնացած ճյուղերի համապատասխան աշխատողների խրախուսմանը։

Հաստատված տիպային կանոնադրություններում պարգևատրման ցուցանիշները սահմանված են միայն ղեկավար աշխատողների համար, որը նշանակում է կոլեկտիվների նյութական խրախուսման կազմակերպման հարցերում ձեռնարկությունների իրավունքների հետևողական ընդլայնում։ Այս, իհարկե, չի նշանակում անսահման ինքնուրույնություն, քանի որ կան այլ սահմանափակող նորմաներ։ Ձեռնարկությունների ղեկավարների պարգևատրման չափերը ուղեցույց են ամբողջ կոլեկտիվի խրախուսման համար։ Բայց կարևորն այն է, որ ամեն մի աշխատողի խրախուսման ցուցանիշը սահմանում են միայն տվյալ ձեռնարկության ադմինիստրացիան և արհմիության տեղական կոմիտեն, որոնք ավելի ճիշտ ու կոնկրետ պետք է որոշեն յուրաքանչյուր աշխատողի անձնական ներդրման չափը։ Անհրաժեշտ է նշել, որ պահպանված է այն հայտնի կարգը, երբ պարգևատրումների կոնկրետ չափերը որոշվում են ձեռնարկության տրամադրության տակ եղած խրախուսման ֆոնդերի սահմաններում միայն։ Շարունակում է գործել նաև հայտնի տնտեսական պայմանը, որի համաձայն պարգևատրման աճը հնարավոր է միայն արտադրության ընդհանուր ցուցանիշների բարելավման դեպքում։

Տնտեսափորձին մասնակցող ձեռնարկություններում ստեղծվում են լրացուցիչ պայմաններ նոր տեխնիկայի ներդրման գործում շահագրգռվածություն ունենալու համար։ Եթե չի կատարվում վերջինիս պլանը, ապա ձեռնարկության ընդհանուր տնտեսական գործունեությամբ վճարվող պարգևատրումը կրճատվում է 25 տոկոսով։ Հավասարեցումների վտանգավոր պրակտիկայից խուսափելու նպատակով նախատեսված է ամեն մի աշխատողի անհատական, աշխատանքային մասնակցության չափով խրախուսելու հատուկ կարգ, որը կիրառվում է համապատասխան գործակցի միջոցով։

Այժմ մի քանի խոսք այդ տնտեսափորձը պրակտիկայում կիրառելու մասին։ Թերևս վաղ է լուրջ հետևություն անել այդ նոր միջոցառման արդյունքների մասին, սակայն նախնական մի քանի արդյունքներ կարելի է քննարկել։ Ինչպես արդեն ասվեց, տնտեսափորձով աշխատող ձեռնարկությունների հիմնական ցուցանիշը իրացման պլանի կատարումն է ըստ կնքված պայմանագրերի։ Այս ցուցանիշը, որ մտցվել է տասնմեկերորդ հնգամյակի հենց սկզբից, ցավոք չէր կատարվում։ Մեր հանրապետությունում, օրինակ, 1983 թվա-



կանի արդյունքներով, այն կատարվեց ընդամենը 97,3 տոկոսով, մոտավորապես նույն պատկերն էր նաև երկրում։

Ընթացիկ տարվա առաջին եռամսյակի և կիսամյակի արդյունքները ցույց են տալիս, որ անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, իրացման պլանի կատարումն ըստ կնքված պայմանագրերի զգալիորեն բարելավվել է էլեկտրատեխնիկական արդյունաբերության, ծանր և տրանսպորտային մեքենաշինության մինիստրություններում։ Այդ ցուցանիշի կատարումը լրիվին ապահովել են Ուկրաինական ՍՍՀ սննդարդյունաբերության, Բելոռուսական ՍՍՀ թեթև արդյունաբերության և Լիտվական ՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրությունների միավորումներն ու ձեռնարկությունները։

Մեր հանրապետության տարածքում գործող էլեկտրատեխնիկական արդյունաբերության միավորումների և ձեռնարկությունների ընթացիկ տարվա առաջին կիսամյակի տնտեսական գործունեության արդյունքների վերլուծությունից պարզվում է, որ տնտեսափորձով աշխատող միավորումներն ու ձեռնարկությունները, օգտվելով իրենց տրված լրացուցիչ իրավունքներից, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ տնտեսական գործունեության ցուցանիշները զգալիորեն բարելավել են։ Արտադրանքի իրացման ծավալն ամբողջությամբ կատարվել է 102,3 տոկոսով՝ նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի 101,7 տոկոսի փոխարեն, իրացման պլանի կատարումն ըստ կնքված պայմանագրերի կազմել է 99,9 տոկոս՝ նախորդ տարվա 98,6 տոկոսի փոխարեն, արտադրանքի արտադրության ծավալն աճել է 4,7 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 5,3 տոկոսով։

Զգալիորեն նվազել է ըստ կնքված պայմանագրերի իրացման պլանը թերակատարող միավորումների և ձեռնարկությունների թիվը։ Այդ ցուցանիշը ընթացիկ տարվա առաջին կիսամյակում թերակատարել են միայն 2 միավորումներ, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի 10 միավորումների և ձեռնարկությունների փոխարեն։ Տնտեսափորձի իրականացման գործում հաջողություններն առկա են «Հայէլեկտրաապարատ» արտադրամիավորման Երևանի էլեկտրաապարատների գործարանում, որն ընթացիկ տարվա առաջին կիսամյակի արտադրանքի իրացման պլանը, ընդհանուր առմամբ, կատարել է 104,3 տոկոսով, լրիվին ապահովելով իրացման պլանի կատարումն ըստ կնքված պայմանագրերի։ Նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ապրանքային արտադրության ծավալն աճել է 1,7 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 2,4, կուտակումներինը՝ 7,2 տոկոսով։

«Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումը նույնպես ապահովել է իրացման պլանի կատարումն ըստ կնքված պայմանագրերի։ Միավորումն ընթացիկ տարվա նույն ժամանակամիջոցում ապահովել է արտադրանքի իրացման ծավալի 5 տոկոսի, կուտակումների 6,1 տոկոսի աճ։ Հաջողություններն առկա են նաև տնտեսափորձով գործող մյուս միավորումներում ու ձեռնարկություններում։

Մեզ մոտ ամեն տեսակ տնտեսական փորձեր կատարելիս ավանդաբար արմատավորվել է մի պրակտիկա, երբ շտապում ենք գովաբանելու, նույնիսկ գերագնահատում ենք առանձին փորձերի դրական արդյունքները, լռությամբ մատնելով բացասական ազդեցություններն ու հետևանքները, որոնք ինչպես ամեն մի նորամուծության ժամանակ, նույնպես անխուսափելի են։ Ամեն օգտակար նորամուծության ժամանակ դժվարությունների պարզ պատկերացումն աշխատողներին կողմնորոշում է դրանց հաղթահարմանը, նախազգուշացնում է հնարավոր ծայրահեղություններից։ Ուրեմն, գրոհայնության վնասներից խուսափելու նպատակով, անհրաժեշտ է ուշադիր հետևել և օբյեկտիվ գործող տնտեսական օրենքների հիման վրա լրջախոհ վերլուծել տնտեսափորձի բոլոր արդյունքները և ապա, որպես ինքնին աշխատող մեխանիզմ, ներդնել կյանքում։

---

Տասնմեկերորդ հնգամյակի բնագծերում

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Է. ՄԱՐԿՈՍՅԱՆ**
«Հայէլեկտրասարքավորում» ա/մ գլխավոր դիրեկտոր, ՀՍՍՀ վաստակավոր ինժեներ

*ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հասարակարգի պայմաններում աշխատանքի արտադրողականության արագ աճին և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը հնարավոր է հասնել արդյունաբերության ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջընթացի, արտադրության կենտրոնացման և մասնագիտացման, կառավարման կառուցվածքի կատարելագործման միջոցով։ Արտադրաուժերի զարգացմանը, պլանավորման արդյունավետության և ճկունության բարձրացմանն են նպատակամղում մեզ ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտկոմի 1984 թ. փետրվարյան ու ապրիլյան պլենումների որոշումները։ Արտադրության կենտրոնացման և համակենտրոնացման շնորհիվ լայն պայմաններ են ստեղծվում մասնագիտացման և տնտհաշվարկի խորացման, միասնական տեխնիկական քաղաքականության իրականացման, ինչպես նաև պլանավորման կատարելագործման համար։*

*«Հայէլեկտրասարքավորում» արտադրամիավորումը, որը բոլորել է իր գործունեության տասը տարին, Երևանի էլեկտրասարքավորումների գործարանի բազայի վրա, ընդգրկում է Լենինականի էլեկտրատեխնիկական և Էջմիածնի պլաստմասսաների գործարանները, ինչպես նաև հատուկ նախագծային կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոն։ Հանրապետության գյուղական շրջաններում արտադրաուժերի զարգացման, ազատ աշխատուժի ներգրավման նպատակով ստեղծվել և արտադրամիավորման կազմում գործում են Վեդու և Ազիզբեկովի շրջանի Ջաղիթափի ցածրավոլտ ապարատների գործարանները։*

*Միավորումը մասնագիտացված է վերելակային կառավարման կայանների և էլեկտրական ապարատների արտադրության մեջ։ Գլխամասային ձեռնարկությունը թողարկում է վերելակների և մետաղամշակման հաստոցների կառավարման կայաններ և վերելակային էլեկտրական ապարատուրա, Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանը՝ կառավարման կայաններ և փոքրաչափ կոնդենսատորներ, Էջմիածինը՝ պլաստմասսայե կոմպլեկտավորման դետալներ և կոմուտաց-կենցաղային ապրանքներ։ Վեդիի գործարանը մասնագիտացվել է միջանկյալ ռելեների և մետաղյա մամլվող դետալների, իսկ Ջաղիթափինը՝ ամրակային շինվածքների արտադրության բնագավառում։*



*Պետք է նշել, որ մասնագիտացումը խորացվում է միավորման բոլոր գործարաններում, որոնք գտնվում են կոոպերատիվ լայն կապերի մեջ։ Այսպես, գլխավոր գործարանում լուծարվեց պլաստմասսայե դետալների արտադրության տեղամասը և այն կենտրոնացվեց Էջմիածնի գործարանում։ Դրա շնորհիվ գլխավորող գործարանի ազատված հրապարակում ընդարձակվեց վերելակային ապարատուրայի արտադրությունը։ Այսուհետ կոմպլեկտավորող ձուլվածքների արտադրությունը կենտրոնացված է Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանում։ Այստեղ ընդարձակվում է նաև հատուկ տեխնոլոգիական սարքավորումների արտադրամասը, որն անհրաժեշտ սարքավորումներով կապահովի միավորման բոլոր գործարաններին։*

*Միավորման առավելությունները թույլ են տալիս հասնելու ինչպես առանձին գործարանների, այնպես էլ ընդհանուր միավորման արտադրության աճի անհամեմատ բարձր տեմպերի։ Արտադրության ծավալը անցած տասնամյակում աճել է 2,2 անգամ, աշխատանքի արտադրողականությունը՝ 1,5 անգամ։ Առանձնապես բարձր տեմպերով աճեց Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանը, որի արտադրանքի ծավալը մեծացավ 4 անգամ։*

*Միավորման՝ կոլեկտիվը զգալի հաջողությունների է հասել տասնմեկերորդ հնգամյակի խնդիրների իրականացման գործում։ Անցած երեք տարում, 1980 թվականի համեմատությամբ, արտադրանքի ծավալն աճել է 36 տոկոսով, աշխատանքի արտադրողականության աճը կազմել է 17 տոկոս։ Իսկ հնգամյակի 3-րդ տարում արտադրանքի հավելաճը, նախորդ տարվա համեմատությամբ, կազմեց 4,8 տոկոս։ Աճի զգալի մասը ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության հաշվին։ Արտադրության մեջ ներդրվել են նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի, աշխատանքի գիտական կազմակերպման բազմաթիվ միջոցառումներ՝ մոտ 4,5 մլն ռուբլի տնտեսական օգուտով, պայմանականորեն կրճատվել է 334 մարդ։*

*Գլխամասային գործարանում շարք են մտել ռելեների և ապարատուրայի հավաքման նոր հոսքային գծերը, դետալների և կարկասների ներկման մեքենայացված գիծը։ Լենինականի գործարանում ներդրվել է կոնդենսատորների հոսքախմբային հավաքման տեխնոլոգիան, գործարկվել կառավարման կայանների մեքենայացված ներկման հոսքային գիծը։ Մեծ ծավալի աշխատանքներ են կատարվել Էջմիածնի գործարանում, որոնցից կարելի է նշել ջերմակայուն պոլիամիդի, ինչպես նաև ճնշման տակ ՊԱՊ—2 նյութի ձուլման տեխնոլոգիաները։ Նշված միջոցառումների հաշվին արտադրանքի ինքնարժեքը 1983 թվականին իջավ շուրջ 900 հազար ռուբլով։*

*Լայն թափ է ստացել նորարարական շարժումը։ Միավորման գործարաններում ներդրվել են 182 նորարարական առաջարկություններ, ապահովելով ավելի քան 500 հազար ռուբլու պայմանական տնտեսում։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ միավորումն ապահովեց 1983 թվականին պլանով նախատեսված օգուտները, այն գերակատարելով 3,5 տոկոսով, աճը նախորդ տարվա համեմատ կազմեց 17,8 տոկոս։*

*Նոր արտադրատեսակների յուրացման հետևանքով զգալիորեն ավելացել է նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ծավալը։*

*Արտադրամիավորումը հետևողական աշխատանք է տանում որակական ցուցանիշների բարելավման, արտադրանքի որակի պլանավորման և ղեկավարման գործում։ Կոլեկտիվին հաջողվել է ստեղծել և արտադրության մեջ ներդնել որակական և տեխնիկական բարձր մակարդակ ունեցող վերելակային սարքավորումների լայն անվանացանկ։ Առավել ուշադրություն է դարձվել արտադրատեսակների կառուցվածքի կատարելագործմանը, նոր արտադրատեսակների յուրացմանը։ Արտադրությունից հանվել են հնացած և ոչ շահութաբեր արտադրատեսակները։*

*Որակի կառավարման համալիրային համակարգի արմատավորումը հնարավորություն ընձեռեց հստակորեն շաղկապելու կառուցվածքային բոլոր ստորաբաժանումների գործունեությունը, ապահովելու ստանդարտներին համապատասխան արտադրանքի թողարկումը։ Միավորման գործարաններում ներ-*

դրվել է որակի կառավարման համակարգի 71 ստանդարտ։ Միայն 1983 թվականին իրականացվել է որակի բարձրացման շուրջ 44 միջոցառում, որի շնորհիվ պետական որականիշով արտադրատեսակների տեսակարար կշիռը ամբողջ արտադրանքի մեջ հասել է 77,3 տոկոսի, իսկ Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանում՝ 94 տոկոսի։

Սակայն որակի բարձրացման գործում դեռևս շատ անելիքներ ու չլուծված պրոբլեմներ կան։ Այսպես, Էջմիածնի պլաստմասսաների գործարանը չի թողարկում պետական որականիշով և ոչ մի արտադրատեսակ։ Մենք դեռևս չենք հասել այն բանին, որ ցածրորակ արտադրանք տվողների նկատմամբ ստեղծվի անհանդուրժողական մթնոլորտ։

Աշխատանքի արտադրողականության աճի, կարգապահության բարձրացման և կադրերի հոսունության կրճատման վրա բարերար ներգործություն ունեցավ աշխատանքի կազմակերպման և վարձատրման բրիգադային ձևի ներդրումը։ Միավորման ձեռնարկություններում մշակվել է նոր եղանակի կիրառման հատուկ ստանդարտ, որտեղ առանձնակի տեղ է հատկացված բրիգադի անդամների նյութական և բարոյական խրախուսմանը։ Ստեղծվել և ակտիվորեն գործում են բրիգադի և բրիգադավարների խորհուրդները։ Մեր պայմաններում առավել արդյունավետ են մասնագիտացված կոմպլեքսային միջանցիկ բրիգադները, որտեղ ընդգրկված է միավորման բանվորների 78,5 տոկոսը։ Այդ բրիգադներում աշխատանքի առավելագույն արդյունավետության հասնելը պահանջում է տարբեր մասնագիտության բանվորների համաձայնեցված աշխատանք։ Ձեռնամուխ լինելով կոմպլեքսային բրիգադների ստեղծմանը, մենք լրջորեն զբաղվեցինք նաև բրիգադի անդամների վարձատրման համակարգի կատարելագործմամբ՝ կարևորելով մասնավորապես արտադրանքի թողարկման մեջ նրանց մասնակցության աստիճանը, ինչպես նաև աշխատանքային մասնակցության գործակիցների կիրառումը։ Բրիգադային համակարգի ներդրումը նպաստում է նյութական ռեսուրսների խնայողաբար օգտագործմանը, աշխատաժամանակի կորուստների կրճատմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու յուրաքանչյուր աշխատողի ստեղծագործական հնարավորությունների լրիվ բացահայտմանը։ Բարձրագույն արդյունքների են հասել նախապատրաստողներից Ժ. Ջիլինգարյանի, հավաքողներից Խ. Արզարյանի, Ս. Ավոյանի և շատ այլ բրիգադներ։ Ընթացիկ տարում բրիգադներում ընդգրկվածների տեսակարար կշիռը կհասնի 81 տոկոսի, որը կապահովի աշխատանքի արտադրողականության լրացուցիչ 0,8 տոկոս աճ։

Աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևի ներդրումն իր հետ բերեց նաև սոցիալիստական մրցության կազմակերպման կատարելագործում։ Սոցիալիստական պարտավորությունների ընդունումը և կատարումը, արդյունքների համադրումը, հաղթողների նյութական և բարոյական խրախուսումը, աշխատանքի առաջավոր փորձի տարածումը դարձել են կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի անբաժանելի մասը։

Միավորումում լայնորեն կիրառվում են ինչպես կոլեկտիվ, այնպես էլ անհատական մրցության ձևերը։ Մրցում են բրիգադները, տեղամասերը, արտադրամասերը, բաժինները, ինչպես նաև գործարանները։ Լայն մրցություն է ծավալվում տեղամասի, արտադրամասի, գործարանի, միավորման «լավագույն բանվոր ըստ մասնագիտության», «լավագույն վարպետ», «լավագույն մասնագետ», «լավագույն կոմերիտական-երիտասարդական բրիգադ» կոչումներին արժանանալու համար։ Արդեն 1808 աշխատողներ կրում են «կոմունիստական աշխատանքի հարվածայինի» բարձր կոչումը։ Թվով 42 բրիգադների, 13 արտադրամասերի և բաժինների կոլեկտիվների շնորհվել է «Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի» կոչում։ Լայն մասսայականություն է վայելում նյութական ռեսուրսների խնայողության համար մրցությունը։ Ընդունելով «աշխատել առանց թափոնների» նշանաբանը, միավորման ձեռնարկություններում միայն 1983 թվականին խնայվել է 433 տոննա սև, 95 տոննա գունավոր մետաղ։ Զգալիորեն գերազանցվում են ստանձնած պարտավորությունները նաև ընթացիկ տարում։ Մրցության հաղթողների համար սահմանված են ինչպես նյութական, այնպես էլ բարոյական խրախուսման ձևեր։ Նյութական խրախուսման ֆոնդից զգալի միջոցներ են հատկացվում հաղթողներին պարգևատրելու համար։

Միավորման կոլեկտիվները առավել լայն խնդիրներ են լուծում 1984 թվականին։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության բոլոր ձեռնարկությունների հետ միասին մենք նույնպես ձեռնամուխ ենք եղել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը և արտադրական ձեռնարկությունների գործունեության բարելավմանն ուղղված տնտեսափորձի մասին որոշման իրագործմանը։ Տնտեսափորձի պայմաններում ընդլայնվել են ձեռնարկությունների իրավունքները, լայն պայմաններ են ստեղծվել բարձր արտադրողական, որակյալ աշխատանքի խթանման, նախաձեռնության և ձեռներեցության զարգացման համար։

Տնտեսափորձի անցկացումը լուրջ, հետևողական աշխատանք է պահանջում, այն պարտավորեցնում է ուժերի լարում, բարձրարդյունավետ աշխատանք՝ բոլոր տեսակի ռեսուրսների նվազ ծախսումների պայմաններում։

Միավորումում ակտիվորեն է գործում տնտեսափորձը ղեկավարող հանձնաժողովը, իրականացվում է կազմտեխմիջոցառումների պլանը, վերափոխվել է տնտեսագիտական ուսուցման ծրագիրը, որտեղ նախատեսված է «տնտեսափորձ» հատուկ բաժին։ Մինչև տնտեսափորձն սկսելը հիմնականում ավարտվեցին ուսուցման աշխատանքներն ինչպես գլխավորում, այնպես էլ միավորման մյուս գործարաններում։ Պարապմունքները վարում էին միավորման ծառայությունների ու բաժինների ղեկավար աշխատողները։ Նոր պայմաններում մեր խնդիրները քննարկվել են միավորման կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում։ Տնտեսափորձի դրույթները մասսայականացվում են ցուցադրական ագիտացիայի և ռադիոյի միջոցով, բոլոր արտադրամասերին հուշաթերթիկներ տրվեցին, որոնք պարզաբանում էին նորույթի այս կամ այն դրույթը։ Ասենք, որ ինչպես նախապատրաստական, այնպես էլ հաջորդ փուլերում մեծ օգնություն են ցույց տալիս տնտեսափորձի հանրապետական, ինչպես նաև էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության հանձնաժողովները։ Այսօր միավորման ձեռնարկություններում ամենուր զգացվում է, որ մարդիկ աշխատում են նոր ոճով։ Պլանային ցուցանիշները և նորմատիվներն ապահովված են համամասնական նյութատեխնիկական և կազմակերպական միջոցներով։

Շատ կարևոր է տնտեսափորձի պայմաններում ձեռնարկությունների ղեկավարների իրավունքների ընդլայնումը էկոնոմիկայի բազմաթիվ հարցերի լուծման ասպարեզում։ Ամենից առաջ դա վերաբերում է պլանների ձևավորման ժամկետներին, վերադասի կողմից պլանավորվող ցուցանիշների թվի նվազեցմանը։ Ձեռնարկության աշխատանքի գնահատման ցուցանիշները վերադաս և տեղական մարմիններում, ինչպես նաև համամիութենական սոցմրցության ամփոփման ժամանակ նվազեցված են և հասցված են վեցի։ Դրանք են՝ սահմանված ժամկետներում ըստ անվանացուցակի որակյալ արտադրանքի իրացման պայմանագրային պարտավորությունների կատարումը, գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրման, արտադրանքի տեխնիկական մակարդակի (որակի), աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման և նոր արտադրական կարողությունների ու օբյեկտների շահագործման առաջադրանքների կատարումը։

Տնտեսափորձը առաջին պլանի վրա է դնում առաքման պայմանագրային պարտավորությունները ժամկետին կատարելը։ Այսօր կարևոր է ոչ այնքան այն, թե քանի ռուբլու արտադրանք է տրվում, այլ այն, թե ինչպիսին է այդ արտադրանքի որակը և որքանով է այն ժամանակին հասցվում սպառողին։ Պարտավորություններն անթերի կատարելու դեպքում, ինչպես այդ նախատեսում է տնտեսափորձը, ձեռնարկության նյութական խրախուսման ֆոնդն ավելանում է 15 տոկոսով։

Մեզ համար էական է ցուցանիշների համակարգից «կարևորագույն արտադրատեսակ» ցուցանիշի հանելը։ Մեզ համար մեծ օգնություն է այն, որ եթե անվճարունակության պատճառով առաքված արտադրանքը պատվիրատուների կողմից չի վճարվում, իրացված արտադրանքի ընդհանուր ծավալի ցուցանիշն անտեսվում է՝ պայմանագրային պարտավորությունները լրիվ կատարելու դեպքում։

Առաջին կիսամյակում միավորման բոլոր գործարանները պայմանագրային պարտավորությունները կատարեցին 100 տոկոսով, թողարկված արտադրանքի 84,9 տոկոսը կրում է պետական որականիշ։ Սա, ինչպես միավորման կոլեկտիվների քրտնաջան աշխատանքի, այնպես էլ նյութական խրախուսման դերի բարձրացման, մատակարարող կազմակերպությունների աշխատանքի օպերատիվության, տրանսպորտային կազմակերպությունների աշխատանքի բարելավման արդյունք է։

Տնտեսափորձի պայմաններում խիստ կարևոր է երկարատև կայուն նորմատիվների սահմանումը աշխատավարձի, նյութական խրախուսման ֆոնդերի և մյուս հատկացումների համար։ Երկարատև նորմատիվները բարձրացնում են կոլեկտիվի վստահությունը վաղվա օրվա նկատմամբ, լարում ջանքերը ծախսերի նվազեցման և արդյունավետության բարձրացման նպատակով։

Վերցնենք աշխատավարձի աճի նորմատիվը, որը նորմատիվային զուտ արտադրանքի մեկ տոկոսի դեպքում հավասար է 0,35 տոկոսի։ Կոլեկտիվը նախապես կարող է հաշվել իր աշխատավարձը։ Ի դեպ 0,35 նորմատիվը լրիվ ապահովում է աշխատանքի արտադրողականության գերազանցող տեմպերը միջին աշխատավարձի աճի նկատմամբ, բայց այն ցածր է, քանի որ արդյունաբերաարտադրական անձնակազմի աշխատավարձի գերակշռող մասը փոփոխուն է, այն ուղղակիորեն կապված է արտադրանքի աճի հետ։

Մենք կարողացանք առաջին կիսամյակում ստեղծել աշխատավարձի ֆոնդի զգալի տնտեսում, որի մի մասը դեռ առաջին եռամսյակից հատկացվել է բարձր որակավորման աշխատողների համար վերադիրների վճարմանը, մասնագիտությունների և պաշտոնների համատեղմանը, բանվորների համար բարձրացված դրույքների սահմանմանը։ Աշխատավարձի տնտեսման չօգտագործված մասը տարեվերջին կհատկացվի նյութական խրախուսման ֆոնդին, սակայն դա պետք է կատարվի ձեռնարկության տրամադրության տակ մնացող օգուտների սահմաններում։

Աշխատավարձի ֆոնդի գոյավորման և ծախսման մեխանիզմը հնարավորություն է ընձեռում էապես կրճատելու աշխատողների թվաքանակը, իսկ դա ուղղակիորեն առնչվում է արտադրողականության բարձրացման հետ։

Ի դեպ, այն դրույթը, թե արդյունաբերաարտադրական աշխատողների թվաքանակը պլանավորում է ձեռնարկությունը, քիչ է համապատասխանում իրականությանը, քանի որ արտադրողականության տեմպերի առաջադրանքը ստանալուց հետո ձեռնարկությանը ոչինչ չի մնում անելու, քան թվաբանական գործողություն կատարելը։ Թերություններ դրույթներում, իհարկե, կան, դրանք աստիճանաբար հարթվում են։ Բայց, անկախ դրանից, տնտեսափորձն արդեն համոզիչ կերպով ցույց է տվել իր առավելությունները։ Կոլեկտիվն այս տարի պարտավորվել է աշխատանքի արտադրողականության սահմանված տեմպը գերազանցել մեկ տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ իջեցնել 0,5 տոկոսով։ Դա հնարավորություն կընձեռի երկրի ժողովրդական տնտեսությանը պլանից ավելի տալ 290 հազար ռուբլու նորմատիվային զուտ արտադրանք և արտադրության ծախսերը իջեցնել շուրջ 300 հազար ռուբլով։ Տնտեսափորձը պահանջում է աշխատել նյութական և ֆինանսական ռեսուրսների խստագույն տնտեսման պայմաններում։

Նյութական խրախուսման նոր համակարգը պարգևավճար է սահմանում արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար. ինժեներատեխնիկական աշխատողների մոտ դա կկազմի ամսական դրույքի 25 տոկոսը։ Նույնպիսի խրախուսանք է սահմանվում վարպետների, բրիգադավարների, հերթափոխի պետերի համար՝ կոնկրետ նյութերի խնայողության դեպքում։ Սակայն, երբ մարդիկ հասնում են նախանշված բնագծին, նյութական խրախուսման ֆոնդի հատկացումների ցածր նորմատիվների և թույլ բազայի պատճառով հնարավոր չի լինում լրիվ իրականացնել խրախուսման համակարգի անհրաժեշտ պահանջները։ Ինժեներատեխնիկական աշխատողները առաջին կիսամյակում երեք կարևոր ցուցանիշների՝ պայմանագրային պարտավորությունների, աշխատանքի արտադրողականության աճի, ինքնարժեքի իջեցման, առաջադրանքների կատարման համար պետք է ստանային զգալի պարգևատրում, բայց միջոցներ չլինելու պատճառով նրանց պարգևատրման գումարը նվազեցվեց։ Ինչ խոսք, սա հակասում է տնտեսափորձի պայմաններին։

Մեզ այսօր էլ մեծ հոգսեր են պատճառում մատակարարներն ու տրանսպորտայինները։ Դա հատկապես վերաբերում է ՍՍՀՄ պետմատի կազմակերպություններին, որոնք հաճախակի փոխում են մեր մատակարարներին, խախտում ժամանակի ընթացքում ձևավորված ուղղակի տնտեսական կապերը և լուրջ դժվարություններ ստեղծում հումքի ու նյութերի անխափան մատակարարումը կազմակերպելու գործում։ Այստեղ ելքը ձեռնարկությունների միջև ուղղակի և երկարատև գործարար կապերի ստեղծումն ու ամրապնդումն է։

Խրախուսման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆոնդերի գոյացման ցածր նորմատիվների պատճառով արհեստականորեն սահմանափակվում են ձեռնարկությունների ղեկավարների իրավունքները։ Սա ևս բացասաբար է անդրադառնում տնտեսափորձի վրա։ Ավելացնենք նաև, որ դեռևս հիմնովին չեն հաղթահարվել նյութատեխնիկական մատակարարման գործում եղած դժվարությունները։ Սա հատկապես վերաբերում էր նավթամթերքների մատակարարմանը։ Կարևոր հարց է միավորման ինքնուրույն ձեռնարկությունների միջև արտադրության զարգացման ֆոնդի վերաբաշխում կատարելու համար միավորումներին իրավունք վերապահելը։

Նոր հեռանկարներ են բացվում գիտության և տեխնիկայի միասնական ֆոնդի մի մասն ըստ միավորման հայեցողության ծախսելու և ձեռնարկության ֆինանսական ռեզերվ ստեղծելու շնորհիվ։ Բյուջեին ինքնուրույն վճարումները նույնպես մոբիլիզացնում են կոլեկտիվը՝ մղելով արդյունավետ աշխատանքի։

Տնտեսափորձի պայմաններում ձեռնարկություններին վերապահվող իրավունքները շատ են, խրախուսման ձևերը՝ նույնպես։ Այդ իրավունքների և խրախուսման մեթոդների գործիմաց կիրառումը հնարավորություն կընձեռի նվազագույն ծախսումների գնով ստանալու ժողովրդատնտեսական առավելագույն արդյունք և պայմանագրային մատակարարումները կատարելու ժամկետին ու ամբողջությամբ։

«Հայէլեկտրաապարատ» արտադրամիավորման ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվները, մոբիլիզացնելով ներքին ռեզերվները, լայնորեն ծավալելով գործարար սոցիալիստական մրցությունը, լի են վճռականությամբ անթերի կատարելու կուսակցության առաջադրանքները, հաջողությամբ եզրափակելու 1984 թվականը և ամբողջությամբ վերցրած տասնմեկերորդ հնգամյակը։

# ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆԸ՝ ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ՄՈՏԵՑՈՒՄ

**Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու
**Գ. ԱԲԵԼՅԱՆ**

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ զարգացման արդի մակարդակը, տնտեսական կապերի ինտենսիֆիկացումն ու բարդացումը մեծացնում են պահանջները էկոնոմիկայի բոլոր օղակների անխափան և ներդաշնակ աշխատանքի նկատմամբ, քանզի աճում է այն «գինը», որ հասարակությունը վճարում է պատրաստի արտադրանքի ստեղծման ցիկլում ռեսուրսները ռացիոնալ օգտագործելուց կատարվող ցանկացած շեղումների համար։*

*Հասարակական արտադրության արդի մասշտաբների պայմաններում առավել բարդանում են էկոնոմիկայում առկա կապերի աճող բազմազանության համաձայնեցումը, երկարաժամկետ հեռանկարի համար կոորդինացված որոշումների նախապատրաստումն ու կենսագործումը։ Այսպիսի պարագաներում, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1983 թվականի դեկտեմբերյան պլենումում, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման և էկոնոմիկայի անշեղ վերելքի ապահովման համար ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն են ստանում տնտեսական և սոցիալական պրոբլեմների կոմպլեքսային լուծումը, ուժերի և ռեսուրսների համակենտրոնացումը համապետական կարևորագույն ծրագրերի կատարման վրա, պլանները մշակելիս թույլ չտալով նեղ-ճյուղային մոտեցում։*

*Դեռևս 1980 թվականի հունիսին ՍՍՀՄ պետպլանը հաստատեց «Նպատակային կոմպլեքսային ժողովրդատնտեսական ծրագրերի մշակման հիմնական մեթոդական դրույթները», որտեղ սահմանվում է, որ «Նպատակային կոմպլեքս ծրագրերը (ՆԿԾ) մշակվում են առավել կարևոր ժողովրդատնտեսական պրոբլեմների լուծման համար և պետական հեռանկարային ու ընթացիկ պլանների հիմնական մասն են։ Ամբողջությամբ դրանք կազմում են նշված պլանների ծրագրային հատվածքի հիմքը...»* («Экономическая газета», 1980, № 29)։

*Ընթացիկ հնգամյակի կարևոր նպատակային կոմպլեքս ծրագրերից են վառելիքի ու մետաղի խնայողության պրոբլեմը, որը առանձնապես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Հումքային, վառելիքաէներգետիկ և մյուս նյութական ռեսուրսների խնայողության ու ռացիոնալ օգտագործման աշխատանքն ուժեղացնելու մասին» որոշման մեջ։ Տվյալ ժողովրդատնտեսական ծրագրերի տրամաբանական շարունակությունը պետք է լինեն նյութատեխնիկական ռեսուրսների խնայողությանը և արտադրանքի նյութատարության նվազեցմանն ուղղված կոմպլեքսային նպատակային ծրագրերը՝ ճյուղերի, հանրապետությունների, միավորումների (ձեռնարկությունների) մակարդակով։*

*Արտադրանքի նյութատարության նվազեցման նպատակային կոմպլեքսային ծրագրի կազմման հիմնական օբյեկտը այնպիսի մակարդակի տնտեսական միավորն է, որտեղ իրականացվում է անմիջական արտադրական գործունեությունն ու դրա կառավարումը, այն է՝ արտադրամիավորումը (ձեռնարկությունը)։*



*Միավորման (ձեռնարկության) մակարդակով նյութական ռեսուրսների խնայողության և արտադրանքի նյութատարության նվազեցման պրոբլեմի նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը ժամանակի պահանջն է։ Այս հետևությունը հենվում է հետևյալ դրույթների վրա. արտադրանքի նյութատարության կառավարման խնդիրը նոր է, արտադրանքի նյութատարությունն ամբողջական ցուցանիշ է, որը բնութագրում է ձեռնարկության տարբեր ստորաբաժանումների ներդրումը նյութական ռեսուրսների արդյունավետ օգտագործման մեջ, նյութատարության ցուցանիշների հաշվումներն առնչվում են մեծ թվով բնական և արժեքային ցուցանիշների հետ, որոնց մշակումն ու հաշվառումը կատարում են ձեռնարկությունների տեխնիկական, պլանային-տնտեսական և ֆինանսական ծառայությունները։ Այս ծառայությունների անջատ-անջատ լինելը՝ գոյություն ունեցող գծային-ֆունկցիոնալ կառուցվածքի պայմաններում, նվազեցնում է նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանն ուղղված միջոցառումների արդյունավետությունը։*

*Նյութական ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու համար ձեռնարկության բոլոր ծառայությունների աշխատանքները բարելավելու, ինչպես նաև նրանց գործունեությունը կոորդինացնելու նպատակով Երևանի ռելեի գործարանում մշակվում և ըստ նախատեսված փուլերի ներդրվում է արտադրանքի նյութատարության նվազեցման և նյութական ռեսուրսների տնտեսման կոմպլեքս ծրագիր։ ՆԿԾ-ի նպատակը գործարանում օգտագործվող բոլոր նյութատեխնիկական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն ու սահմանված որակի արտադրանքը թողարկելիս նյութական ծախսումների պակասեցումն է։ Դա ենթադրում է ռեսուրսների տնտեսման այնպիսի միջոցների իրականացում, ինչպիսիք են՝ արտադրանքի քաշային և նյութատարության բնութագրումների նվազեցումը՝ դրա նախագծման, պատրաստման կամ արտադրության տեխնոլոգիայի մշակման փուլում, նյութական ռեսուրսների տնտեսումը արտադրության պրոցեսում, արտադրանքի տեղափոխման ու պահեստավորման ժամանակ։*

*Արտադրանքի նյութատարության կառավարման ծրագրային-նպատակային կառուցվածքի հիմքը նպատակների կազմավորման համակարգն է։ Ռելեի գործարանում այն ունի հետևյալ տեսքը. արտադրանքի (արտադրության) նյութատարության գործոնային վերլուծություն՝ արտադրանքի միավորի վրա նյութական ծախսերի մակարդակի իջեցման ռեզերվների հայտնաբերմամբ, արտադրանքի նյութատարության պլանավորում, նյութատեխնիկական ռեսուրսների ծախսերի հաշվառման և հաշվետվության կատարելագործում, արտադրանքի նյութատարության նվազեցման պլանի կատարման ապահովման գործում բաժինների, ծառայությունների և տնտհաշվարկային ստորաբաժանումների ֆունկցիոնալ պարտականությունների մշակում, նյութական ռեսուրսների տնտեսման և արտադրանքի նյութատարության նվազեցման խթանում։*

*Արտադրանքի նյութատարության նվազեցման կոմպլեքսային, ծրագրային պլանավորումը ռելեի գործարանում թույլ է տվել կարգավորել վերլուծական և պլանային աշխատանքը, բարձրացնել արդյունավետությունը, ստեղծել «ռեզերվների որոնման» համակարգ, ծրագրել և իրականացնել որոշակի ծախսեր պահանջող խոշոր միջոցառումներ, որոնք կապահովեն նյութատեխնիկական ռեսուրսների նշանակալի տնտեսում։*

*Արտադրանքի նյութատարության նվազեցման կոմպլեքսային ծրագրի կիրառումը հնարավորություն է ընձեռել ուժեղացնելու գործարանի ընթացիկ և հեռանկարային պլանների նպատակային կողմնորոշումը, բարձրացնելու դրանց հաշվեկշռվածությունը, տալու ձեռնարկության փոխկապակցված կառուցվածքային ստորաբաժանումների գործունեության օբյեկտիվ գնահատականը, որոշելու տարբեր գործոնների ազդեցությունը պլանավորվող արդյունքների վրա, ավելի նպատակամետ ներազդելու գործոնների հայտնաբերման վրա՝ ծրագրված արդյունքներ ստանալու համար, գտնելու ռեսուրսների խնայողության*

ռեզերվներ, կանխատեսելու ռեսուրսների տնտեսմանն ուղղված պլանային և վարչական որոշումների հետևանքները:

Արտադրանքի նյութատարության նվազեցման կոմպլեքսային ծրագիր մշակելիս անհրաժեշտ է հաշվի առնել տվյալ ծրագրի իրականացման ռեալ պայմանները, գիտական հիմնավորվածությունը, լիակատարությունը, կոմպլեքսայնությունը: Այսպիսով, ծրագրում կընդգրկվեն արտադրության բոլոր փուլերը և սպառվող նյութատեխնիկական ռեսուրսների ողջ միագումարը, արտադրանքի թողարկման վրա ներգործման բոլոր ուղղություններն ու ձևերը, որոնք ապահովում են նրա նյութատարության նվազեցումը: Մյուս գործոնը կառավարելիությունն է, որը ծրագրային-նպատակային ղեկավար մարմինների կողմից ծրագրի հաջող մշակման ու իրականացման անհրաժեշտ պայմանն է: Հիմնական սկզբունքների թվում է նաև արդյունավետությունը, որը ենթադրում է կողմնորոշում դեպի վերջնական արդյունքը, վերջինիս տարբեր տեսակների (տնտեսական, տեխնիկական, սոցիալական և այլն) առանձնացումը, միջակա արդյունքներն ու ամբողջությամբ վերցրած ծրագրի արդյունավետությունը որոշելը, ծրագրի մեջ մտնող աշխատանքների ղեկավարման կենտրոնացումը: Անհրաժեշտ է ունենալ ծրագիրը ղեկավարող այնպիսի մարմին, որն օժտված լինի աշխատանքները կոորդինացնելու, բոլոր կատարողներին ֆինանսավորելու և խրախուսելու համապատասխան լիազորություններով՝ անկախ վարչական ենթակայությունից: Այդ մարմինը կարող է սահմանել յուրաքանչյուր օղակի ֆունկցիաները, իրավունքները, պարտականությունները և պատասխանատու լինել ողջ ծրագրի ու դրա առանձին փուլերի կատարման նկատմամբ վերահսկողության համար:

Արտադրանքի նյութատարության նվազեցման ՆԿԾ կազմելիս կարևոր նշանակություն ունի պլանավորման հիմնական փուլերի որոշումը: Մեր ուսումնասիրությունները հնարավորություն են ընձեռել՝ ձևակերպել ծրագրի մշակումն իրականացնելու հետևյալ հիմնական փուլերը և դրանք միավորել ծրագրային ցիկլ հասկացության մեջ. արտադրանքի նյութատարության նվազեցման միջոցառումների հիմնավորումներ, արտադրանքի առկա տեխնիկատնտեսական մակարդակի վերլուծություն, ելակետային վիճակի բնութագիր, ծախսերի մեծություն, վերջնական նպատակի և սպասվող արդյունավետության գնահատում, ռեսուրսների ապահովում, ծախսերն ու սպասվելիք արդյունքները բնութագրող հիմնական ցուցանիշների մշակում: Սահմանվում են նաև առանձին փուլերի և կատարման ընթացքին հետևող օպերատիվ վերահսկողություն, փոխկապվածություն պլանի առանձին մասերի միջև, ծրագրի իրականացման ղեկավարում և կատարման արդյունքների վերլուծում ժամանակակից տնտեսամաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառմամբ:

Այսպիսի ծրագրային ցիկլը, ի տարբերություն տեխնիկայի մշակման, արտադրության և շահագործման ցիկլի, ընդգրկում է միջոցառումների կոմպլեքս, որոնց արդյունքն են նյութական ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործումն ու արտադրանքի նյութատարության նվազեցումը:

Նյութատարության նվազեցման առաջադրանքներն ու միջոցառումները պլաններում պետք է առաջնահերթ կարգով ապահովվեն անհրաժեշտ ռեսուրսներով:

Յուրաքանչյուր միջոցառում հարկ է գնահատել ըստ ծախսերի և սպասվելիք արդյունքի, ընդ որում ոչ թե պայմանական, այլ արտադրության կոնկրետ մասշտաբներին համապատասխան: Բացի այդ, կոմպլեքսային ծրագրերում կարևոր է արտացոլել արտադրանքի ինքնարժեքի և նյութական ռեսուրսների ծախսերի նորմայի փոփոխման տվյալները: Անհրաժեշտ է ապահովել արտադրանքի նյութատարության նվազեցման ծրագրի շաղկապվածությունը նյութատեխնիկական ռեսուրսների, կապիտալ ներդրումների, ըստ աշխատանքի ցուցանիշների, ֆինանսական պլանի հետ: Նյութական ռեսուրսների խնայողության միասնական համակարգի մեջ պետք է ընդգրկվի նաև մատակարարման ծառայությունը, որը ելնելով ծրագրի պահանջներից, պարտավոր



է ժամանակին կազմել արտադրության նյութատեխնիկական ապահովման պլանային առաջադրանքը:

Երևանի ռելեի գործարանում մշակված արտադրանքի նյութատարության նվազեցման նպատակային կոմպլեքսային ծրագրում առանձնանում են հետևյալ բաժինները՝ ծրագրի հիմնական փուլերը, դրա կատարողները, նախատեսված ժամկետները, աշխատանքների ծավալը, փուլերի վրա կատարվող ծախսերը, ֆինանսավորման աղբյուրները, ծրագրի արդյունավետությունը: Այստեղ կարևոր է նաև աշխատանքների ցանցային գրաֆիկի մշակումը՝ ժամկետների էքսպերտային որոշմամբ: Այդպիսի գրաֆիկում պետք է արտացոլվի աշխատանքների ժամկետների փոխադարձ կապն ու հետևողականությունը՝ ըստ ծրագրի փուլերի: Ցանցային պլանավորումը հնարավորություն է ընձեռում նախատեսելու յուրաքանչյուր աշխատանքի կատարման ժամկետները: Այն կարող է օգտագործվել նաև նպատակային կոմպլեքսային ծրագրի արժեքային բնութագրումը որոշելու համար՝ հաշվի առնելով ցանցի առանձին հանգույցներում որոշումներ ընդունելու տարբերակները:

Նյութատարության նվազեցման կոմպլեքսային ծրագրով նախատեսված նպատակների կատարման ուղղությամբ ձեռնարկության կոլեկտիվի գործունեության կոորդինացման ապահովումը պահանջում է ստեղծել ձեռնարկության տարբեր ստորաբաժանումների աշխատանքը ղեկավարող մարմնի ստեղծում: Ծրագրի ղեկավարման մարմինները կազմավորելիս կարևոր է աշխատողների պրոբլեմային մասնագիտացման զուգակցումը ծրագրի կատարող խմբերի գործունեության հետ: Ձեռնարկությունում ծրագրային-նպատակային ղեկավարումն օգտագործելիս գծային-ֆունկցիոնալ սկզբունքը պահպանվում է:

Ծրագրի կատարման մասնակիցները միաժամանակ ենթարկվում են համապատասխան ֆունկցիոնալ ծառայության ղեկավարին, ինչպես նաև ծրագիրը գլխավորող մարմնին: Ծրագրային-նպատակային ղեկավարումը բարձրացնում է կառավարման գործող համակարգի շարժունությունը և հնարավորություն է ընձեռում ռեսուրսների մանևրման համար: Դրա հետևանքով իրականացվում է ձեռնարկության ղեկավարման համակարգի զարգացումը աշխատանքի ինտեգրացման ուղիով:

Արտադրանքի նյութատարության նվազեցման նպատակային կոմպլեքսային ծրագրի քննարկումը, որպես նյութական ռեսուրսների տնտեսման ծրագրային պլանավորումն ու արտադրության յուրաքանչյուր փուլում և ամբողջ ցիկլի ընթացքում արտադրանքի նյութատարության նվազեցումն ապահովող միջոց, հնարավորություն է ընձեռում տալ դրա սահմանումը: Այսպես, արտադրանքի նյութատարության նվազեցման նպատակային կոմպլեքսային ծրագիրը գիտատեխնիկական, կազմակերպական, տնտեսական, սոցիալ-հոգեբանական, գաղափարական միջոցառումների միագումար է, որն ուղղված է նյութական ռեսուրսների առավելագույն արդյունավետ օգտագործմանն ու արտադրանքի նյութատարության նվազեցմանը:

Նպատակային կոմպլեքսային ծրագրի մասշտաբայնությունն ու տևողությունը որոշվում են միավորմանն առաջադրված խնդիրներին համապատասխան:

Ծրագիրը պլանների համակարգի մեջ մտցնելու և դրա ղեկավարումը կազմակերպելու համար մեծ նշանակություն ունի ծրագրի ցուցանիշների համադրելիությունը ցուցանիշների այն սիստեմի հետ, որոնք կիրառվում են միավորման (ձեռնարկության) պլանավորման մեջ: Արտադրանքի նյութատարության նվազեցման նպատակային կոմպլեքսային ծրագրի պլանային-գնահատիչ ցուցանիշների համակարգը պետք է ծրագիրը կատարողներին նպատակամղի դեպի վերջնական արդյունքը: Ծրագրում անհրաժեշտ է քննարկել հիմնական ցուցանիշների հետևյալ խումբը. նյութական ռեսուրսների խնայողությունը (ամբողջությամբ և առանձին, կարևորագույն տեսակներով), թողարկվող արտադրանքի նյութատարության նվազեցումը (հիմնական տեխնիկական կամ սպառողական պարամետրի միավորի վրա), նյութական ռեսուրսների տնտեսմանն ու արտադրանքի նյութատարության նվազեցմանն ուղղված միջոցա-

ռումների ազդեցությունը նյութական ռեսուրսների ծախսի նորմայի մեծության
և թողարկվող արտադրանքի որակի վրա, արտադրանքի աշխատատարության
(աշխատանքի արտադրողականության) փոփոխումը՝ արտադրանքի նյութատա-
րության նվազեցման նպատակով անցկացված միջոցառումների հետևանքով:
Նյութատարության նվազեցման կոմպլեքսային համակարգի պայմաննե-
րում արտադրական բրիգադների աշխատանքի որակի հիմնական չափանիշ-
ներից մեկը պետք է ընդունել նյութական ռեսուրսների տնտեսման (արտա-
դրանքի նյութատարության նվազեցման) ցուցանիշը: Վերջինիս հաշվարկի
հիմքում դրվում են նյութական ռեսուրսների ծախսումների սահմանված նոր-
մաները: Պարգևները պետք է վճարվեն նյութական ռեսուրսների սահմանված
նորմաների կրճատման համար, հիմնվելով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիս-
տրների խորհրդի «Հումքային, վառելիքաէներգետիկ և մյուս նյութական ռե-
սուրսների խնայողության ու ռացիոնալ օգտագործման աշխատանքն ուժեղաց-
նելու մասին» որոշմամբ սահմանված խրախուսական հավելումների սիստեմով:
Ուշադրության է արժանի «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման փոր-
ձը, ուր ստեղծված են մետաղի տնտեսման կոմպլեքսային բրիգադներ և դրանց
ղեկավարման կոորդինացիոն կենտրոն: Ամեն տարի անցկացվում է մետաղի
խնայողության լավագույն առաջարկության մրցույթ: Առաջարկությունները
քննարկելու և դրանց ներդրումը կազմակերպելու համար ստեղծված է գործա-
րանային հանձնաժողով: Եռամսյակը մեկ անգամ կատարվում է մետաղի
տնտեսման առաջարկությունների վերլուծություն և մշակվում է դրանք իրա-
կանացնելու պլան-գրաֆիկ:
Ինչպես վկայում են Հայկական ՍՍՀ մեքենաշինական ձեռնարկությունների
տվյալները, այժմ նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետու-
թյան բարձրացման նպատակով կատարվող աշխատանքների ընդհանուր մա-
կարդակը տակավին չի համապատասխանում հանրապետության ժողովրդական
տնտեսության զարգացման հարաճուն պահանջներին: Նյութական ռեսուրսների
խնայողության առանձին միջոցառումների իրականացումը մեքենաշինական
ձեռնարկություններում շոշափելի արդյունքներ չի տալիս: Անհրաժեշտ է
կոմպլեքսային մոտեցում, որը հիմնված լինի հանրապետության մեքենաշի-
նության նյութամատակարարման ամբողջ համակարգի վերլուծման և ճյուղա-
յին ու ռեգիոնալ շահերի ճիշտ զուգակցման վրա:
Հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում արտադրանքի
նյութատարության նվազեցման և նյութական ռեսուրսների խնայողության ծրա-
գրերի ստեղծումն ու իրականացումը կոնկրետ, գործնական ներդրում է ՍՄԿԿ
Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1981 թ. վերոհիշյալ որոշմամբ
նախատեսված նյութական ռեսուրսների ռացիոնալ և արդյունավետ օգտագործ-
ման նպատակով համապետական խնդրի լուծման գործում:
Մեքենաշինական ձեռնարկություններում նյութական ռեսուրսների ներար-
տադրական ռեզերվների տնտեսման սիստեմային, կոմպլեքսային վերլուծու-
թյունը պետք է լայն կիրառում գտնի ռեգիոնների տնտեսական պրակտիկա-
յում: Վերլուծման նյութերն ու հետևությունները կարող են օգտագործվել տըն-
տեսության արդյունավետության բարձրացման, ներքին ռեզերվների օգտա-
գործման տերիտորիալ և ճյուղային կոմպլեքսային ծրագրերի մշակման համար:
Նյութական ռեսուրսների ներարտադրական ռեզերվների հայտնաբերման
ու ղեկավարման ՆԿՑ-ը նպատակահարմար է օգտագործել որակական ցուցա-
նիշների պլանային չափերն ու դինամիկան հիմնավորելու, համապատասխան
ռեգիոններում դրանք վերահսկելու համար:
Կոմպլեքսային նպատակային ծրագրերի կազմումը հանրային արտադրու-
թյան պլանավորման, հասարակության կատարելագործման առաջավոր սո-
ցիալ-տնտեսական և գիտական գաղափարների իրականացման առավել ցան-
կալի ուղին է, և այսօր այն դարձել է կենսական անհրաժեշտություն: Ժողո-
վրդական տնտեսության տարբեր օղակների ինտենսիվացման միասնական
կոմպլեքսային համակարգի ստեղծումը հանրային արտադրության արդյունա-
վետության բարձրացման կարևոր գործոն է:

---



# ՇՐՋԿՈՄԻ ՀՐԱՀԱՆԳԻՉԸ


**Ռ. ԳԵՎՈՐԳՅԱՆ**
ՀԿԿ Հրազդանի շրջկոմի երկրորդ քարտուղար


Ինչպես ամենուրեք, ՀԿԿ Հրազդանի շրջկոմի հրահանգչական կազմը ևս ապարատի այն օղակն է, որը մեծապես օգնում է կուսակցական կոմիտեին նրա բազմաբնույթ գործունեության ընթացքում: Ամեն մի բաժին, յուրաքանչյուր հրահանգիչ զբաղվում են որոշակի հարցերով: Նրանք ակտիվորեն աջակցում են շրջկոմին, հետևում, որպեսզի սկզբնական կուսկազմակերպություններում խստորեն պահպանվեն կուսակցական կյանքի լենինյան նորմերը: Եվ այդ ամենով հրահանգիչները նպաստում են ներկուսակցական դեմոկրատիայի, քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը, կուսակցական կարգապահության ամրապնդմանը, կոմունիստների և անկուսակցականների ակտիվության բարձրացմանն ու նախաձեռնության զարգացմանը, կադրերի ճիշտ ընտրությանը և դաստիարակությանը, որոշումների կատարման ու ստուգման բարելավմանը և այլն: Հրահանգչի աշխատանքի ճիշտ պլանավորումը հնարավորություն է ընձեռում առանձնացնելու այն, ինչ գլխավորն է որոշակի ժամանակահատվածի համար և դրա վրա կենտրոնացնելու ողջ ջանքերը, օգնելու ճշտորեն զուգակցելու առօրյա գործերը հեռանկարային հարցերի լուծման հետ:

Կուսակցական ապարատի աշխատողները փորձով համոզվել են, որ պլանն այն ժամանակ է կազմակերպող ուժ ստանում, երբ արտացոլում է կյանքի պահանջները, հաշվի առնում շրջանի իրավիճակի ողջ յուրահատկությունը: Եվ այստեղ դժվար է գերագնահատել այն հրահանգչի դերը, որը միշտ կապված է մարդկանց, կոլեկտիվների հետ, հասկանում է նրանց տրամադրությունը, պահանջները:

Կուսշրջկոմը ձգտում է կոնկրետ կերպով սահմանել յուրաքանչյուր բաժնի, աշխատողի ֆունկցիոնալ պարտականությունները: Մեր շրջկոմի կազմբաժնի երեք հրահանգիչներից յուրաքանչյուրը սպասարկում է սկզբնական կուսկազմակերպությունների որոշակի խմբի, հանդես է գալիս շրջկոմի լիազորությամբ, և որպես պրակտիկ գործող կազմակերպիչ, մտահոգված է այն բանով, որպեսզի ապահովի կոմունիստների համախմբված, նպատակասլաց աշխատանքը: Հրահանգիչները միաժամանակ զբաղվում են աշխատավորների մասսայական կազմակերպությունների՝ սովետների, արհմիությունների, կոմերիտմիության հետ կապն ամրապնդելու հարցերով: Այսպես, Հ. Հակոբյանն սպասարկում է վարչական մարմինները, Վ. Գրիգորյանը՝ արհմիութենական, Ա. Բարսեղյանը՝ կոմերիտական կազմակերպությունները: Նման կարգը բաժնի աշխատողներին հնարավորություն է ընձեռում մասնագիտանալու աշխատանքի որոշակի բնագավառներում, ավելի խորությամբ ըմբռնելու այդ կազմակերպությունների առանձնահատկությունները:

Պարբերաբար լինելով իր սպասարկմանը ենթակա գարեջրի գործարանի կուսկազմակերպությունում՝ կազմբաժնի հրահանգիչ Վ. Գրիգորյանը նկատել

ցույց տան նրանց քարտուղարներին։ Լինելով աշխատավորական կոլեկտիվներում, մեր հրահանգիչները զբաղվում են ոչ միայն կազմակերպական աշխատանքով։ Նրանք հետաքրքրվում են նաև, թե ինչպես է իրականացվում կուսակցական ղեկավարությունը տնտեսական գործունեության նկատմամբ, ինչպիսին է սոցմրցության դրվածքը, ինչպես է տարվում գաղափարադաստիարակչական աշխատանքը կոլեկտիվում։

Կուսկազմակերպությունների հետ անմիջական շփումը, նրանց հետ աշխատելը և՛ սովորել է նշանակում հրահանգչի համար, և՛ քննություն։ Այնտեղ ստուգվում են նրա հասունությունը, պատրաստականությունը, այնտեղ նա կուսակցական աշխատանքը ղեկավարելու, ընտրովի ակտիվին օգնելու հարուստ փորձ է կուտակում։

Ինչպե՞ս անել, որպեսզի հրահանգիչը մշտապես գտնվի իրեն ներկայացվող պահանջների մակարդակին։ Այստեղ արժե խոսել հրահանգիչների ուսուցման խնդրի շուրջ։ Երիտասարդ մասնագետը, շրջկոմի ապարատ գալով, ստանձնելով հրահանգչի պարտականությունը, անմիջապես սկսում է զբաղվել հարցերի լայն շրջանակով և երբեմն, հատկապես աշխատանքի առաջին ամիսներին, ինչ-որ բան կարող է և բաց թողնել։ Հետևաբար, հարկավոր է օգնել նրան՝ միմյանցից զատելու գլխավորն ու երկրորդականը, կարևորն ու ոչ շատ կարևորը, թեև, ճիշտն ասած, կուսակցական աշխատանքում երկրորդական ու անկարևոր հարցեր չկան։

Մենք փորձում ենք հրահանգիչների ուսուցմանն ավելի կազմակերպված բնույթ տալ։ Սովետական և տնտեսական ղեկավարների հետ նրանք ընդգրկվում են կուսակցական ակտիվի սեմինարներում, մասնակցում գիտապրակտիկ կոնֆերանսներին, կուսշրջկոմի պլենումներին և բյուրոյի նիստերին, խորհրդակցություններին ու մյուս միջոցառումներին։ Դրանք, իհարկե, օգուտ տալիս են, բայց ակնհայտորեն բավարար չեն լիարժեք ուսուցման համար, քանի որ այնտեղ կուսակցական աշխատանքի հարցերը հանգամանորեն չեն ուսումնասիրվում։ «Իսկ ի՞նչ կլինի, եթե ստեղծենք հրահանգիչների դպրոց»,— այսպիսի միտք արտահայտվեց ապարատի աշխատողների ուսումը կազմակերպելու հարցի քննարկման ժամանակ։ Գաղափարը բոլորին դուր եկավ. դպրոցն արդեն որոշակի համակարգ է։

Որպեսզի լավ կազմակերպվի ուսուցումը, դիմեցինք հենց իրենց՝ հրահանգիչներին, նրանց կարծիքով ո՞րոնք են այն հարցերը, որ պետք է ընդգրկել ուսուցման պլանի մեջ, պարապմունքների ո՞ր ձևը ընտրել։ Նրանց առաջարկությունների հաշվառմամբ էլ կազմվեց ուսման ծրագիրը, որը հետո հաստատվեց շրջկոմի բյուրոյում։ Բյուրոն դպրոցի ղեկավար առաջադրեց կազմբաժնի վարիչին։ Դպրոցի պարապմունքները տեղի են ունենում ամիսը երկու անգամ։ Դրանք անցկացնում են շրջկոմի քարտուղարները, բաժինների վարիչները, հաշվառման սեկտորի վարիչը և առավել փորձառու հրահանգիչները։ Ունկնդիրների հիմնական ուշադրությունը կենտրոնացվում է կուսակցական շինարարության հրատապ պրոբլեմների վրա։ Ամբողջ ուսումնական տարում հրահանգիչներն ուսումնասիրում են ութ թեմա՝ կուսակցական աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործումը, տնտեսական ու կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարումը, աշխատանքը կադրերի հետ, կատարման ստուգումն ու վերահսկողությունը, հրապարակայնությունը կուսակցական աշխատանքում, ներկուսակցական ինֆորմացիան և այլն։ Յուրաքանչյուր թեմայի առնչությամբ հանձնարարվում են ուսումնասիրվելիք հարցերը և գրականությունը, ինքնուրույն աշխատանքի համար կատարվում է փորձի փոխանակում, անցկացվում են պրակտիկ պարապմունքներ և ռեֆերատների քննարկումներ։ Պարապմունքներն անցնում են հրահանգչի պրակտիկ գործերի հետ շաղկապված։ Չէ որ ուսուցման հիմնական նպատակն այն է, որպեսզի նրանից փոխհատուցում ստացվի։ Ունկնդիրներին տրվում են պրակտիկ առաջադրանքներ, իսկ հերթական պարապմունքում վերլուծվում է դրանց կատարումը։ Հրահանգիչների սիստեմատիկ, նպատակասլաց ուսուցման և պրակտիկ աշխատանքի հմուտ զուգակցումն ու կազմակերպումը, անկասկած,



դրականորեն են ներգործում կուսշրջկոմի աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման վրա։

Շրջկոմի ապարատի կուսակցական ժողովներում լսում ենք հրահանգիչների հաղորդումները՝ նրանց ծառայական գործունեության վերաբերյալ, քննարկում ենք աշխատանքի ոճի ու մեթոդների բարելավման, ընդունված որոշումների կատարման կազմակերպման ու վերահսկման կապակցությամբ նրանց ծավալած աշխատանքի հարցերը։ Այսպես, 1983 թ. քննարկվել են կազմբաժնի հրահանգիչ Հ. Հակոբյանի հաշվետվությունը, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրահանգիչ Ս. Ղազարյանի, կազմբաժնի հրահանգիչ Վ. Գրիգորյանի հաղորդումներն այն մասին, թե որն է նրանց աշխատանքում նորը ՍՄԿԿ XXVI համագումարից հետո։ Որպես կանոն, այդ ժողովներն անցել են գործարար, ընկերական մթնոլորտում, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության բարձրացման ոգով։ Դրանք լավ դպրոց են ոչ միայն նրանց համար, ովքեր յուրատեսակ քննություն են տալիս ընկերների առջև, այլև մյուս մասնակիցների համար։

Կոմունիստների և անկուսակցականների հետ անմիջական շփումը, սկզբնական կուսկազմակերպությունների կյանքի ու գործունեության անձնական դիտումներն ամենահավաստի և գնահատելի ինֆորմացիայի աղբյուր են։ Օգտագործելով դրանք, հրահանգիչներն օգնում են շրջկոմին՝ հանգամանորեն ուսումնասիրելու կուսկազմակերպություններում, հիմնարկ-ձեռնարկություններում տիրող իրավիճակը, բացահայտելու թերությունները, վերլուծելու դրանք և գտնելու այս կամ այն հարցի լուծման վրա կուսակցական ազդեցության ուժեղացման ճիշտ ուղիները։ Ընդ որում հրահանգչի դերը չի սահմանափակվում միայն ինֆորմացիա տալով։ Նա կոչված է անձնական մասնակցությամբ օգնելու գործերի բարելավմանը, վերացնելու այս կամ այն թերությունը։

Մասսաների շրջանում հրահանգչի կազմակերպչական գործունեությունը պետք է խելացիորեն զուգակցվի կուսշրջկոմում իրականացվող աշխատանքի հետ։ Պլենումների ու բյուրոների նիստերի նյութերի նախապատրաստումը, լավագույն կազմակերպությունների աշխատանքի փորձի ընդհանրացումը կուսակցական ղեկավարման մեջ էական տարրեր են։ Այդ նյութերը կենդանի պրակտիկայի երևույթների հետևողական վերլուծման արդյունք են։ Նվ վերլուծությունը, ռեալ իրականության գնահատումը, առաջարկությունների ու դիտողությունների մշակումը հրահանգիչների կարևոր պարտականությունն են։ Այս իմաստով հրահանգիչը կարիք ունի մշտական ղեկավարման, բաժինների վարիչների, կուսշրջկոմի քարտուղարների ամենօրյա ուշադրության։ Հրահանգիչների հետ զրույցների ժամանակ հանրագումարի է բերվում կատարված աշխատանքը, բացահայտվում են շատ հարցեր։

Կազմբաժնի և նրա հրահանգչական կազմի աշխատանքում մեծ տեղ է հատկացվում կուսշարքերի աճին։ Բաժնի հրահանգիչները, ըստ յուրաքանչյուր կուսկազմակերպության, վերլուծում են, թե ինչ կարգի ակտիվիստներ է նա աճեցնում, կուսակցական որ խմբերի մեջ է անհրաժեշտ ուժեղացնել դաստիարակչական ու կազմակերպչական աշխատանքը։ Հրազդանի շրջանային կուսկազմակերպությունը 1983 թ. ՍՄԿԿ անդամության թեկնածու է ընդունել 210 մարդու, նրանց 73,3 տոկոսը բանվորներ ու կոլտնտեսականներ են։ Նշանակալի չափով աճել է կուսակցության մեջ ընդունվող կանանց ու կոմերիտականների թիվը։ Ընդունվածների ընդհանուր թվի 73 տոկոսը կոմերիտականներ են, 32,4 տոկոսը՝ կանայք։

Ինչպես տեսանք, հրահանգչական կազմի աշխատանքում կան բազմաթիվ դրական ցուցանիշներ։ Բայց կան նաև թերություններ, որոնց վերացման համար անհրաժեշտ է շատ ջանքեր ներդնել։ Կուսշրջկոմը միջոցներ է ձեռնարկում, որպեսզի կրճատվի թղթերի հոսքը, աշխատակիցները, հատկապես հրահանգիչները, ավելի շատ ժամանակ ունենան կուսակցական կազմակերպությունների հետ կենդանի կապի համար։ Մենք ձգտում ենք բարձրացնել մեր աշխատանքի որակը, կատարելագործել դրա ոճն ու մեթոդները, ամեն ինչ անել կուսակցության առաջադրած խնդիրներն իրականացնելու համար։

---

# ԿՈՒՍՇԱՐՔԵՐԻ ՀԱՄԱԼՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՌԵԶԵՐՎԸ

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ քարտուղարների համաքանակային խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի արտասանած ճառում բովանդակվող դրույթներն ու ցուցումները, ինչպես նաև «Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը որակական նոր փուլ են նշանավորում ՀամԼԿԵՄ-ի գործունեության մեջ։ Այդ կարևորագույն փաստաթղթերում առաջադրված խնդիրների լուծումը լենինյան կոմերիտմիության պատվի գործն է։

Կուսակցությունն անսահման հավատով է վերաբերվում սովետական երիտասարդության մարտական ջոկատին։ Եվ օրինաչափ է Կենտկոմի հիշյալ որոշման այն գնահատականը, որ «...լենինյան կոմերիտմիությունը ըստ արժանվույն է կատարում կուսակցության հուսալի ռեզերվի դերը, մատաղ սերունդների կոմունիստական դաստիարակության գործում, կոմունիզմի իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում կուսակցության ակտիվ օգնականի դերը»։

ՍՄԿԿ XXVI համագումարն ըստ ամենայնի կարևորեց կոմերիտմիության կուսակցական ղեկավարման բարելավման անհրաժեշտությունը։ Դա բացատրվում է նրանով, որ հասուն սոցիալիզմի պայմաններում սովետական հասարակության քաղաքական, սոցիալ-տնտեսական և հոգևոր-մշակութային զարգացման բնագավառներում իր հարաճուն ղեկավար դերն իրականացնելիս կուսակցությունը ավելի ու ավելի մեծ չափով է հենվում իր մարտական օգնականի ու հուսալի ռեզերվի վրա։ Իր ողջ պատմության ընթացքում կոմերիտմիությունը, որպես երիտասարդական մասսայական կազմակերպություն, երիտասարդ սերնդի գաղափարաբարոյական դաստիարակությունը կազմակերպել է կուսակցության նախանշած ուղիով, մոբիլիզացրել նրա բոլոր հնարավորությունները՝ երկրի առջև ծառացած խնդիրները լուծելու համար։

Տասնամյակների ընթացքում կուսակցության ղեկավարությամբ կոմերիտմիությունն ստեղծել է երիտասարդության հետ տարվող աշխատանքի հիանալի ավանդույթներ։ Դրանց պահպանումը և ստեղծագործական զարգացումը կոմերիտմիության առաջնահերթ խնդիրն է։

Սովետական հասարակության մեջ կատարված սոցիալ-տնտեսական խոր տեղաշարժերը նոր պայմաններ ստեղծեցին ՍՄԿԿ շարքերում սերունդների հաջորդայնության, այդ պրոցեսում ՀամԼԿԵՄ դերի ու նշանակության բարձրացման և կուսակցության կողմից նրա ղեկավարման մեթոդների ու ձևերի կատարելագործման համար։ Այդ նպատակով կուսակցությունը մշակեց նոր սկզբունքներ՝ իր շարքերում կոմերիտմիության հոսքը կարգավորելու, կոմունիստների տարիքային համամասնությունները հավասարակշռելու համար։

ՍՄԿԿ XXIII համագումարը հատուկ ուշադրություն դարձրեց կուսակցության շարքերում սոցիալական և տարիքային պահանջվող մակարդակների պահպանմանը։ Սոցիալական բազա ունենալով աշխատավորության ամենա-



լայն խավերին՝ կուսակցությունը, դրա հետ մեկտեղ, պետք է ապահովեր դրանց համամասնական ներկայացուցչությունն իր շարքերում։ Համագումարն ըստ ամենայնի կարևորեց կոմերիտմիության՝ որպես կուսակցության կարևորագույն ռեզերվի, դերը և այդ առնչությամբ տվեց սկզբունքային նշանակություն ունեցող ցուցումներ և հանձնարարականներ։ Հաստատվեցին կուսակցության մեջ կոմերիտմիության միջոցով ընդունվող քաղաքացիների տարիքային նոր սահմաններ (մինչև 23 տարեկան)։ Նախկինում գործող կարգը (մինչև 20 տարեկան) մտցված էր Համառուսաստանյան XII կուսակցական կոնֆերանսի կողմից և թելադրված էր ժամանակի համապատասխան պայմաններով (1922 թ.)։ Այդ ժամանակաշրջանում ՌԿԵՄ-ը դեռևս չուներ կազմակերպությունների ընդարձակ ցանց, նրա շարքերում միավորված էր երիտասարդության ոչ մեծ մասը, նրա ընդամենը 7 տոկոսը։ Այս պատճառով էլ կուսակցության մեջ միայն կոմերիտմիության միջոցով ընդունման առավել բարձր տարիքային սահմանների հաստատումը կարող էր բացասաբար անդրադառնալ երիտասարդ աշխատավորների հաշվին կուսակցական շարքերի համալրումը կարգավորելու վրա։ 60-ական թթ. կեսին ՀամԼԿԵՄ-ը միավորում էր պատանիների և աղջիկների արդեն 43 տոկոսը, իսկ կոմերիտական կազմակերպությունները այդ նույն ժամանակաշրջանում գործում էին ամենուրեք։ Դա պայմաններ ստեղծեց ՍՄԿԿ XXIII համագումարի՝ վերը նշված որոշման համար։

Առաջավոր և կոմունիստական գիտակցականությամբ տոգորված երիտասարդությանը կուսակցության շարքերն ընդունելը չափազանց կարևոր է կոմունիստների բանակի համալրման ու նորացման, ինչպես և նրանց քաղաքական, բարոյագաղափարական միասնության ու համախմբվածության առումով։ Կուսակցությունը մշակում է նոր, առավել կատարելագործված եղանակներ՝ իր կազմի և աճի կարգավորումը օբյեկտիվ օրինաչափության համեմատ իրականացնելու համար։ Ստեղծվել է այդ բնագավառը մշտապես վերահսկելու և այն կարգավորելուն ուղղված միջոցառումների մի ամբողջ համակարգ, կազմակերպական-դաստիարակչական աշխատանքի՝ ներքնապես օրգանական ամուր կապերով ագուցված մի ամբողջություն, որ բխում է կուսակցության անդամության լենինյան սկզբունքներից։ Այս ամենը ապահովեց կուսակցության մեջ երիտասարդության առավել գիտակից մասի մշտական հոսքը, նպաստեց երիտասարդության շրջանում տարվող գաղափարաքաղաքական աշխատանքի բարելավմանը։

Սոցիալ-տնտեսական խոր վերափոխումներ իրագործող կուսակցությունը միավորում է տարիքային տարբեր մակարդակներ, որոնց հավատամքը նույնն է՝ նվիրվածություն կոմունիզմի գաղափարներին, բանվոր դասակարգի ու ժողովրդի շահերին։ Դրանով իսկ ՍՄԿԿ շարքերում ստեղծվում է գաղափարաքաղաքական սերտ միասնություն, որը պայմանավորում է սերունդների հաջորդայնության մեխանիզմի անխափան գործողությունը։

ՍՄԿԿ շարքերում կոմերիտմիության նոր համալրումը, որին կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս ժամանակակից պայմաններում, իր աճով իսկ արտացոլում է սոցիալիստական շինարարության մեջ երիտասարդության մուծած ավանդի աննախընթաց մեծացումը։ Կոմերիտմիության, որպես կուսակցության ռեզերվի, դերի բարձրացումը ակնհայտ է նաև Հայաստանի կոմկուսի շարքերը որպես անդամության թեկնածու ընդունված կոմերիտականներին վերաբերող տվյալներից։ Վիճակագրությունը ցույց է տալիս, որ տարեցտարի անշեղորեն աճում է կուսակցության մեջ ընդունվող կոմերիտականների թիվը, ինչպես նաև նրանց տեսակարար կշիռն ընդունվածների ընդհանուր թվի մեջ։ 1968 թվականին կուսակցության շարքերն ընդունված անդամության թեկնածուների միայն 35,4 տոկոսն էին կոմերիտականներ, մինչդեռ 1983-ին այդ թիվն արդեն հասնում էր 75 տոկոսի Այդ միտումը, բնականաբար, նկատելի է նաև կուսակցության քաղաքային ու շրջանային կազմակերպություններում։ Այսպես, 1983 թ. Հրազդանի շրջանային կազմակերպությունում ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունված 210 մարդուց ՀամԼԿԵՄ անդամներ էին 153-ը, մայրաքաղաքի Մյասնիկյանի շրջանում՝ 247-ից 181-ը, Շահումյանի շրջանում՝

320-ից 242-ը։ Անցած հնգամյակում ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունված ՀամԼԿԵՄ անդամների ընդհանուր թիվը 1966—1970 թթ. համեմատությամբ աճել է 1,7 անգամ, իսկ նրանց տեսակարար կշիռն ընդունվածների կազմում՝ 1,6 անգամ։ Նման միտումը նկատելի է ոչ միայն ամբողջ երկրի, այլև տեղական կուսկազմակերպությունների մասշտաբով։ Որպես կանոնադրական նորմ՝ մինչև 23 տարեկան երիտասարդներին միայն կոմերիտմիության միջոցով ՍՄԿԿ շարքերն ընդունվելու կարգը ճիշտ էր արտացոլում մեր հասարակության մեջ կատարված տեղաշարժերը։ ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների կազմի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ, որպես կանոն, երիտասարդությունը կուսակցության մեջ է ընդունվում հիմնականում կոմերիտմիության միջոցով։ Այսպես, կոմերիտմիության Սիսիանի շրջկոմի երաշխավորությամբ յուրաքանչյուր տարի 45—50 ՀամԼԿԵՄ անդամներ են ընդունվում կուսակցության շարքերը։ ՍՄԿԿ շարքերն անցնելու համար երաշխավորվում են այն ակտիվիստները, որոնք կատարում են հասարակական հանձնարարություններ, մշտապես զբաղվում իրենց գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացման հարցերով, հանդես գալիս նորի և առաջավորի արմատավորողի դերում, պայքարում բացասական երևույթների դեմ։

ՀամԼԿԵՄ-ը որոշակի իմաստով երիտասարդ կոմունիստների դաստիարակության դպրոց է, Ս. Մ. Կիրովի պատկերավոր արտահայտությամբ՝ կուսակցության նախապատրաստական դասարան։ Եվ յուրաքանչյուր երիտասարդ, որն իր առջև նպատակ է դրել դառնալ կոմունիստ, կարող է ու պետք է անցնի քաղաքական դաստիարակության այդ նախնական դպրոցը։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում ևս կուսակցությունը շարունակում է իր որակական կազմը առաջին հերթին առաջավոր բանվորների միջոցով համալրելու կուրսը։ «Կուսակցության շարքերն ընդունել կոմերիտմիության լավագույն սաներին,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի՝ կոմերիտմիության կուսակցական ղեկավարման վերաբերյալ որոշման մեջ,— նախ և առաջ՝ բանվորներից ու կոլտնտեսականներից»։

Սովետական հասարակության ինդուստրիալ առաջընթացը իր հետ բերում է բանվորների թվական աճ։ Ներկայումս երկրի բանվոր դասակարգի շուրջ 18 տոկոսը և երիտասարդ բանվորների կեսից ավելին կոմերիտականներ են։ Նրանց թիվն այժմ անցնում է 14 միլիոնից, որը ՀամԼԿԵՄ կազմի 35 տոկոսն է։ 1982 թ. հունվարի 1-ի դրությամբ ՀԼԿԵՄ կազմի 37,9 տոկոսը բանվորներ էին։ Հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում աշխատում են ավելի քան 288.722 կոմերիտականներ։ Վերջին տարիներին նկատելիորեն ավելացել է կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվների և նրանցում ընդգրկված երիտասարդների թիվը։ ՍՄԿԿ շարքերի աճի համար դա հսկայական ռեզերվ է, կուսակցության շարքերի նորացման լուրջ նախադրյալ։ Այդ պատճառով էլ կոմերիտմիության բուն իսկ վիճակը նրան վերապահում է կուսակցությունը երիտասարդ բանվորների թվից նոր ուժերով համալրող կարևոր ռեզերվի դեր։ Այսպես, ՀԿԿ Շահումյանի շրջանային կազմակերպությունում 1983 թ. ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների շուրջ 75,6 տոկոսը ՀամԼԿԵՄ անդամներ էին, որոնց 89,6 տոկոսը կազմում էին երիտասարդ բանվորները։ Կրասնոսելսկի շրջանային կազմակերպությունում նույն ժամանակաշրջանում ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունված կոմերիտականներից բանվորներ էին ավելի քան 80 տոկոսը, որոնք հիմնականում մեխանիզատորներ, կթվորուհիներ և այլ առաջատար մասնագիտությունների տեր երիտասարդներ են։

Անշուշտ, բանվոր երիտասարդներից չէ միայն, որ ՍՄԿԿ-ն համալրում է իր շարքերը։ Կուսակցությունը հենվում է առավել լայն բազայի վրա, որ ընդգրկում է նաև երիտասարդության այլ խմբեր ու կատեգորիաներ։ Հասուն սոցիալիզմի փուլում ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրում է նաև երիտասարդության մյուս կատեգորիաների լավագույն ներկայացուցիչներին կուսակցության մեջ ներգրավելու հանգամանքի վրա։ Խնդիր է դրվում, մասնավորապես, ուժեղացնել աշխատանքը երի-



տասարդ կոլտնտեսականների թվից լավագույն կոմերիտականներին կուսակցության մեջ ընդունելու ասպարեզում։ Կարևոր է նկատի ունենալ երիտասարդության մյուս խմբերը ևս, օրինակ՝ ուսանողներին։

Ուսանող երիտասարդության՝ կուսակցության մեջ ընդունելության ընդլայնումն զգալի դարձավ 70-ական թթ. սկզբներին, այն բանից հետո, երբ 1971 թ. հոկտեմբերին ուսանողների համամիութենական հավաքում կուսկազմակերպություններին կոչ արվեց հոգալ ուսանողության լավագույն ներկայացուցիչներին կուսակցության մեջ ընդունվելու համար երաշխավորելու մասին։ Եթե 1966—1970 թթ. ՍՄԿԿ շարքերն ընդունվածների մեջ սովորողների միջնախավը կազմում էր 0,7 տոկոս, ապա 1971—1975 թթ. այն հասավ 1,4, իսկ 1976—1980 թթ. ժամանակամիջոցում՝ 1,5 տոկոսի։ Կուսակցության XXV համագումարից հետո մինչև հաջորդ համագումարն ընկած ժամանակաշրջանում ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվեցին 38,3 հազար ուսանողներ կամ 8,6 հազարով ավելի, քան նախահամագումարյան նույն ժամանակաշրջանում։

Հատկանշական է, որ կուսակցության մեջ ընդունվող ՀամԼԿԵՄ անդամների գերակշռող մասը կոմերիտական ընտրովի մարմիններում ընդգրկված ակտիվիստներ են։ Կուսակցության մեջ կոմերիտմիության լավագույն ներկայացուցիչների ընդունելությունը հնարավորություն է ընձեռում ոչ միայն համալրել կուսակցական շարքերը երիտասարդ ուժերով, այլև ամրապնդել կուսակցության գաղափարական ու կազմակերպական կապերը ՀամԼԿԵՄ-ի հետ, ուժեղացնել ազդեցությունը աճող սերնդի բարոյաքաղաքական դաստիարակության գործում։ Կոմերիտմիության մեջ երիտասարդ կոմունիստները հեղինակություն վայելող առաջատար ուժ են։ Նրանք արտադրության առաջավորներ են, ժողովրդական տնտեսության այլևայլ ճյուղերի մասնագետներ։ Նրանց ճնշող մեծամասնությունն անմիջականորեն մասնակցում է սկզբնական կազմակերպությունների գործունեությանը, ակտիվորեն գործում երիտասարդական լայն զանգվածների շրջանում։

Կուսակցական ղեկավարման առավել արդյունավետ ձևերից մեկը կուսակցական միջուկի դերի բարձրացումն է կոմերիտմիության կյանքում։ Մեր հանրապետության ընտրովի կոմերիտական ակտիվից ավելի քան 22 հազարը երիտասարդ կոմունիստներ են։ Կուսակցությունը խնդիր է դնում, որ կոմերիտական կազմակերպություններում իրենց աշխատանքը շարունակեն ավելի շատ երիտասարդ կոմունիստներ, իբրև կուսակցական հանձնարարություն, որչափով նրանք ունեն տեղերում երիտասարդության հետ գործելու որոշակի փորձ և հմտություն։

Կուսակցությունը կարևոր նշանակություն է տալիս կոմերիտմիության գործունեության մեջ կուսակցական միջուկի կատարած դերին՝ իբրև երիտասարդական-մասսայական այդ կազմակերպության մեջ կուսակցական ղեկավարության իրագործողի և նրա գաղափարները տարածողի։ «Պետք է մշտապես հոգալ երիտասարդական միության գործունեության մեջ կուսակցական կորիզի դերը բարձրացնելու մասին»,— պարտավորեցնում է ՍՄԿԿ Կենտկոմը կոմերիտմիության վերաբերյալ իր որոշմամբ։ Միայն վերջին տասնամյակի ընթացքում կուսակցական միջուկը կոմերիտմիությունում ավելացավ երեք անգամ և կազմում է այժմ գրեթե 1,5 մլն մարդ։

Կոմերիտմիության մեջ աշխատող կուսակցական միջուկը կուսակցության կողմից այդ կազմակերպությունը դեմոկրատական ձևով ղեկավարող ուժ է, որ կուսակցության երաշխավորությամբ ընտրվում է կոմերիտական ղեկավար մարմիններում։ Այս հանգամանքը ցույց է տալիս, որ կոմերիտմիության մեջ կուսակցական քաղաքականության անմիջական իրականացնողը կուսակցական միջուկն է, որի ընդլայնումը համապատասխանաբար նշանակում է ՀամԼԿԵՄ-ի՝ որպես կուսակցության ռեզերվի, դերի մեծացում։ Այս իրողության վկայությունը վերջին տարիներս կուսակցության մեջ կոմերիտական համալրման տեսակարար կշռի բարձրացումն է, մի պրոցես, որն իր հերթին պայմանավորված է կուսակցության զարգացման շահերով, նրա շարքերում երիտասարդ, լայնահուն հոսքի կարգավորման օբյեկտիվ անհրաժեշտությամբ։

Կոմերիտմիության մեջ երիտասարդ կոմունիստների գործունեությունը կոփում է նրանց քաղաքականապես, պատրաստում որպես կուսակցական, պետական և հասարակական կազմակերպությունների ապագա ղեկավարների: Ընդ որում դրա պահանջարկը միանգամայն համընթաց է երկրում իրականացվող սոցիալական վերընթաց փոփոխություններին և է՛լ ավելի խորացող գիտատեխնիկական հեղափոխության պրոցեսին, երբ կադրերին ներկայացվում են հմտությունների, կառավարման պատրաստության բավականաչափ լուրջ պահանջներ: Այս պայմաններում կուսակցական կադրերը կոմերիտմիության մեջ պետք է իրոք լինեն հասուն կազմակերպիչներ, տիրապետեն անհրաժեշտ գործնական որակների: «Կոմունիստի աշխատանքը կոմերիտմիությունում,— նշեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների համաքանակային խորհրդակցությունում,— կուսակցական պատասխանատու աշխատանք է: Եվ պետք է այն կատարել պատվով»:

ՀԿԿ Շահումյանի շրջանային կազմակերպությունում, օրինակ, ներկայումս երիտասարդ կոմունիստների թիվը հասնում է շուրջ 1.300-ի, որոնցից 995-ը ընդգրկված են կոմերիտմիության ընտրովի մարմիններում: Շրջանի երիտասարդ կոմունիստներն ակտիվորեն մասնակցում են սովետական և տնտեսական մարմինների կառավարմանը: Նրանցից 28-ը Երևանի քաղաքային սովետի, 87-ը՝ շրջանային սովետի դեպուտատներ են, իսկ տրիկոտաժի № 2 «Անուշ» արտադրամիավորման բանվորուհի Օհաննա Գրիգորյանը ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է: Նա նաև շրջանի երիտասարդ դեպուտատների խորհրդի նախագահն է:

Հիմնարկ-ձեռնարկություններում երիտասարդ կոմունիստներն ակտիվորեն մասնակցում են տնտեսավարման աշխատանքներին, հանդես գալիս որպես նորի ու առաջավորի նախաձեռնողներ ու տարածողներ: «Էլեկտրոն», «Երևանշին», «Էլեկտրասարք», տրիկոտաժի «Անուշ» արտադրամիավորումներում, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում ստեղծվել և հաջողությամբ գործում են «Երիտասարդ կոմունիստի դպրոցներ»: Դրանցում պարապմունքներն անցկացվում են յուրաքանչյուր ամիս, որտեղ դասախոսություններով ու զեկուցումներով հանդես են գալիս կուսակցական ու սովետական ղեկավար աշխատողներ, գիտնականներ, արտադրության առաջավորներ ու ղեկավարներ, պատերազմի և աշխատանքի վետերաններ: Դպրոցների պարապմունքներին ելույթ են ունենում նաև իրենք՝ ունկնդիրները: Նրանց միջև անցկացվում են նաև լավագույն ռեֆերատների մրցույթներ, քաղաքական, տնտեսական և այլ հարցերին նվիրված բանավեճեր:

Վերջին տարիներին երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի, կոմերիտմիության մեջ նրանց գործունեությունն ակտիվացնելու ուսանելի փորձ է կուտակվել ՀԿԿ Սիսիանի շրջանային կազմակերպությունում: Այժմ շրջանում կոմերիտական աշխատանք են կատարում 280 երիտասարդ կոմունիստներ: Կոմերիտական ընտրովի մարմինների անդամների 22 տոկոսը ՍՄԿԿ անդամներ և անդամության թեկնածուներ են: 25 սկզբնական կոմերիտական կազմակերպություններ գլխավորում են երիտասարդ կոմունիստները: ԼԿԵՄ կոմիտեների կոմունիստ քարտուղարների մեծ մասը պատասխանատվությամբ է կատարում իր պարտականությունները, նպատակասլաց աշխատանք տանում կոմերիտական կազմակերպությունների մարտունակության և հեղինակության բարձրացման ասպարեզում, երիտասարդության ուժերը նպատակաուղղում կոլեկտիվների առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծմանը: Երիտասարդ կոմունիստներ, սկզբնական կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներ Լաուրա Հովհաննիսյանը (Շաղաթի կոլտնտեսություն), Լարիսա Խաչատրյանը (Շաքիի կոլտնտեսություն), Պարույր Մարգարյանը (Բարձրավանի կոլտնտեսություն) մեծ հեղինակություն են վայելում իրենց կոլեկտիվներում, երիտասարդության շրջանում, անձնական օրինակ ծառայում կոմերիտականների համար: Հենց նրանց նախաձեռնությամբ են տվյալ կոլեկտիվներում կոմերիտական կազմակերպությունները սատանձնել արտադրության դժվարին տեղամասերի շեֆությունը:



Շրջանի սկզբնական ԼԿԵՄ կազմակերպություններում կարևորվում են երիտասարդ կոմունիստներին հասարակական ակտիվ աշխատանքի մեջ ներգրավելու, կոմերիտական հանձնարարություններ տալու հարցերը: Գյուղշին № 6 տրեստի, Որոտանի կասկադի, Շաղաթի, Անգեղակոթի կոլտնտեսությունների, Սառնակունքի, Թասիկի սովխոզների կոմերիտական կոմիտեների անդամների 35 տոկոսը կոմունիստներ են: Շաղաթի կոլտնտեսության մեխանիզատոր, արտադրության առաջավոր, ՍՄԿԿ անդամ Արտավազդ Ղազարյանը ԼԿԵՄ կոմիտեի անդամ է: Հայաստանի լենինյան կոմերիտմիության XXIX համագումարում նա ընտրվել է ՀԼԿԵՄ Կենտկոմի կազմում:

Կոմերիտմիությունը Լենինի անունով կոչելու 60-ամյակին նվիրված հարվածային հերթափոխի առաջին շարքերում է քայլում Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային արտադրամիավորման մանածագործուհի, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ Սոնյա Ղազարյանը: Նա դեռևս ՀԼԿԵՄ XXIX համագումարում հանդես եկավ «Հնգամյակը՝ կոմերիտմիությունը Լենինի անունով կոչելու 60-ամյակի օրը» նախաձեռնությամբ:

Այսպիսով, զարգացած սոցիալիզմի պայմաններում ՀամԼԿԵՄ-ի դերի բարձրացումը պայմանավորված է նրա՝ կուսակցության գլխավոր ռեզերվը լինելու օրինաչափությամբ: Կուսակցությունը ջանում է, որպեսզի երիտասարդությունը անմնացորդ նվիրվի կոմունիզմի մեծ գաղափարներին, ունենա հասարակության շահերին ծառայելու խոր գիտակցականություն, դառնա կոմունիստական բարոյականության լիարժեք կրողը, ավագ սերնդի օգնությամբ տիրապետի նրա փորձին ու հմտություններին: «Զարգացած սոցիալիզմի հասարակության երիտասարդին,—նշված է «Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— պետք է ներհատուկ լինեն գաղափարաբարոյական բարձր հատկանիշները, նախ և առաջ կոմունիստական համոզվածությունը, սոցիալական ակտիվությունը, աշխատասիրությունն ու ինքնակարգապահությունը, պատասխանատվությունը ընդհանուր գործի համար...»: Այս խնդիրները հետևողականորեն լուծվում են նաև գաղափարադաստիարակչական աշխատանքի ճիշտ դրվածքով: Կուսակցական կազմակերպություններն իրականացնում են կոմերիտմիության հետագա կազմակերպական, քաղաքական ամրապնդմանն ուղղված միջոցառումներ, ուժեղացնում ներգործությունը երիտասարդական լայն զանգվածների վրա, նրանց հաշվին բարելավում կուսակցության որակական կազմը, կարգավորում կուսակցության շարքերում սերունդների գործունեության և նպատակների միասնության ու հաջորդայնության ընթացքը:

---

## ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում

# ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՈՒԺԸ

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ հանրապետությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի վերելքի, մեր երկրի ժողովուրդների միջև կայուն բարեկամության հաստատման վճռական գործոններից է։ Այն առանձնահատուկ նշանակություն ունեցավ նախկինում ճնշված ժողովուրդների համար՝ իրենց տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը հաղթահարելու գործում։ Երկրի ժողովուրդների փաստական անհավասարության վերացման խնդիրը ՌԿ(բ)Կ-ն առաջադրեց դեռևս իր X համագումարում։ «...Կուսակցության խնդիրն է՝ օգնել ոչ-վելիկոռուս ժողովուրդների աշխատավոր մասսաներին հասնելու առաջ անցած կենտրոնական Ռուսաստանին...» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում ու որոշումներում, մաս I, Հայպետհրատ, 1954, էջ 713)։

Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում այն բանին, որ իրենց տնտեսական, քաղաքական և կուլտուրական հետամնացությունը վերացնելու գործում ազգային շրջաններին համակողմանի օգնություն ցույց տային ավելի զարգացած հանրապետությունները։

Կուսակցության XII համագումարը շեշտեց, որ այդ «անհավասարությունը անպայման պետք է հաղթահարել։ Եվ այդ հաղթահարել կարելի է միայն ռուսական պրոլետարիատի իրական ու տևական օգնությամբ՝ Միության հետամնաց ժողովուրդներին նրանց տնտեսական ու կուլտուրական բարգավաճման գործում» (Նույն տեղը, էջ 912)։

Նախասովետական շրջանի Հայաստանը թույլ զարգացած ծայրամաս էր և սովետական իշխանության առաջին տարիներին ի վիճակի չէր սեփական ուժերով սկսելու սոցիալիստական շինարարությունը։ Դրանում նրան օգնեցին ավելի զարգացած շրջանների աշխատավորները և, ամենից առաջ, ռուս ժողովուրդը։ Այդ օգնությունը հիմնականում արտահայտվում էր հանրապետության արդյունաբերության համար անհրաժեշտ սարքավորումների մատակարարմամբ, խոշոր դրամական միջոցների առանձնացմամբ, բանվորների ու մասնագետների կադրերի պատրաստմամբ և այլն։

Արդեն նախապատերազմյան հնգամյակների տարիներին Հայաստանում խոշոր հաջողություններ ձեռք բերվեցին սոցիալիստական արդյունաբերության ստեղծման, գյուղատնտեսության զարգացման և կուլտուրական հեղափոխության իրականացման ասպարեզում։

Կուսակցության XXVI համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ ասված է. «Սովետական իշխանության առաջին տարիներից մեր տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը կառուցվում էր այնպես, որ Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերը հնարավորին չափ արագ բարձրացվեին մինչև նրա կենտրոնի զարգացման մակարդակը։ Եվ այդ խնդիրը



հաջողությամբ լուծվեց։ Այստեղ կարևորագույն դեր խաղացին երկրի բոլոր ազգերի սերտ համագործակցությունը և ամենից առաջ ռուս ժողովրդի անշահախնդիր օգնությունը։ Հետամնաց ազգային ծայրամասեր... ներկայումս գոյություն չունեն» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 89—90)։

Այժմ Հայաստանի ժողովրդական տնտեսությունը մի խոշոր տնտեսական կոմպլեքս է։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանն անցավ զարգացման այնպիսի մի ճանապարհ, որը կապիտալիզմի պայմաններում հաղթահարելու համար կպահանջվեին հարյուրամյակներ։ Կարճ ժամանակամիջոցում թռիչք կատարելով հետամնացությունից դեպի բարձր զարգացած էկոնոմիկա, այն դարձավ զարգացած արդյունաբերություն և առաջավոր տնտեսություն ունեցող հանրապետություն։ Հայ ժողովուրդը, ձեռք բերելով փաստական հավասարություն, այսօր իր լուման է ներդնում զարգացած սոցիալիզմի կառուցման ընդհանուր գործում։

«Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Ժողովուրդների համերաշխ ընտանիքում դինամիկ աճում է սովետական բոլոր հանրապետությունների էկոնոմիկան։ Ժամանակակից արդյունաբերություն, գյուղատնտեսություն, գիտություն, կուլտուրայի իսկական ծաղկում՝ ահա թե ինչն է այսօր բնորոշ նրանցից յուրաքանչյուրին։ Միևնույն ժամանակ նրանք ունեն իրենց անկրկնելի դեմքը, ազգային ինքնատիպ գծերը»։

Սովետական Հայաստանի, ինչպես և մյուս միութենական հանրապետությունների ծաղկումը կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության վառ վկայությունն է, մեր երկրի ժողովուրդների բեղմնավոր համագործակցության հիանալի արգասիքը։

Եթե սոցիալիստական շինարարության սկզբնական շրջանում սովետական հանրապետությունների տնտեսական կապերում որոշիչ դեր էր խաղում ժողովուրդների փոխօգնությունը, ապա զարգացած սոցիալիզմի արդի փուլում աշխատանքի ներմիութենական բաժանման հիման վրա բոլոր հանրապետությունների միջև տեղի է ունենում նյութական բարիքների ինտենսիվ փոխանակում։ Զարգացման ավելի բարձր աստիճանի է հասել եղբայրական ժողովուրդների տնտեսական համագործակցությունը, ավելի համակողմանի դարձել նրանց փոխադարձ կապը։ Մեր երկրի ժողովուրդների տնտեսական համագործակցությունն իրականացվում է կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ղեկավարությամբ՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման հիման վրա։

Սովետական ժողովուրդների տնտեսական համագործակցության կարևոր ձևը արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի փոխադարձ մատակարարումներն են։ Հայկական ՍՍՀ-ն միութենական մյուս հանրապետություններն է առաքում էլեկտրաշարժիչներ, շարժական էլեկտրակայաններ, ուժային տրանսֆորմատորներ, կաբելային արտադրանք, էլեկտրաչափիչ սարքեր, կոմպրեսորներ, ավտոդողեր, հիդրոպոմպեր, մետաղահատ հաստոցներ, ռետինատեխնիկական իրեր, ներկանյութեր, հանքային ջրեր, քիմիական արտադրանք, շինանյութեր և այլն։ Իր հերթին, նրանցից ստանում է սև ու գունավոր մետաղներ, ածուխ, անտառանյութեր, նավթամթերքներ, ձեթ, թուղթ, քիմիկատներ, բեռնատար և մարդատար ավտոմեքենաներ, գործող հաստոցներ, դարբնոցամամլիչային սարքավորումներ, տրակտորներ, հացահատիկահավաք կոմբայններ, էլեկտրագնացքներ, վագոններ, բամբակյա ու մետաքսյա գործվածքներ, ձկան ու ձկնապահածոների արդյունաբերության արտադրանք և այլն։

Հայկական ՍՍՀ-ն մինչև 70-ական թվականները ՌՍՖՍՀ-ից ստանում էր իրեն անհրաժեշտ մեքենաշինական արտադրանքի ավելի քան կեսը, սև մետաղների երկու հինգերորդը, անտառանյութերի 96 տոկոսը։ Հայաստանից ՌՍՖՍՀ էին առաքվում մեքենաշինության արտադրանքի 60 տոկոսը, քիմիա-

կան արդյունաբերության արտադրանքի գրեթե կեսը, պահածոների ու գինու-կոնյակի արտադրանքի մոտ 60 տոկոսը, շինանյութեր և այլն։

Մեր հանրապետությունն ստանում է ավելի քան չորս հարյուր անուն քիմիական արտադրանք (հիմնականում ՌՍՖՍՀ-ից և Ուկրաինական ՍՍՀ-ից), այդ թվում 20 անուն թթուներ, 70 անուն աղեր և ալկալիներ, մեթիլային սպիրտ, ֆորմալին, զանազան կատալիզատորներ, կրածնավորված սոդա, նատրիումի քլոր, բորաթթու և այլն։ Հանրապետության ձեռնարկությունների հասցեով ուղարկվում է ինը տեսակի կոքսաքիմիական արտադրանք, այդ թվում զգալի քանակությամբ բենզոլ, անտրացին՝ Ուկրաինական ՍՍՀ-ից, քսիլոլ՝ ՌՍՖՍՀ-ից ու Վրաստանից։ Ավտոդողերի և ռետինատեխնիկական իրերի արտադրության մեջ մեծ բաժին է կազմում Ադրբեջանական ՍՍՀ-ից ու ՌՍՖՍՀ-ից մատակարարվող կաուչուկը։

Մեծ պահանջարկ է վայելում ՀՍՍՀ քիմիական ձեռնարկությունների արտադրանքը։ Հայաստանը քլորոպրենային կաուչուկի, վինիլացետատի, պոլիվինիլացետատային էմուլսիայի, արհեստական կորունդի, ցիանամիդի և կալցիում-ցիանամիդի համաձուլվածքի հիմնական մատակարարն է երկրում։ Կիրովի անվան գործարանի արտադրանքն ստանում են երկրի հազարից ավելի ձեռնարկություններ։ Կիրովականի արհեստական մանրաթելի գործարանի մետաքսը մատակարարվում է 14 միութենական հանրապետությունների, պոլիվինիլացետատային էմուլսիան օգտագործում են 8 հանրապետությունների ավելի քան հազար սպառողներ։

Հայաստանի արդյունաբերության առաջատար ճյուղերից մեկի՝ մեքենաշինության ձեռնարկությունների արտադրության համար անհրաժեշտ հիմնական հումքը՝ մետաղը, ստանում են երկրի բոլոր շրջաններից, մասնավորապես ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի և Վրաստանի մետաղաձուլական գործարաններից։ Կոոպերացման կարգով ներմուծվում է կռվածքների և դրոշմոցների մոտ 40, չուգունե ձուլվածքի գրեթե 10 և պողպատե ձուլվածքի 75 տոկոսը։

ՀՍՍՀ թեթև արդյունաբերության զարգացման գործում մեծ նշանակություն ունեն եղբայրական հանրապետություններից ստացվող հումքն ու նյութերը, որոնց ժամանակին մատակարարումով է պայմանավորված հանրապետության թեթև արդյունաբերության մի շարք ձեռնարկությունների աշխատանքը։ ՌՍՖՍՀ-ից և Ուկրաինական ՍՍՀ-ից ստացվում են արհեստական մետաքս, կապրոն, բնական բուրդ, կաշվե հումք, ներբանի ռետին, Բելոռուսական ՍՍՀ-ից՝ արհեստական մետաքս, Վրացական ՍՍՀ-ից՝ բամբակե մանվածք և քրոմակաշվե ապրանքներ։ Ուզբեկական, Ղազախական և Թուրքմենական հանրապետությունները մատակարարում են կաշվե հումք, իսկ Լատվիական ՍՍՀ-ն՝ քրոմակաշվե ապրանքներ։

Զարգացած սոցիալիզմի փուլում մեծ դեր է խաղում սովետական ժողովուրդների համագործակցությունը երկրի ժողովրդական տնտեսության այնպիսի կարևոր ճյուղի զարգացման գործում, ինչպիսին գյուղատնտեսությունն է։ Եղբայրական միութենական հանրապետությունները մեծապես օգնում են Հայաստանի գյուղատնտեսության զարգացմանը, որը տարեցտարի ընդլայնվում է։ Օրինակ, միայն 1965 թվականին մեր հանրապետությունը ՌՍՖՍՀ-ից, Մոլդավական, Բելոռուսական և Ուզբեկական հանրապետություններից ստացել է ավելի քան 2.100 տրակտոր, 250 հացահատիկահավաք կոմբայն, ավելի քան 600 բեռնատար ավտոմեքենա և գրեթե 3 մլն ռուբլու տարբեր տեսակի գյուղատնտեսական մեքենաներ։ Հանրապետությունը ներմուծում է առանձնապես մեծ քանակությամբ հանքային պարարտանյութեր ու թունաքիմիկատներ։ 1965 թվականին ՀՍՍՀ-ն Ադրբեջանական ՍՍՀ-ից ստացել է 56 հազար տոննա սուպերֆոսֆատ և ՌՍՖՍՀ-ից՝ 6 հազար տոննա կալիումական պարարտանյութեր։ Թունաքիմիկատների պահանջված քանակության ավելի քան 90 տոկոսը ներմուծվում է ՌՍՖՍՀ-ից, Ուկրաինական, Ադրբեջանական և Ուզբեկական հանրապետություններից։ 1970 թվականին Հայաստանի գյուղատնտեսության զարգացման համար մյուս հանրապետություններից ներմուծվեցին 7.326 տրակտոր, 4.688 բեռնատար մեքենա, 1.016 հացահատիկահավաք կոմբայն։



Միութենական հանրապետությունների գյուղատնտեսության զարգացմանը իր հերթին մեծ օգնություն է ցույց տալիս նաև Հայաստանը՝ նրանց առաքելով հանքային պարարտանյութեր, բարձրորակ սերմեր, գյուղատնտեսական մեքենաների տարբեր դետալներ։ 1977 թվականին Հայկական ՍՍՀ-ն ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու կոլտնտեսություններին ու սովխոզներին մատակարարեց 16 Ռ—20 մոդելի մետաղամշակման ագրեգատներ։

Եղբայրական հանրապետությունների տնտեսական համագործակցության ասպարեզում առանձնապես կարևորվում է արդյունաբերական խոշոր օբյեկտների կառուցումը։ Սոցիալիստական համագործակցության և բարեկամության օրինակ հանդիսացավ այնպիսի խոշոր ու կարևոր օբյեկտների շինարարությունը, ինչպիսիք են Երևանի ՋԷԿ-ը, Հայկական ատոմակայանը, Արփա—Սևան թունելը և այլն։

Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, որի առաջին հերթը շահագործման հանձնվեց 1963 թվականի մայիսին, ըստ էության կառուցել է մեր ողջ երկիրը։ Կոմբինատի շինարարությանը սարքավորումներ էին մատակարարում «Ուրալմաշ», Լենինգրադի Կոտլյակովի անվան, Վորոնեժի լեռնային սարքավորումների, Դնեպրոպետրովսկի լեռնահանքային սարքավորումների գործարանները, Լենինգրադի «Մեխնաբոր» նախագծային ինստիտուտը և այլն։ Սևան—Դիլիջան թունելի շինարարության համար սարքավորումներ ու շինանյութեր էին ուղարկում երկրի 30-ից ավելի ձեռնարկություններ. Ուկրաինան՝ հանքամիջանցքի կայանքներ, տրանսֆորմատորներ, Ուրալը՝ հորատման մեքենաներ։

Բոլոր միութենական հանրապետությունների հետ միասին Սովետական Հայաստանն ակտիվորեն մասնակցում է եղբայրական հանրապետություններում նոր արդյունաբերական օբյեկտների հիմնադրմանը։ Մեր երկրի համար այնպիսի կարևոր կառույցի ստեղծման գործում, ինչպիսին է Բայկալ—Ամուրյան մայրուղին, իր ներդրումն ունի նաև հայ ժողովուրդը։ Մեր հանրապետության տասնյակ ձեռնարկություններ, կատարելով մայրուղու պատվերները, այդտեղ են ուղարկում հզոր գեներատորներ, տրանսֆորմատորներ, ուժային կաբելներ, ավտոպահեստամասեր, մորթե մուշտակներ և բարձրորակ այլ ապրանքներ։

Արդի փուլում լայն չափեր է ընդունել բանվորների ու մասնագետների անհրաժեշտ կադրերով ՍՍՀՄ եղբայրական հանրապետությունների փոխօգնությունը։ Հարկ է նշել, որ այսօր նման փոխօգնությունը տարբերվում է սոցիալիզմի կառուցման առաջին տարիներին ցույց տրվող օգնությունից։ Ինչպես նշվել է, այն ժամանակ ավելի զարգացած շրջաններն էին կադրերով օգնում հետամնացներին։

«Սովետական մարդկանց ինտերնացիոնալիզմը միշտ ակտիվ է,— շեշտեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում։— Տարբեր ազգությունների հարյուր հազարավոր ներկայացուցիչներ են աշխատում հարվածային կառույցներում, ամենուրեք, որտեղ այդ բանը պահանջում են համապետական շահերը»։ Այսպես, Երևանի մետրոպոլիտենի կառուցման գործում օգնել են Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Մինսկի, Գորկու, Թբիլիսիի, Խարկովի և այլ քաղաքների որակյալ բանվորները։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, հանդես գալով ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Գերագույն սովետի՝ ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում, ասաց. «Հիդրոտեխնիկական վիթխարի կառուցվածքի՝ Արփա—Սևան թունելի շինարարության հերոսական էպոպեան, մի կառուցվածք, որը մատչելի կարող է լինել միայն հզոր տերությանը, Սովետական Հայաստանի տարեգրության մեջ կմնա որպես գործնական բարեկամության և հիրավի եղբայրական օգնության հուզիչ օրինակ։ Համաշխարհային թունելաշինության մեջ նմանը չունեցող այդ ստորերկրյա ջրանցքի կառուցմանն օգնում էր ողջ երկիրը։ Մեզ մոտ հորատողների բրիգադներ էին գալիս Ռուսաստանից, Ուկրաինայից, Վրաստանից, Ադրբեջանից, Ղազախստանից և այլ հանրապետություններից։ Օգնության ձեռք մեկնե-

ցին երկրի գիտական բազմաթիվ հիմնարկությունների մասնագետները։ Դժվար է նույնիսկ հաշվել, թե քանի կոլեկտիվ ու կազմակերպություն մեզ օգնեց իրագործելու այդ մեծ կառույցը՝ սովետական ժողովուրդների եղբայրության ու բարեկամության վեհաշուքանչ հուշարձանը»։

Ուկրաինական ՍՍՀ-ի և ՌՍՖՍՀ-ի մասնագետները մեծ օգնություն ցույց տվեցին Իջևանի փայտամշակման կոմբինատում փայտատաշեղային սալիկների արտադրության մոնտաժման ու կարգավորման, ինչպես նաև Հայելու ֆաբրիկայում հայելիների արծաթապատումից ալյումինապատմանն անցնելու գործում, Ադրբեջանի և Վրաստանի մասնագետները աջակցեցին նավթի ու գազի որոնման, հորատանցքերի գաղային կարոտաժ անցկացնելու աշխատանքներում։ Մսի ու կաթի արդյունաբերության արտադրանքի նոր տեսակների արտադրության յուրացման գործում օգնել են Բաքու, Թբիլիսի, Կիև, Ռիգա, Կիսլովոդսկ, Սոչի, Մուրմանսկ քաղաքների մասնագետները։

Հայ բանվորների և մասնագետների մեծաթիվ ջոկատ, իր հերթին, աշխատել է երկրի բոլոր կարևորագույն ու խոշոր կառույցներում։ «Եղբայրության օրենքով, սրտի թելադրանքով մեր հանրապետության ներկայացուցիչներն այսօր անձնվիրաբար աշխատում են երկրի շատ անկյուններում, արժանի ներդրում կատարում ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու զարգացման, Տյումենի հարստությունների յուրացման գործում, մասնակցում են ԲԱՄ-ի, Ատոմմաշի, Կամազի, Նադեժդինսկի մետալուրգիական կոմբինատի և այլ օբյեկտների կառուցմանը»,— նշեց Կ. Ս. Դեմիրճյանը ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում։

1978 թվականին «Հայգյուղշին» վարչության 200 շինարարներ շեֆական օգնության կարգով աշխատում էին Մարիական Ինքնավար Հանրապետությունում, որտեղ նրանք կառուցեցին բնակելի տներ, պահեստներ, ջրատեխնիկական օբյեկտներ՝ կատարելով 928 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ։ Միութենական հանրապետությունների միջև որակյալ բանվորների և մասնագետների փոխանակումը նպաստում է ժողովուրդների ինտերնացիոնալ դաստիարակությանն ու բարեկամությանը։

Հետևելով ավագ սերունդների հիանալի ավանդույթներին, կոմերիտական ուղեգրերով հազարավոր հայ պատանիներ և աղջիկներ աշխատել են երկրի բազմաթիվ համամիութենական ու հանրապետական կառույցներում։ ԲԱՄ, ոչ սևահողային գոտի, Տյումեն, Հայկական ատոմակայան, Արփա—Սևան թունել՝ ահա այն տեղերի ոչ լրիվ աշխարհագրությունը, որտեղ աշխատանքային սխրանքներ է գործել Հայաստանի երիտասարդությունը։

Այդ ժամանակաշրջանում սովետական հանրապետությունները է՛լ ավելի լայնորեն սկսեցին համագործակցել նաև այնպիսի բնագավառներում, ինչպիսիք են՝ մասնագետների պատրաստումը, նրանց որակավորման բարձրացումը, բանվորների ուսուցանումը նոր մասնագիտությունների պատրաստման գործում։

Եղբայրական հանրապետությունները Հայաստանի ժողովրդական տնտեսությանը մեծ օգնություն են ցույց տալիս նաև տարբեր ճյուղերի համար անհրաժեշտ որակյալ մասնագետների պատրաստման բնագավառում։ Այսպես, 60-ական թվականների սկզբին հանրապետության պրոֆտեխնիկական ուսումնարանների սովորողները Մոսկվայում, Մինսկում, Կիևում, Սերպուխովոյում արտադրական փորձ ձեռք բերեցին փականագործների, ոլորողների, մանողների և այլ մասնագիտությունների գծով։

1968 թվականին Երևանի կաբելի գործարանի 42-ից ավելի բանվորներ արտադրատեխնիկական պրակտիկա անցան Ալտին-Տոնկի, Տաշքենդի, Պոդոլսկի, Սարանսկի, Պերմի, Դնեպրոպետրովսկի, Զապորոժիեի, Խարկովի, Մոսկվայի և եղբայրական հանրապետությունների այլ քաղաքների գործարաններում։

Մինչև Երևանի մետրոպոլիտենի առաջին հերթի շահագործման հանձնելը, 1980 թվականի մարտին 23 մարդուց բաղկացած մի խումբ ուղարկվեց Թբիլիսիի մետրոպոլիտենի տեխնիկական դպրոց՝ մետրոյի գնացքավարների օգնականների աշխատանքին տիրապետելու համար։ Ապրիլի սկզբին այդ նույն



դպրոցը սկսեց պատրաստել գնացքավարների ևս 20 օգնականներ և էսկալատորների 19 մեքենավարներ։

Իր հերթին, Հայկական ՍՍՀ-ն մասնագետների պատրաստման և նրանց որակավորման բարձրացման գործում զգալի օգնություն է ցույց տալիս մյուս հանրապետություններին։ Ադրբեջանցի շատ բանվորներ ու մասնագետներ են իրենց որակավորումը բարձրացրել Երևանի ավտոդողերի գործարանում։ Մինսկի էլեկտրատեխնիկական գործարանի կառուցման առաջին իսկ օրերից նրա կոլեկտիվին մեծ օգնություն ցույց տվեցին Երևանի էլեկտրամեքենաշինարարները։ Մինչև այդ ձեռնարկության շահագործման հանձնելը հայ էլեկտրամեքենաշինարարները հաճախ էին իրենց մոտ հյուր ընդունում բելոռուս ինժեներներին ու բանվորներին, օգնում նրանց բարձրացնելու իրենց որակավորումը, ծանոթացնում արտադրության տեխնոլոգիային, աշխատանքի կազմակերպմանը։

Եղբայրական հանրապետությունների ժողովրդական տնտեսության շատ ճյուղերի համար կադրեր պատրաստելու գործում մեծ դեր են խաղում Հայաստանի բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունները, որոնց շրջանավարտներն աշխատում են մեր լայնարձակ երկրի շատ շրջաններում։

Կադրերի պատրաստման գործում սովետական հանրապետությունների փոխօգնությունը սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների ռեալ մարմնացումն է։

Միութենական հանրապետությունների տնտեսական համագործակցության կարևոր ձևերից են սոցիալիստական մրցությունը և արտադրական փորձի փոխանակումը։ Սոցիալիստական մրցության էությունը աշխատավորների համագործակցության և փոխօգնության վրա խարսխված մրցակցություն է, որի նպատակն է հասնել մեր հասարակության բոլոր ոլորտների ընդհանուր վերելքին։ Սոցիալիստական մրցությունը նպաստում է ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը և հանդիսանում աշխատավոր զանգվածների ինտերնացիոնալ դաստիարակության մեթոդներից մեկը։

Վ. Ի. Լենինը կարևոր նշանակություն էր տալիս աշխատավորների սոցիալիստական մրցությանը։ «...Մրցության կազմակերպումը,— գրել է նա,— աչքի ընկնող տեղ պետք է գրավի սովետական իշխանության խնդիրների մեջ տնտեսական բնագավառում... Մեզ մոտ սոցիալիստական սկզբունքներով մրցության կազմակերպումը պետք է լինի հասարակության վերակազմության առավել կարևոր և առավել շնորհակալ խնդիրներից մեկը»» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 186—187)։

Ղեկավարվելով լենինյան ցուցումներով, սոցիալիստական և կոմունիստական շինարարության բոլոր փուլերում ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է հատկացրել սոցիալիստական մրցության զարգացմանը՝ դրան հաղորդելով համաժողովրդական բնույթ։ Կուսակցությունը սոցիալիստական մրցության զարգացումը դիտում է որպես տնտեսական շինարարության, մարդկանց միջև սոցիալիստական հարաբերությունների ամրապնդման ներգործուն միջոց։

Արդի փուլում մրցությունը բարձրացել է որակապես նոր աստիճանի։ Դրա էությունը հանրային արտադրության արդյունավետության անշեղ բարձրացումն է։

ՍՄԿԿ XXVI համագումարում շեշտվեց, որ սոցիալիստական մրցությունը «իր բուն էությամբ հիմնված է մարդկանց բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա։ Հենց այդ նախաձեռնությունն է օգնում բացահայտելու և գործողության մեջ դնելու արտադրության ռեզերվները, բարձրացնելու աշխատանքի արդյունավետությունն ու որակը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 94)։

Հայկական ՍՍՀ-ում լայնորեն զարգանում են միջհանրապետական մրցության բոլոր ձևերը, որոնք օգնում են ամրապնդելու ժողովուրդների բարեկամությունը։ Ավելի լայնորեն է ծավալվում հանրապետությունների, քաղաքների և ձեռնարկությունների միջև մրցությունը։ Երևանը մրցում է Թբիլիսիի և

Բաքվի, Ռոստովի և Կիևի, Լենինականը՝ Քութայիսիի և Կիրովաբադի, Կիրովականը՝ Ռուսթավիի և Սումգայիթի հետ։ Մրցության ընթացքում այդ քաղաքները ոչ միայն իրենց ստանձնած սոցպարտավորությունների կատարման վերաբերյալ ինֆորմացիայի, այլև կուսակցական աշխատանքի և քաղաքաշինության փորձի փոխանակում են կատարում։ Նշված քաղաքների բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ փոխադարձ կապ են հաստատել, կատարում են փոխայցելություններ, միմյանց հաղորդում իրենց արտադրական փորձը, հասնում արտադրական մեծ հաջողությունների։

Լայնորեն տարածվել է Հայաստանի և միութենական հանրապետությունների համասեռ ձեռնարկությունների մրցությունը, որը հնարավորություն է ընձեռում զգալիորեն ավելի լավ ուսումնասիրելու և տարածելու առաջավոր արտադրական փորձը։ Վաղուց են միմյանց հետ բարեկամություն անում և մրցում Քաջարանի պղնձամոլիբդենային, Դաշքեսանի (Ադրբեջանական ՍՍՀ) ու Տըռնըաուզի (Հյուսիսային Կովկաս) լեռնահարստացուցիչ և «Սեվերոնիկել» կոմբինատների աշխատավորական կոլեկտիվները, որոնք հաճախ են իրենց աշխատանքի փորձի, հաջողությունների վերաբերյալ ինֆորմացիա հաղորդում միմյանց, կազմակերպում պատվիրակությունների և միմյանց ստուգող բրիգադների փոխայցելություններ։

Քաջարանցիներն իրենց ադրբեջանցի գործընկերներից ընդօրինակել են բեռնատար մեծ ավտոմեքենաների նորոգման փորձը, «Սեվերոնիկել» կոմբինատից՝ արդյունաբերական էսթետիկայի ներդրման, Տըռնըաուզի կոմբինատից՝ արտադրամասերի, տեղամասերի, հերթափոխերի և բրիգադների միջև մրցություն կազմակերպելու փորձը։ Օգտակար շատ նորույթներ են ընդօրինակվել նաև քաջարանցիներից։ Դաշքեսանի կոմբինատի աշխատողները կիրառում են էքսկավատորների հավաքակայանի արդյունավետ օգտագործման, իսկ «Սեվերոնիկել» կոմբինատը՝ բեռնման-բեռնաթափման լրիվ մեքենայացման և պայթուցիկ նյութերի նախապատրաստման իրենց հայ գործընկերների փորձը։

Սերտ բարեկամությամբ են կապված Երևանի «Էլեկտրաճշգրիտսարք» և Կիևի «Էլեկտրոպրիբոր» գործարանների կոլեկտիվները։ Երևանցիներն իրենց գործընկերներից ընդօրինակել են մի շարք բարդ սարքերի ստացության տեխնոլոգիան։ Նրանց մեծ օգուտ տվեց սանդղակները լուսաքիմիական մեթոդով պատրաստելու կիևցիների փորձը, որի կիրառումով նրանք հնարավորություն ստացան զգալիորեն բարելավելու արտադրանքի որակը և իջեցնելու դրա ինքնարժեքը։

Առաջավոր արտադրական փորձի փոխանակումը հսկայական տնտեսական օգուտ է տալիս նախ և առաջ այն բանի շնորհիվ, որ բացառում է նոր տեխնիկայի յուրացման ընթացքում թույլ տրվող անխուսափելի սխալները կրկնելու հնարավորությունը։ Այն նպաստում է աշխատանքի արտադրողականության աճին, արտադրանքի որակի բարելավմանը և եղբայրական սովետական հանրապետությունների բարեկամության ամրապնդմանը։ Լայն մրցություն է ծավալվում ոչ միայն տարբեր հանրապետությունների մեծաթիվ աշխատավորական կոլեկտիվների, այլև բրիգադների և առանձին աշխատողների միջև։

Արդի փուլում է՛լ ավելի է ընդլայնվում ու ամրապնդվում սովետական ազգերի տնտեսական ու կուլտուրական բազմակողմանի համագործակցությունը, նրանց եղբայրական լենինյան դաշինքը։

---



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՄՈԲԻԼԻԶԱՑԻԱՆ ԿԵՐՉ

Հ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ անսահմանորեն հավատարիմ մեր բազմազգ ժողովուրդը և նրա փառապանծ բանակը իրենց բոլոր ուժերը նվիրաբերում են սոցիալիստական հայրենիքին ծառայելու մեծ գործին և միշտ պատրաստ են կատարելու իրենց հայրենասիրական պարտքը։ Այդ իրողության ցայտուն վկայությունը սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմն էր, նրա համաշխարհային պատմական հաղթանակը գերմանական ֆաշիզմի դեմ։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ֆաշիստական զավթիչների դեմ մղվող գոտեմարտում սովետական ժողովրդի և նրա բանակի ոգեշնչող ու ղեկավար ուժը կոմունիստական կուսակցությունն էր։ «Իր բազմակողմանի գործունեությամբ,— ասված է «1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— նա ապահովեց քաղաքական, պետական ու ռազմական ղեկավարման, բանակի ու ժողովրդի, ճակատի ու թիկունքի կուռ միասնությունը»։

Պատերազմի առաջին իսկ օրերին կուսակցության Կենտկոմը մշակեց թշնամու դեմ պայքարելու համար ժողովրդի բոլոր ուժերը կենտրոնացնելու ծրագիր, որը շարադրվեց մերձճակատային մարզերի կուսակցական ու սովետական կազմակերպություններին ուղղված ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ՍՍՀՄ ժողկոմսովետի 1941 թ. հունիսի 29-ի դիրեկտիվում։ «...Ֆաշիստական Գերմանիայի դեմ սկսված պատերազմում,— ասվում էր այդ փաստաթղթում,— որոշվում է սովետական պետության կյանքի ու մահվան հարցը, այն հարցը, թե Սովետական Միության ժողովուրդները պետք է ազա՞տ լինեն, թե՞ ընկնեն ստրկության մեջ»։

Գիտակցելով ֆաշիզմի կողմից երկիրը ստրկացնելու վտանգը՝ սովետական մարդիկ իրենց ուժերի, արդար գործի հաղթանակի նկատմամբ խոր հավատով միահամուռ ոտքի ելան պաշտպանելու Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները։ Կոմունիստական կուսակցությունը ծավալեց կազմակերպչական ու քաղաքական վիթխարի աշխատանք երկիրը մեկ միասնական մարտական ճամբարի վերածելու համար։

ՀամԿ(բ)Կ Կենտկոմը կուսակցության բազմաթիվ ղեկավար աշխատողների ուղարկեց զինված ուժեր։ Կենտկոմի կազմի գրեթե մեկ երրորդը, ինչպես նաև միութենական հանրապետությունների կենտկոմների ու մարզկոմների շատ քարտուղարներ և փորձված աշխատողներ գտնվում էին ռազմաճակատներում։ Պատերազմի առաջին վեց ամիսներին զինված ուժեր ուղարկվեցին մոտ 8.890 կուսակցական ղեկավար աշխատողներ, 60 հազար կոմունիստ և 40 հազար կոմերիտական քաղմարտիկներ։ Լենինյան կուսակցության Կենտ-

կոմը հանդես եկավ որպես սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը գլխավորող մարտական շտաբ և ձեռնարկեց կտրուկ միջոցներ՝ կուսակցության ղեկավար դերը երկրի ռազմաքաղաքական ու տնտեսական կյանքում ավելի ուժեղացնելու, կուսակցության շարքերն ամրապնդելու, նրա գաղափարական ու կազմակերպական միասնությունը կոփելու համար։ Ամեն տեղ և ամենուրեք, թիկունքում թե ռազմաճակատում «Կոմունիստնե՛ր, դեպի առաջին գիծ» կոչը դարձավ կուսակցության կյանքի օրենքը։ Կոմունիստական կուսակցության գաղափարախոսական աշխատանքի բոլոր միջոցները՝ մամուլն ու ռադիոն, գրականությունն ու արվեստը, մասսայական ռազմաճակատային բոլոր միջոցառումները գործի դրվեցին՝ մերկացնելու հիտլերյան զավթիչների պլանները, քաղաքական ու բարոյական դեմքը։ Այդ ամենի նպատակն էր զինվորներին և մեր երկրի բոլոր աշխատավորներին համախմբել կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության շուրջը, նրանց դաստիարակել հայրենասիրության վեհ գաղափարներով։

Իրականացվող միջոցառումներին ակտիվորեն մասնակցեց նաև մեր հանրապետությունը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և ժողկոմսովետի այդ ժամանակաշրջանի փաստաթղթերը հարուստ նյութ են տալիս հանրապետության կուսակցական և սովետական մարմինների գործունեության մասին, լույս սփռում Հայրենական մեծ պատերազմի պայմաններում նրանց կողմից լուծվող բազմազան ու բազմաբնույթ խնդիրների վրա։ 1941 թ. հունիսի 29-ին ստացվում է կուսակցության Կենտկոմի և միութենական կառավարության նույն օրն ընդունած դիրեկտիվը։ Այն անմիջապես քննարկվում է Հայաստանի կոմկուսի Կենտկոմում և ՀՍՍՀ ժողկոմսովետում, մշակվում են կոնկրետ միջոցառումներ՝ հանրապետության բոլոր ուժերը կենտրոնացնելու և հակառակորդի դեմ պայքար կազմակերպելու համար։ Հայաստանի կոմկուսի գործունեությունն ուղղված էր այդ դիրեկտիվի կենսագործմանը, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար հայ ժողովրդի ուժերի մոբիլիզացմանը։

Հիտլերի և նրա հանցակից Անտոնեսկուի հրամանով ֆաշիստական զորքերը 1941 թ. հոկտեմբերի կեսերին սկսեցին ներխուժել Ղրիմ։ Կարմիր բանակի գլխավոր զորակայանը հոկտեմբերի 16-ին թույլ տվեց դադարեցնել օդային պաշտպանական մարտերը և բոլոր ուժերը ծովով փոխադրել Ղրիմ։ Սկսվեց Ղրիմի պաշտպանության էպոպեան։ Ֆաշիստական բանակի գերակշռող ուժերին հաջողվեց 1941 թ. աշնանը գրավել Սիմֆերոպոլը, ապա՝ Թեոդոսիան ու Կերչը։ Սկսվեց գրոհ գրոհի ետևից սևծովյան ռազմածովային գլխավոր բազայի՝ Սևաստոպոլի վրա։ Անդրկովկասյան ռազմաճակատի զորքերի հրամանատար, գեներալ-լեյտենանտ Դ. Կոզլովը, ռազմական խորհրդի անդամ, դիվիզիոնային կոմիսար Ֆ. Շամանինը, քաղբաժնի պետ, բրիգադային կոմիսար Դ. Սոլոմկոն և շտաբի պետ, գեներալ-մայոր Ֆ. Տոլբուխինը հեռագրով գլխավոր զորակայանին ներկայացրին Կերչի թերակղզին դեսանտով գրավելու պլան։ Զորակայանն ընդունեց առաջարկը։ Կազմվեցին դեսանտային զորամասեր, և Սևծովյան նավատորմից առանձնացվեցին մարտական միավորներ։

Դեսանտը նպատակ ուներ գրավել Կերչի թերակղզին, փակել դեպի Կովկաս գերմանական զորքերի ուղին, օգնության հասնել պաշարված Սևաստոպոլին և նպաստել Ռոստով—Տագանրոգից դեպի Պերեկոպ—Սիվաշ հարձակվող հարավային ռազմաճակատի զորքերի առաջխաղացմանը։ 1941 թ. դեկտեմբերի 27—29-ը Անդրկովկասյան ռազմաճակատի զորքերը սևծովյան նավատորմի և ազովյան նավատորմիղի հետ կատարեցին դեսանտային գործողություն և դեկտեմբերի 30-ին գրոհով ազատագրեցին Կերչ քաղաքն ու ամբողջ Կերչի թերակղզին։ Ռազմաճակատի այդ շրջանում ստեղծվել էր բարդ իրադրություն։ Սովետական զորքերը հենվում էին Սևաստոպոլի և Կերչի թերակղզու վրա։ Ղրիմի մյուս շրջաններում մոլեգնում էին ֆաշիստական զավթիչները։ Կերչի թերակղզում դեսանտային զորամասերի համալրումը և նվաճված դիրքերի ամրապնդումը կարևորագույն նշանակություն ունեին հետագա մարտական գործողությունների հաջող ծավալման համար։ Գերագույն գլխավոր



հրամանատարությունը 1941 թ. հունվարին մի շարք միջոցառումներ իրականացրեց Կերչի թերակղզում գտնվող զորամասերի մարտական գործողություններն ավելի ակտիվացնելու համար։ Կարմիր բանակի գլխավոր քաղվարչությունը հեռագրով դիմեց Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կոմկուսների կենտկոմներին՝ կուսակցական մոբիլիզացիայի կարգով հավաքագրել և Ղրիմի ռազմաճակատ՝ Կերչ գործուղել 50-ական կուսաշխատողների։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, իրագործելով ՍՄԿԿ Կենտկոմի դիրեկտիվները, ընդառաջելով Կովկասյան ռազմաճակատի հրամանատարության խնդրանքին և կատարելով պաշտպանության ժողկոմատի ու բանակի գլխավոր քաղվարչության պահանջը, Կերչի դեսանտի օրերին 56 կուսակցական, սովետական աշխատողների լրացուցիչ ուղարկեց Կերչ՝ Ղրիմում գործող 390-րդ դիվիզիայի քաղաշխատողների կազմը համալրելու նպատակով։ Մոբիլիզացված կոմունիստները 1942 թ. հունվարի վերջին հատուկ զինվորական էշելոնով ժամանեցին Կամիշ-բուրուն նավակայանը, որտեղից մեկնեցին Կերչ։ Ղրիմի ռազմաճակատի հրամանատար, գեներալ-լեյտենանտ Դ. Կոզլովը և ռազմական խորհրդի անդամ, դիվիզիոնային կոմիսար Ֆ. Շամանինը Հայաստանից Կերչ ժամանած կուսակցական աշխատողների հետ սրտաբաց զրույց ունեցան։ Վերջիններս ստացան համապատասխան հանձնարարություններ 390-րդ դիվիզիայի զորամասերում։ Նրանց մի մասը նշանակվեց գնդի, գումարտակների և առանձին զորամասերի կոմիսարներ, վաշտերի քաղղեկներ, իսկ մի մասը երաշխավորվեց որպես զորամասերի կուսբյուրոների քարտուղարներ։ Դիվիզիայի կուսակցական հանձնաժողովի քարտուղար է նշանակվում գումարտակային կոմիսար Հայկ Պարոնյանը, որը պատերազմից առաջ «Սովետական Հայաստան» թերթի խմբագիրն էր։ Դիվիզիայի շտաբի պետն էր ուկրաինացի, կադրային զինվորական Վ. Շուբան, իսկ զինկոմը՝ Վ. Շարկոն։ Դիվիզիայի հրետանու պետ է հաստատվում փոխգնդապետ Բագրատ Դանիելյանը։ Հայաստանից ժամանակ քաղաշխատողներով է համալրվում նաև դիվիզիայի մյուս ծառայությունների ղեկավար կազմը։ Հիմնվում է դիվիզիայի «Հայկական սնայպեր» թերթը, որի խմբագիր է նշանակվում գրականագետ, ավագ քաղղեկ Գուրգեն Հովնանը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և կառավարությունը մեծ հոգատարություն էին ցուցաբերում Կերչ մոբիլիզացված կոմունիստների նկատմամբ։ Կերչ զորակոչված քաղաշխատողների թվում էր նաև Խաչիկ Նազարյանը, որը մինչև ռազմաճակատ մեկնելը աշխատել էր նախ՝ «Սովետական Հայաստան» թերթի խմբագրությունում, ապա՝ ՀԿԿ Երևանի քաղկոմում։ Կերչում նա նշանակվում է վաշտի քաղղեկ։ Նազարյանը եղել է ռազմաճակատի ամենավտանգավոր գոտում, կատարել հայրենասիրական մեծ աշխատանք։ Հերթական առաջադրանքի կատարման ժամանակ անխոնջ քաղաշխատողը զոհվում է անհավասար մարտում։ Նրա անունը, որպես զոհված ժուռնալիստի, փորագրվել է Հայաստանի ժուռնալիստների տան պատին փակցված մարմարե հուշատախտակին։

Հերոսական ճակատագիր է ունեցել նաև Մարկ Նալբանդյանը։ Նա պատմական գիտությունների թեկնածու էր։ Մինչև Կերչ մեկնելը դասախոսում էր Երևանի ռուսական պետական մանկավարժական ինստիտուտում։ Ռազմաճակատ մեկնելու հենց առաջին օրվանից դառնում է հմուտ քաղաշխատող և կարողանում է բարդ իրադրության մեջ ոգևորել ու մարտի տանել զինվորներին։ Մարտերից մեկում էլ Նալբանդյանը զոհվում է քաջաբար։ Կերչում մղված մարտերում զոհվում է նաև երիտասարդ մարտական քաղաշխատող Սուրեն Սարգսյանը։ Ռազմաճակատ մեկնելուց առաջ նա ՀԿԿ Երևանի կազմակերպության Օրջոնիկիձեի շրջկոմի բաժնի վարիչ էր։ Ռազմաճակատում որպես քաղաշխատող նա աչքի է ընկնում իր կազմակերպչական ու քաղաքական եռանդուն գործունեությամբ, արժանանում մարտիկների ջերմ սիրուն ու հարգանքին։ Հայրենիքի ազատության գործի համար անձնվիրաբար մարտընչում էր նախկինում կուսակցական աշխատող, այնուհետև տեղական արդյունաբերության մինիստրության արհմիութենական կոմիտեի նախագահ Հայկ

Սոխիկյանը։ Ղրիմ մեկնելու առաջին իսկ օրվանից նա աչքի է ընկնում իր նվիրվածությամբ և մարտիկների շրջանում մեծ հեղինակություն վայելում։ Նա կարողանում է կազմակերպել զինվորներին, կռվի տանել թշնամու դեմ։ Մարտադաշտում ցուցաբերած արիության օրինակ էր ծառայում ընկերներին։ Հայրենասիրական ջերմ խոսքերով նրանց վրեժի էր կոչում, ամեն ինչ անում՝ մարտական առաջադրանքները պատվով կատարելու համար։

Մարտադաշտում ընկավ և կոմունիստ Մկրտիչ Մանուկյանը։ Մինչև զորակոչվելը «Ավանգարդ» թերթի խմբագիրն էր, հետո՝ ներքին գործերի ժողկոմատի կուսկոմիտեի քարտուղարը։ Նա դեսանտային մի զորամասի կազմում որպես քաղաշխատող մասնակցել է Թեոդոսիայի փողոցներում գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղվող կռիվներին։ Կռվի թեժ պահին, երբ թշնամու գնդակից ընկնում է զորամասի կոմիսարը, Մ. Մանուկյանն ստանձնում է նրա պարտականությունը և շարունակում վարել մարտը, իր օրինակով ոգեշնչելով մարտիկներին։ Կռիվը սաստկանում է, ֆաշիստական ավտոմատավորները, թաքստոցից կրակ բացելով, ձգտում էին կասեցնել դեսանտային գրոհը։ Սակայն նրա ստորաբաժանումը շարունակում է առաջ նետվել։ Այդ մարտում էլ հենց զոհվեց անվեհեր կոմիսարը։

Հայաստանի կոմկուսի անձնվեր շատ զավակներ պատվով կատարեցին կուսակցության պատվիրանը և արիաբար պաշտպանեցին իրենց հայրենիքը։ Կերչ ուղարկված կոմիսարներից շատերն էլ թեև ծանր վիրավորվեցին, բայց զինվորական հոսպիտալում բուժվելուց հետո նորից մեկնեցին առաջավոր գիծ։ Նրանցից մեկը Արամայիս Մանուկյանն էր, որը բարեխղճորեն կատարում էր հրամանատարության բոլոր առաջադրանքները։ Այդ անվեհեր մարդը շարունակ իր գումարտակի զինվորների հետ էր, առաջավոր դիրքերում։ Շատերի նման նա էլ ծանր վիրավորվում է, կորցնում աջ թևը, ապաքինվելուց հետո դարձյալ մեկնում գործող բանակ՝ քաղաշխատանքի։ Ցուցաբերած սխրանքների համար նա բազմիցս արժանացել է կառավարական պարգևների, հրամանատարության շնորհակալության։

Կուսակցական կարևոր առաջադրանք էր «Մարտական գրոհ» թերթի հրատարակումը, որը պատվով կատարեցին մի խումբ կոմունիստներ։ Նրանք ռազմաճակատի հայ մամուլի առաջին աշխատողները դարձան և աչքի ընկան անբասիր ծառայությամբ։ Առաջին ռազմաճակատային ժուռնալիստներից էին Արամայիս Մնացականյանը, Աշոտ Թադևոսյանը, Ստեփան Կուրտիկյանը։ Թերթերի հրատարակությունն ապահովելու գործում քիչ ավանդ չունեին տպարանի աշխատողներ Հայկ Միքայելյանը (որը զոհվեց կռվում), Սուրեն Պողոսյանը, Վարդան Սարգսյանը և ուրիշներ։ Արամայիս Մնացականյանը խմբագրել է Ղրիմի ռազմաճակատի «Մարտական գրոհ» և կովկասյան ռազմաճակատի «ԲԳԿԲ-մարտիկ» (ապա՝ «Լենինյան դրոշով») թերթերի հայերեն հրատարակությունը։ Կովկասի պաշտպանական մարտերի դժվարին օրերին նա ուղարկվում է Անդրկովկասյան ռազմաճակատի քաղվարչության տրամադրության տակ։ Եղել է զինհրատի կազմակերպիչ, ղեկավարել ռազմական գրականության հրատարակությունը, կատարել ռազմաճակատի բոլոր հրատարակչությունների կուսբյուրոյի քարտուղարի պատասխանատու պարտականությունը։ Նրա ակտիվ գործունեության գնահատականը դարձան Կարմիր աստղի շքանշանը և մի շարք մեդալներ։ Հայերեն լեզվով լույս տեսնող «Մարտական գրոհ» թերթի խմբագրության կազմը համալրվեց Երևանից գործուղված նոր աշխատողներով, որոնց թվում էին Բաբկեն Շահումյանը, Բաբկեն Կարապետյանը, Վլադիմիր Պողոսյանը, Վարդգես Աթոյանը և ուրիշներ։ Նրանք գործում էին Կերչում տեղի ունեցող ռազմական թեժ գործողությունների պայմաններում։

Այս, ինչպես և բազում այլ փաստեր անհերքելիորեն վկայում են, որ կոմունիստներն իրենց անձնական օրինակով, հերոսությամբ, արիությամբ բարձրացնում էին մասսաների մարտական ոգին, նրանց առաջնորդում սխրագործությունների, նրանց մեջ հաստատ համոզմունք ներշնչում, որ թշնամու նկատմամբ լիակատար հաղթանակ ձեռք կբերվի։ Պատերազմի տարիներին անչափ մեծացավ կուսակցության հեղինակությունը, է՛լ ավելի սերտորեն համախմբվեցին նրա շարքերը, է՛լ ավելի ամրապնդվեց կուսակցության և ժողովրդի միասնությունը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1942 թ. հունվարի որոշմամբ Կերչ ուղարկված կոմունիստները պատվով կատարեցին իրենց պարտքը հայրենիքի հանդեպ։ Գործելով դժվարին պայմաններում, պահպանելով հայրենասիրական բարձր ոգին, նրանք ամեն ինչ արեցին սովետական մարտիկի և կոմունիստի անունն ու պատիվը բարձր պահելու համար։ Այդ նաև նրանց է վերաբերում Հայրենական մեծ պատերազմի հաղթանակի 40-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հետևյալ միտքը. «Կոմունիստները գտնվում էին թշնամու դեմ մղվող պայքարի ամենածանր ու վճռական տեղամասերում։ Նրանք անձնական օրինակով, կուսակցական կրքոտ խոսքով ոգեշնչում էին և հաղթանակի առաջնորդում սովետական մարդկանց»։

Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի, նրա զինված ուժերի համաշխարհային պատմական հաղթանակը միանգամայն օրինաչափ էր և ցայտունորեն ապացուցեց սովետական հասարակական ու պետական կարգի կենսունակությունը և ամրությունը, այդ կարգի անվիճելի գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ։ Մեր հայրենիքի պաշտպանության, զինված ուժերի մարտական հզորության ամրապնդման գլխավոր և վճռական պայմանը կոմունիստական կուսակցության նպատակասլաց և կազմակերպող գործունեությունն է, նրա անշեղ ղեկավարությունը։

Ահա արդեն չորս տասնամյակ է, ինչ սովետական ժողովուրդը վայելում է խաղաղության պտուղները։ Բուժելով պատերազմի պատճառած վերքերը, նա ակնառու հաջողությունների է հասել կոմունիստական շինարարության ասպարեզում։ Այդ առումով խոշոր առաջընթաց քայլ է ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների իրագործումը։ Տասնմեկերորդ հնգամյակի խնդիրների լուծման համար մեր երկրի աշխատավորների կատարած հերոսական մեծագործությունների մեջ դրսևորվում են նրանց բարձր գիտակցականությունը, ջերմ հայրենասիրությունը և նվիրվածությունը կոմունիզմի գաղափարներին, որոնց հաղթանակի համար Հայրենական մեծ պատերազմի տարիներին անօրինակ արիությամբ կռվում էին միլիոնավոր սովետական մարդիկ։

Գերմանաֆաշիստական զավթիչների դեմ տարած հաղթանակի 40-ամյակն ակնառու իրադարձություն է սովետական ժողովրդի, ամբողջ առաջադեմ մարդկության կյանքում։ Այդ հոբելյանը կնշվի որպես բոլոր առաջադեմ ուժերի ինտերնացիոնալ տոն։

---

# ԴԱՍՏԻԱՐԱԿԵՆՔ ԻՍԿԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԵՐՆԵՐ

**Վ. ՍԱՀԱՐՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու,
պահեստի գնդապետ

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ իր գործունեության ողջ ընթացքում մեծ ուշադրություն է հատկացրել աշխատավորության, հատկապես երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությանը՝ այն դիտելով որպես սոցիալիստական հայրենիքի պաշտպանության կարևոր գործոն: Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ խնդիր է դրվում կուսակցական ու կոմերիտական ղեկավար մարմինների և կազմակերպությունների առջև՝ ուժեղացնել երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությունը, նրան բարձր պատասխանատվության զգացում պատվաստել սոցիալիստական հայրենիքի պաշտպանության պատվավոր պարտքի կատարման համար:*

*Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության ուսմունքը սոցիալիստական հեղափոխության վերաբերյալ մարքս-լենինյան տեսության բաղկացուցիչ մասն է և բխում է դրանից: Վ. Ի. Լենինը, ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմը, դեռևս մինչև Հոկտեմբերի հաղթանակը առաջին անգամ մշակեց պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը, ստեղծեց ամբողջական կուռ ուսմունք սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին, դրեց սովետական ռազմական գիտության և ռազմական արվեստի հիմքերը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից անմիջապես հետո առաջնորդը կոչ էր անում կուսակցությանը և աշխատավորությանը՝ լրջորեն պատրաստվել հայրենիքի պաշտպանությանը: «Մենք 1917 թ. հոկտեմբերի 25-ից հետո,— գրում էր նա,— պաշտպանողականներ ենք... Երբ մենք դարձանք տիրապետող դասակարգի ներկայացուցիչներ, մի դասակարգի, որն սկսել է սոցիալիզմ կազմակերպել, մենք բոլորից էլ պահանջում ենք լրջորեն վերաբերվել երկրի պաշտպանությանը» (ԵԼԺ, հ. 36, էջ 358):*

*Քաղաքացիական պատերազմից և օտարերկրյա ինտերվենցիայից հետո Վ. Ի. Լենինը հոգ էր տանում Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության մասին: 1920 թ. դեկտեմբերին սովետների համառուսաստանյան VIII համագումարում նա ասել է. «...ով մոռանա մեզ շարունակ սպառնացող վտանգի մասին, որը չի դադարի, քանի դեռ գոյություն ունի համաշխարհային իմպերիալիզմը,— ով մոռանա այդ մասին, նա կմոռանա մեր աշխատանքային հանրապետության մասին» (ԵԼԺ, հ. 42, էջ 215):*

*Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին լենինյան ուսմունքը դարձել է կոմունիստական կուսակցության քաղաքականության հիմքը երկրի պաշտպանունակության ամրապնդման, նրա տնտեսական և պաշտպանական հզորության բազմապատկման գործում: Այն արդի փուլում առավել հրատապ նշանակություն է ստանում, քանի որ, ինչպես ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն համաբանակային կոմերիտական համաժողովում, համաշխարհային ասպարեզում հարկ է լինում գործ ունենալ նաև այնպիսի քաղաքական ուժերի հետ, որոնց խորթ է բարի կամքը և որոնք խուլ են բանականության փաստարկների հանդեպ:*

*Եվ այստեղ անփոխարինելի դեր է խաղում մեր պաշտպանական պոտենցիալ զսպիչ հզորությունը: Ներկայումս այդ պոտենցիալը ոչ միայն սովետական ժողովրդի ստեղծարար աշխատանքի երաշխիքն է, այլև աշխարհի համընդհանուր խաղաղության երաշխիքը: Եվ զուր չէ, որ կոմերիտմիության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի վերջին որոշմամբ պահանջվում է երիտասարդության մեջ ավելի մեծ հաստատակամությամբ դաստիարակել սիրո զգացումը՝ հայրենիքի և ատելության զգացումը՝ նրա թշնամիների նկատմամբ, դաստիարակել քաղաքական, դասակարգային բարձր զգոնություն, սխրանք գործելու մշտական պատրաստակամություն:*

*Սովետական ժողովրդի մղած Հայրենական մեծ պատերազմի պատմական հաղթանակը դարձավ այն իրողության պերճախոս վկայությունը, թե երկրի զարգացման բոլոր փուլերում ինչպիսի վճռական նշանակություն ունեն երկրի պաշտպանական հզորության ամրապնդումը, սովետական բազմազգ ժողովրդի կուռ միասնությունը, երիտասարդության մեջ հայրենիքի հանդեպ ջերմ սիրո ու հավատարմության դաստիարակությունը:*

*Այսօր էլ ՍՄԿԿ-ն, սովետական կառավարությունը բնավ չեն թուլացնում ուշադրությունը երկրի պաշտպանունակության ամրապնդման նկատմամբ: Սոցիալիզմի պաշտպանությունը հնարավոր ագրեսիաներից անհրաժեշտ կլինի այնքան ժամանակ, քանի դեռ գոյություն ունի կապիտալիզմը, որովհետև իմպերիալիստական հետադիմական շրջանները, ինչպես հիշեցրել է ընկեր Չեռնենկոն, չեն կարողանում հաշտվել ժամանակակից համաշխարհային զարգացման գլխավոր միտումի հետ: Նրա ագրեսիվ ուժերի արկածախնդրական գործողությունների հետևանքով աշխարհում ստեղծվել է չափազանց բարդ և լարված իրավիճակ: Սոցիալիզմի՝ որպես հասարակական սիստեմի, դեմ պրեզիդենտ Ռեյգանը հայտարարել է «խաչակրաց արշավանք»: Վաշինգտոնը ձգտում է, ինչ գնով էլ լինի, խախտել ԱՄՆ-ի և ՍՍՀՄ-ի միջև, ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի պետությունների միջև գոյություն ունեցող ռազմաստրատեգիական մոտավոր հավասարակշռությունը, հասնել ռազմական գերազանցության ՍՍՀՄ-ի նկատմամբ: Եվրոպայի տարածքում տեղադրվում են «Փերշինգ—2» և միջին շառավիղի թևավոր հրթիռներ: ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը ստիպված են պատասխան միջոցներ ձեռնարկել: Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն նշեց, որ «Մենք ռազմական գերազանցության կարիք չունենք, մենք մտադիր չենք ուրիշներին թելադրելու մեր կամքը: Բայց մենք թույլ չենք տա խախտել ձեռք բերված ռազմական հավասարակշռությունը: Եվ թող ոչ ոքի մեջ դույզն ինչ կասկած չմնա, մենք այսուհետև էլ կհոգանք այն մասին, որ ամրապնդենք մեր երկրի պաշտպանունակությունը, որ մենք բավարար միջոցներ կունենանք ռազմատենչ արկածախնդիրների տաք գլուխները սառեցնելու համար»:*

*Ահա թե ինչու աշխատավորության, հատկապես երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությունը մշտապես կուսակցության հոգատարության առարկան է: ՍՄԿԿ-ն այն համարում է կոմունիստական դաստիարակության անկապտելի բաղկացուցիչ մասը, սովետական պետության պաշտպանունակության ամրապնդման ամենահրատապ խնդիրներից մեկը:*

*Ղեկավարվելով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան ուսմունքով՝ ՍՄԿԿ-ն վիթխարի աշխատանք է կատարում սովետական մարդկանց ռազմահայրենասիրական դաստիարակության նպատակով: Նա մշտապես հոգում է, որպեսզի այնպիսի երիտասարդություն աճի, որը չերերա երկրի բախտի համար, չկքի սոցիալիզմի բախտի համար պատմական պատասխանատվության բեռան տակ:*

*Աշխատավորության կոմունիստական դաստիարակության նկատմամբ կուսակցության հոգատարության վառ արտահայտություն են ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումները: Պլենումը խնդիր դրեց երիտասարդությանը «...դաստիարակել կոմունիստական իդեալներին հավատարմության*

ոգով, զարգացնել իր երկրի համար հպարտության զգացում, նրա բարգավաճմանը անձնական աշխատանքով աջակցելու ձգտում։ Սեր պատվաստել ՍՍՀՄ զինված ուժերի նկատմամբ, ամրապնդել պատրաստակամությունը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար։

Այդ խնդրի լուծմանը մշտական ուշադրություն են հատկացնում նաև ֆիզիկական կուլտուրայի հայկական պետական ինստիտուտի կուսակցական կազմակերպությունը, ռեկտորատը, հասարակական գիտությունների ամբիոնները, ԼԿԵՄ կոմիտեն։ Նրանք ուսանողության ռազմահայրենասիրական դաստիարակությունը համարում են իրենց հարազատ գործը։ Կուսբյուրոն գործարար կերպով քննարկել է ուսանողների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության հարցը և ընդունել համապատասխան որոշում։

Ինստիտուտի գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հնգամյա հեռանկարային պլանում պատշաճ տեղ է հատկացվում ռազմահայրենասիրական դաստիարակությանը։ Կուսբյուրոյի ջանքերը, նրա քաղաքական-դաստիարակչական աշխատանքի զգալի մասը նպատակամղված են այդ կարևոր խնդրի իրագործմանը։

Արդի լարված միջազգային իրադրության պայմաններում կուսկազմակերպությունը պրոֆեսորադասախոսական կազմի առջև խնդիր է դնում ռազմահայրենասիրական դաստիարակությունն է՛լ ավելի լավ օգտագործել երիտասարդության մեջ բարոյաքաղաքական ու մարտական անհրաժեշտ հատկանիշներ, ակտիվ կենսադիրքորոշում, բարոյական հասունություն ձևավորելու համար, նրա մեջ բարձր պատասխանատվություն, կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հանդեպ պարտքի վեհ զգացում, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության պատրաստակամություն մշակելու համար։

Կուսբյուրոն, ռեկտորատը լուրջ ուշադրություն են նվիրում հասարակական գիտությունների ամբիոնների աշխատանքի բարելավմանը։ Այդ նպատակով 1983 թ. նոյեմբերին կուսբյուրոյի և գիտխորհրդի համատեղ նիստում քննարկվեց «Հասարակական գիտությունների ամբիոնների աշխատանքը ուսանողության գաղափարական դաստիարակության ասպարեզում՝ կուսակցության XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի որոշումների լույսի ներքո» հարցը և ընդունվեց ծավալուն որոշում, որտեղ պատշաճ տեղ է հատկացվում նաև ռազմահայրենասիրական դաստիարակությանը։

Ուսանողության ռազմահայրենասիրական դաստիարակությունն իրականացվում է, առաջին հերթին, հասարակական առարկաների դասավանդման ընթացքում։ Հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դաստիարակման անսպառ աղբյուր են Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը։ Վ. Ի. Լենինի աշխատությունների ուսումնասիրությունը հայրենասիրության դաստիարակման կարևոր միջոց է։ Սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի դաստիարակման համար առատ նյութ է տալիս ՍՄԿԿ պատմությունը։ Չէ՛ որ մեր կուսակցությունը իսկական հայրենասերների և ինտերնացիոնալիստների կուսակցություն է։

Մեր կուսակցության ստեղծման հենց առաջին օրից կոմունիստները հանդես եկան որպես հեղափոխական հայրենասերներ և գլխավորեցին ժողովրդական մասսաների ազատագրական պայքարը ցարիզմի դեմ։ Նրանց մեծագույն հայրենասիրությունը Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակն էր, որ երկիրը փրկեց ահավոր աղետից։ Հետևաբար, աշխատավորության ռազմահայրենասիրական դաստիարակության պրոցեսը սկսվեց մեծ Հոկտեմբերից։

Բավական չէ ունենալ հայրենիք, անհրաժեշտ է նաև պաշտպանել այն, ապահովել նրա բարգավաճումը։ Եվ, իրոք, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր ժողովուրդը 1918—20 թթ. երկրի արտաքին ու ներքին թշնամիների դեմ մղվող պայքարում հերոսաբար պաշտպանեց իր հայրենիքը։ Սովետական հայրենասիրությունն է՛լ ավելի վառ կերպով դրսևորվեց Հայրենական մեծ պատերազմում։ Հայրենասիրության դաստիարակման առումով հատկապես շատ կարևոր է ՍՄԿԿ պատմության «Կուսակցությունը օտարեր-



կրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում» և «Կոմունիստական կուսակցությունը Հայրենական մեծ պատերազմի տարիներին» թեմաների ուսումնասիրությունը։ Մեզ մոտ ավանդույթ է դարձել այդ թեմաների դասավանդումը անցկացնել Հայաստանի հեղափոխության և «Հայաստանը Հայրենական մեծ պատերազմում» թանգարաններում. Փորձը ցույց է տալիս, որ այդպիսի միջոցառումները խոր ազդեցություն են թողնում ուսանողների վրա։

Ուսումնական պրոցեսում դասախոսներն ուսանողների գիտակցության մեջ ամրապնդում են այն հստակ համոզմունքը, որ սովետական հայրենասիրությունն իր առաջին լուրջ քննությունը բռնեց քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի տարիներին։ Անցնելով խաղաղ ստեղծագործական աշխատանքի՝ սովետական ժողովուրդը մեծ սխրանք կատարեց։ Պատմական կարճ ժամկետներում նա կուսակցության ղեկավարությամբ իրականացրեց սոցիալիզմի կառուցումը։ Մեր երկրում ստեղծվեց հզոր պաշտպանական արդյունաբերություն։ Դասախոսները վառ օրինակներով լուսաբանում են ՍՄԿԿ և սովետական պետության հոգատարությունը սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման նկատմամբ։

Կանցնեն դարեր, բայց երախտապարտ մարդկության հիշողությունից չի ջնջվի իր հայրենիքը պաշտպանելու համար սովետական հերոս ժողովրդի անմահ սխրանքը։ Հայրենական մեծ պատերազմում մեր ժողովրդի հաղթանակը ձեռք բերվեց մասսայական հերոսությամբ, սովետական մարդկանց անմնացորդ նվիրվածությամբ, անձնվեր պայքարով ու անդուլ աշխատանքով։ Մեծ Հայրենականի ամենապայծառ էջերից է սովետական բազմազգ ժողովուրդների անխորտակ բարեկամության, իրենց սոցիալիստական հայրենիքը, Հոկտեմբերի նվաճումները միասնական ուժերով պաշտպանելու նրանց պատրաստակամության ցուցադրումը։ Այս ամենը դառնում են ուսանողության ուսումնասիրության առարկա և մեծապես նպաստում նրանց քաղաքական, ուսումնական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը։

Հայրենական պատերազմում կոմունիստական կուսակցության հեղինակության բարձրացման վառ ցուցանիշ էր նրա քանակական աճը։ Պատերազմի ժամանակ կուսակցության շարքերն են ընդունվել ավելի քան հինգ մլն թեկնածու և երեք մլն անդամ։ Հայրենիքի պաշտպանության ամրապնդման վճռական գործոնը, հաջողությունների հիմքը հանդիսանում է ՍՄԿԿ ղեկավար դերի ապահովումը։ Եվ դաստիարակչական կարևոր նշանակություն ունի ուսումնական պրոցեսում Հայրենական մեծ պատերազմի տարիներին կուսակցության ղեկավար դերի, կոմունիստների սխրագործությունների, նրանց հայրենասիրության օբյեկտիվ, սկզբունքային բացահայտումը։ Հայրենական պատերազմում կոմունիստներն ու կոմերիտականները գնում էին մարտական կարևոր առաջադրանք կատարելու այն համոզմամբ, որ դա անձնազոհություն է պահանջում։ Հատկանշական է Լենինգրադի պաշտպան, սպա Գ. Մասլովսկու՝ իր որդուն թողած նամակ-կտակը. «Իմ սիրելի որդի, մենք այլևս չենք տեսնվի։ Մեկ ժամ առաջ ես ստացա առաջադրանք, որը կատարելով կենդանի չեմ մնա։ Դրանից, իմ բալիկ, մի՛ վախենա և մի՛ ընկճվիր։ Եղիր հպարտ այն պատվազգացությամբ, որով քո հայրիկը գնում է դեպի մահ. հայրենիքի համար մեռնելը վստահվում է ոչ բոլորին... Լենինի փառապանծ քաղաքին՝ հեղափոխության օրրանին վտանգ է սպառնում։ Իմ առաջադրանքի կատարումից է կախված նրա հետագա բարօրությունը։ Հանուն այդ մեծ բարօրության ես կկատարեմ առաջադրանքը մինչև իմ վերջին շունչը, արյան վերջին կաթիլը»։

Պատերազմում ամենայն ուժով դրսևորվում էր կոմունիստի վեհ կոչումը։ Ժողովուրդը հանձին կուսակցության տեսնում էր իմաստուն ղեկավարին։ «Ուզում եմ մարտի գնալ որպես կոմունիստ,— եթե մարտում ընկնեմ, ինձ համարեք կոմունիստ»— այս էր հազարավոր հայրենասերների շուրթերին։ Կոմունիստների օրինակին հետևում էին կոմերիտականները։ Սովետական հայրենասերները կռվում էին՝ «Մահ չիմացյալ մահ է, մահ իմացյալ անմահություն» նշանաբանով։

Ռազմահայրենասիրական դաստիարակության նպատակին են ծառայում
ուսանողության գիտապրակտիկ կոնֆերանսները հասարակական գիտություն-
ների թեմատիկայով, որոնք անցկացվում են ամեն տարի։ Առաջին կուրսում
շատ հետաքրքրական են անցնում ՍՄԿԿ պատմությանն առնչվող կոնֆերանս-
ները, որտեղ քննարկվում են «Վ. Ի. Լենինը սոցիալիստական հայրենիքի
պաշտպանության մասին», «Լենինյան կոմերիտմիության սխրագործությունը
Հայրենական մեծ պատերազմում», «Սովետական սպորտսմենները Հայրենա-
կան պատերազմի մասնակիցներ» և այլ թեմաներ։

Վաղուց արդեն ավանդույթ է դարձել այնպիսի միջոցառումների անցկա-
ցումը, ինչպիսիք են հեղափոխական և մարտական փառքի երեկոները, երի-
տասարդության հանդիպումները հեղափոխության և պատերազմի վետերան-
ների. նշանավոր մարզիկների հետ, արշավների կազմակերպումը հեղափոխա-
կան և մարտական փառքի վայրերը, էքսկուրսիաները թանգարաններն ու
պատմական հուշարձանները։

Ռազմահայրենասիրական դաստիարակության չափազանց կարևոր միջոց են
ուսանողների հանդիպումները պատերազմի վետերանների հետ։ Նրանք մեր
երկրի հերոսական անցյալն են։ Հիրավի, հսկայական է վետերանների ծառա-
յությունը կուսակցության և ժողովրդի հանդեպ նաև այն առումով, որ այսօր
նրանք պատրաստում են կոմունիզմ կառուցողների և մեր հայրենիքի պաշտ-
պանների արժանի հերթափոխ։ Կուսբյուրոյի, ԼԿԵՄ կոմիտեի, հասարակական
գիտությունների ամբիոնների նախաձեռնությամբ ուսանողները հանդիպումներ
են ունեցել գեներալներ, Սովետական Միության հերոս Ա. Ամատունու, Մ.
Հարությունյանի, «Փառքի» երեք շքանշանների ասպետներ Ի. Կարախանյանի
Վ. Աբրահամյանի, գնդապետներ Ս. Հարությունյանի, Ն. Կարապետյանի և
ուրիշների հետ։ Նման հանդիպումներն ուսանող երիտասարդության վրա թող-
նում են անջնջելի տպավորություն։ Անցած պատերազմի մասին, սոցիալիս-
տական հայրենիքի ազատության համար իրենց կյանքը հերոսաբար զոհած
մարտիկների մասին նախկին զինվորների հիշողությունները ուսանողների մոտ
դաստիարակում են հայրենասիրական վեհ զգացումներ, հավատարմություն
կուսակցության, ժողովրդի, հայրենիքի հանդեպ։

Կուսբյուրոն և ԼԿԵՄ կոմիտեն մի շարք միջոցառումներ են անցկացրել՝
նվիրված Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած
հաղթանակի 40-ամյակին։ Դեռևս 1982 թ. հունիս ամսին կուսբյուրոյի նիս-
տում քննարկվեց և հաստատվեց միջոցառումների պլան այդ նշանավոր տա-
րելիցի անցկացման կապակցությամբ։ Այն հաջողությամբ իրականացվում է։
Այսպես, օրինակ, Լենինգրադը ֆաշիստական պաշարումից ազատագրելու 40-
ամյակին էր նվիրված «Հավատարիմ ենք մեր հայրերի հերոսական ավան-
դույթներին» թեմատիկ երեկոն, որը կազմակերպվեց կուսբյուրոյի, ԼԿԵՄ կո-
միտեի, ՍՄԿԿ պատմության և քաղաքատնտեսության ամբիոնի նախաձեռնու-
թյամբ, Հայաստանի ժուռնալիստների միության հետ մեկտեղ։

Հուզիչ էր ուսանողների հանդիպումը Լենինգրադի պաշտպանների հետ։
Լենինգրադի պաշարման օրերի մասին վառ հուշերով հանդես եկան նրա պատ-
վավոր քաղաքացի Ա. Գևորգյանը, պաշտպան Լ. Եղիազարյանը։ Ելույթ ունե-
ցան արձակագիրներ Ն. Սիմոնյանն ու Գր. Ջանիկյանը։ Նրանք ասացին, որ
Լենինգրադի հերոսական պաշտպանությունը Հայրենական մեծ պատերազմի
ամենավառ դրվագներից է, սովետական ժողովրդի հայրենասիրության, անձ-
նազոհության, հերոսականության պերճախոս վկայություններից մեկը։ Լենին-
գրադի պաշտպանության մեջ իրենց արժանի ներդրումն ունեն նաև հայ
ժողովրդի զավակները։ Պատասխան խոսքով հանդես եկած ուսանողները հա-
վաստիացրին Հայրենական պատերազմի վետերաններին, որ ուսանողությունը
հավատարիմ կմնա և կշարունակի հայրերի մարտական ավանդույթները։

Կարևոր դաստիարակչական նշանակություն ունեն ուսանողության հան-
դիպումները նշանավոր մարզիկների հետ։ Չափազանց հուզիչ էր աշխարհի
չեմպիոններ, ծանրամարտիկներ Յու. Վարդանյանի, Յու. Սարգսյանի, Օ. Միր-
զոյանի, դասական ըմբիշ Բ. Փաշայանի հետ տեղի ունեցած հանդիպումը։



Գաղափարական ներգործման, հայրենասիրական դաստիարակության
արդյունավետ միջոց են թեմատիկ քաղինֆորմացիաները, որոնք անցկացվում
են կուսբյուրոյի հաստատած պլանին համապատասխան։ Հանրապետությու-
նում, ինչպես և ինստիտուտում, հաստատուն կերպով արմատավորվել է միա-
նական քաղօրերի անցկացումը։ Հատկանշական է, որ այդ օրը կոլեկտիվի
առջև հանդես են գալիս ինստիտուտի ռեկտորը, պրոռեկտորները, հասարա-
կական գիտությունների ամբիոնների դասախոսները։

ԼԿԵՄ կոմիտեի նախաձեռնությամբ յուրաքանչյուր տարի անցկացվում է
«Ուսանողական գարուն» փառատոնը, որի մեկ օրն ամբողջովին նվիրվում է
ռազմահայրենասիրական միջոցառումներին։ Ծաղկեփնջեր են դրվում Ան-
հայտ զինվորի գերեզմանին, հանդիպումներ կազմակերպվում պատերազմի
վետերանների հետ, մրցումներ են անցկացվում ռազմակիրառական սպորտի
ձևերից և այլն։

Շատ կարևոր է, որ ուսանող երիտասարդությունը լավ ըմբռնի իր սահմա-
նադրական պարտքը, խորապես գիտակցի սովետական զինված ուժերի պատ-
մական վեհ կոչումը։ ՍՍՀՄ սահմանադրության մեջ առաջին անգամ մտցված
է հատուկ բաժին՝ սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին։
ՍՍՀՄ քաղաքացիների իրավունքներին, ազատություններին և պարտականու-
թյուններին նվիրված բաժնում վավերագրված են կարևորագույն նշանակու-
թյուն ունեցող դրույթներ. «Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը
ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է», «ՍՍՀՄ զինված ուժե-
րի շարքերում զինվորական ծառայությունը սովետական քաղաքացիների պատ-
վավոր պարտականությունն է»։ Հիմնական օրենքի հինգերորդ գլխում ասված
է. «Սոցիալիստական նվաճումները, սովետական ժողովրդի խաղաղ աշխա-
տանքը, պետության սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը
պաշտպանելու նպատակով ստեղծված են ՍՍՀՄ զինված ուժերը և սահմանված
է ընդհանուր զինապարտություն»։

Սովետական զինված ուժերը ժողովուրդների միջազգային անվտանգու-
թյան հզոր գործոնն են, նոր համաշխարհային պատերազմը կանխելու գոր-
ծոնը։ Բանակը, որ մարդկային հասարակության ողջ պատմության ընթացքում
եղել է և այժմ կապիտալիստական երկրներում մնում է բացառապես իբրև պա-
տերազմի գործիք, սոցիալիստական հասարակարգում դառնում է պատերազմի
կանխման, խաղաղության պահպանման կարևորագույն միջոց։

Ռազմահայրենասիրական դաստիարակությունը, լինելով կոմունիստական
դաստիարակության անբաժանելի մասը, պետք է նպաստի ուսանող երիտա-
սարդության գաղափարաքաղաքական վեհացմանը, այն բանին, որ ուսանող-
ներն իրենց հոգով ու սրտով, ուսման գերազանց առաջադիմությամբ ձգտեն
է՛լ ավելի բազմապատկել մեր հայրենիքի հզորությունը, պատրաստ լինեն
նվիրաբերելու իրենց ուժերը և, եթե պահանջվի, ապա նաև կյանքը հայրենիքի
պաշտպանության համար։

---

# ԱԿԱՆԱՎՈՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆ ՈՒ ՊԵՏԱԿԱՆ ԳՈՐԾԻՉԸ

## (Վ. Ա. ԱՎԱՆԵՍՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր



ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ հավատարիմ զավակ Վարլամ Ալեքսանդրի Ավանեսովը պատկանում է պրոֆեսիոնալ հեղափոխականների այն սերնդին, որը Վ. Ի. Լենինի գլխավորությամբ ռուսական պրոլետարիատին առաջնորդեց սոցիալիստական հեղափոխության դժվարին ուղիներով՝ հասցնելով նրան հաղթանակի։

Վ. Ավանեսովը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության անձնուրաց մարտիկը, սովետական պետության առաջին կառուցողներից մեկն էր։ Նա սովետական պետական ականավոր գործիչ էր, Վ. Ի. Լենինի արժանավոր զինակիցն ու օգնականը։

Ավանեսովը (Սուրեն Կարապետի Մարտիրոսյան) ծնվել է 1884 թվականի սեպտեմբերի 9-ին, Կարսի նահանգի Կաղզվան քաղաքում։ Մինչև 1896 թվականը սովորել է տեղի ծխական դպրոցում, այնուհետև հայրը Սուրենին փոխադրել է Ստավրոպոլ, որտեղ նա ընդունվել է արական գիմնազիա։ Սկզբում, որպես առաջադեմ աշակերտի, նրան պետական թոշակ են նշանակում, բայց շուտով, երբ պարզվում է, որ ազնվական ծագում չունի, զրկում են թոշակից։ Սուրենը հարկադրված է լինում ուսումը շարունակելու համար աշխատանք փնտրել։ Նա դառնում է տնային ուսուցիչ, կատարում է թարգմանություններ, սկզբում՝ ռուսերենից հայերեն, հետագայում՝ նաև հայերենից ռուսերեն։

Ավանեսովը վաղ հասակից համակվել է հայ ժողովրդի ազատագրման տենչով և, ինչպես իր ժամանակակիցներից շատերը, ապրել է գաղափարական մեծ էվոլյուցիա։ Սահմանազատվելով հայ բուրժուազգայնական հոսանքներից և ընդունվելով Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության շարքերը, նա նետվում է հեղափոխության հորձանուտը, խորապես գիտակցելով, որ հայ ժողովրդի ազատագրումը հնարավոր է միայն ռուսական պրոլետարիատի հաղթական հեղափոխության շնորհիվ։

1905—1907 թվականներին Ավանեսովը հեղափոխական ակտիվ պրոպագանդիստական աշխատանք է կատարում Ստավրոպոլի, Կրասնոդարի, Նովոռոսիյսկի զորամասերում։ Ցարական խուզարկուները նրան հետապնդում և մի քանի անգամ ձերբակալում են։ Կոնկրետ ապացույցներ չունենալով, նրան ազատ են արձակում, բայց վերցնում են խիստ հսկողության տակ։ Սուրենը հարկադրված է լինում թողնել ուսումը և հեռանալ Ռուսաստանից։ 1907 թվականին ցարական ոստիկանությանը հայտնի Սուրեն Կարապետի Մարտիրոսյանը պարսկահպատակ Արմենակ Ալեքսանդրի Ավանեսյանցի անձնագրով մեկնում է Շվեյցարիա, որտեղ մնում է մինչև 1913 թվականը։

Շվեյցարիայում եղած տարիներին ավարտում է Ցյուրիխի համալսարանի բժշկական ֆակուլտետը, սովորում նաև Գերմանիայում։ Արտասահմանում եղած ժամանակ լիովին տիրապետում է գերմաներենին։ Երկար ժամանակ Ավանեսովը ղեկավարում է Շվեյցարիայի Դավոս քաղաքի էմիգրանտ սոցիալ-դեմոկրատների միացյալ խմբի աշխատանքները, պատկանելով այդ խմբի ձախ թևին։

1913 թվականի վերջին Ավանեսովը վերադառնում է Ռուսաստան։ Նա լիովին ընդունում է բոլշևիկների ստրատեգիան ու տակտիկան պատերազմի և հեղափոխության հարցերում, ակտիվորեն մասնակցում կուսակցության ընդհատակյա աշխատանքին։ Իր հեղափոխական աշխատանքը Ավանեսովը կենտրոնացնում է Մոսկվայում։ Մինչև 1917 թվականի փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխությունը զանազան անունների տակ բոլշևիկների Մոսկվայի կոմիտեի հանձնարարությամբ Ավանեսովը աշխատում է առևտրաարդյունաբերական ծառայողների արհմիությունում և Ցենտրոսոյուզի բանվորների ու ծառայողների շրջանում։

1917 թվականի փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխությունից հետո Ավանեսովը Մոսկվայի բոլշևիկների առաջադրմամբ ընտրվում է բանվորների ու զինվորների Մոսկվայի սովետի և նրա նախագահության անդամ։ Մոսկվայի սովետում 1917 թվականի ընթացքում ժամանակավոր կառավարության քաղաքականության, սովետի էսէռամենշևիկյան մեծամասնության դեմ մղված կատաղի պայքարում Ավանեսովն աչքի է ընկնում որպես անհողդողդ բոլշևիկ, աննկուն լենինյան։ Նա բազմիցս իր կրքոտ հարցադրումներով, ելույթներով ու առաջարկություններով լռեցրել, բանվորների սուլոցների տակ ամբիոնից իջեցնել է տվել էսէռ և մենշևիկ մինիստրներին, Սովետի այդ կուսակցություններին պատկանող հռետորներին և կոնկրետ փաստերով, օրինակներով մերկացրել այդ կուսակցությունների հակահեղափոխական բնույթն ու գործողությունները։

1917 թվականի օգոստոսին Վ. Ավանեսովի ղեկավարությամբ մշակված ընտրական նոր կանոնադրությամբ անցկացվում է Մոսկվայի սովետի դեպուտատների ընտրությունը, որում բոլշևիկները հաղթանակ են տանում և կազմում Սովետի մեծամասնությունը։

Հոկտեմբերյան օրերին Ավանեսովը Մոսկվայի սովետից ընտրվում է Սովետների համառուսաստանյան II համագումարի պատգամավոր։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի օրը՝ 1917 թվականի հոկտեմբերի 25-ին (նոյեմբերի 7-ին) Սմոլնիում, Հոկտեմբերյան հեղափոխության շտաբում, բացվեց Սովետների համառուսաստանյան II համագումարը, որի նախագահության կազմը բոլշևիկյան ֆրակցիայի անունից հրապարակեց Ավանեսովը։

Սովետների համագումարը Ավանեսովին ընտրում է իր քարտուղարը։ Այն հաստատեց սովետական առաջին կառավարությունը՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։ Ընտրվեց նաև սովետական պետության բարձրագույն օրգանը՝ Համառուսական կենտրոնական գործադիր կոմիտեն, որի նախագահության անդամ և քարտուղար ընտրվեց Վ. Ավանեսովը։ Նա բազմակողմանի գործունեություն ծավալեց սովետական պետական ապարատի ստեղծման, Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումների ամրապնդման, սովետական իշխանության բոլոր հակառակորդների դեմ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ մղված պայքարի այդ կարևոր շրջանում։

Պետրոգրադի ռազմահեղափոխական կոմիտեն 1917 թվականի հոկտեմ-

բերի 26-ին (նոյեմբերի 8-ին) հատուկ հրամանով փակեց «Ռեչ», «Դեն» ինչպես նաև հակահեղափոխական մի շարք այլ թերթեր։ Հաջորդ օրը (նոյեմբերի 9-ին) Վ. Ի. Լենինը ստորագրեց «Մամուլի մասին» ԺԿՍ-ի դեկրետը, որի հրապարակումից հետո ձախ էսէռների և մյուս ֆրակցիաները պահանջեցին անմիջապես հրավիրել ԿԳԿ-ի նիստ և քննել դեկրետը վերացնելու հարցը։ ԿԳԿ-ի 1917 թվականի նոյեմբերի 4-ին (17-ին) նիստն ամբողջությամբ նվիրված էր այդ հարցի քննարկմանը։ Դեկրետի վերացման պահանջով ելույթ են ունենում զանազան ֆրակցիաների ներկայացուցիչներ, որոնք ամենազրպարտչական ու կեղտոտ արտահայտություններով են բնութագրում դեկրետը, պահանջում անմիջապես վերացնել այն և թույլ տալ «մամուլի ազատություն»։ ԿԳԿ-ի բոլշևիկյան ֆրակցիայի անունից և հանձնարարությամբ մամուլի ազատության մասին բանաձևով հանդես է գալիս Վ. Ավանեսովը։ Պատասխանելով այդ հերյուրանքներին, նա ասում է. «Այն ուժը, որը բուրժուական մամուլին հարկադրել է լռել, չափազանց միամիտ կգտնվեր բոլոր բանվորների, զինվորների և գյուղացիների իդեալների համար մղվող պայքարում, եթե իր ձեռքից բաց թողներ այնպիսի մի հզոր զենք, ինչպիսին մամուլն է։ Այդ բոլոր միջոցառումները միայն պետք է ապահովեն նոր կարգի ստեղծման պայմանները, որի ժամանակ սոցիալիստական մամուլը կկարողանա տապալել կապիտալի կեղեքումը և ստեղծել նոր իրադրություն, որը խոսքի ազատություն կապահովի բոլոր քաղաքացիների համար...»։

«Անհրաժեշտ է,— ասում է Ավանեսովը,— առաջին հերթին մամուլն ազատագրել կապիտալի կեղեքումից այնպես, ինչպես կալվածատերերից հողն է ազատագրվել, նոր օրենքներ և սոցիալիստական նորմեր ու կանոններ հաստատել մամուլի համար, որը պետք է ծառայի ոչ թե կապիտալին, այլ ողջ աշխատավոր ժողովրդին»։

Ավանեսովն այս համառոտ նախաբանից հետո ԿԳԿ-ի քննարկմանն է ներկայացնում Լենինի թեզիսների հիման վրա կազմված բոլշևիկյան ֆրակցիայի բանաձևը, որը դատապարտում է համաձայնողական կուսակցությունների ֆրակցիաների հակահեղափոխական վարքագիծը, հիմնավորում մամուլի վերաբերյալ լենինյան սկզբունքները։

Համաձայնողական կուսակցությունների դեպուտատները բանաձևի նախագիծն ընդունում են սվիններով։ Սկսվում են կատաղի վիճաբանություններ, դրանք ավելի հեռուն են գնում։ Առանց ԿԳԿ-ի սանկցիայի, Ժողկոմխորհի մի շարք դեկրետների հրապարակման առթիվ ձախ էսէռների ֆրակցիան հարցապնդում է ներկայացնում նրա նախագահ Վ. Ի. Լենինին։

Ժողկոմխորհի գործունեության նկատմամբ վերահսկողության պատրվակով նրանք ձգտում էին կասեցնել նրա հեղափոխական արտակարգ որոշումները և դեկրետները։ Ստեղծվում է լարված դրություն։ Այս ծանր պահին մի խումբ ժողկոմների անունից հայտարարությամբ հանդես է գալիս Նոգինը։ Բուրժուազիայի հարձակումներից և համաձայնողական կուսակցությունների ուլտիմատումներից ահաբեկված օպորտունիստները լքում են ժողկոմի իրենց պոստերը, դուրս գալիս Ժողկոմխորհից։ Կամենևը, որ ԿԳԿ-ի նախագահն էր, ինչպես նաև Զինովևը, Ռիկովը և մյուսները դուրս են գալիս Կենտկոմի կազմից։ Հեղափոխության համար ստեղծված այս բարդ իրադրության մեջ հնչում է Ժողկոմխորհի քաղաքականության հեղափոխական բնույթի նկատմամբ հավատով լի Վ. Ի. Լենինի անհողդողդ ձայնը։ Լենինը հարկադրված էր պատասխանել ոչ միայն ձախ էսէռների և մյուս ֆրակցիաների պրովոկացիոն հարցերին, հերքել և ծաղրել նրանց ուլտիմատումները, որոնք ծառայում էին հակահեղափոխությանը, այլև նշավակել հեղափոխության դասալիքների ստոր վարքագիծը։ Լենինը ԿԳԿ-ի այդ նիստերում ելույթ է ունենում չորս անգամ։ Նա խոսում է մամուլի ազատության, ձախ էսէռների հարցապնդման և Նոգինի հայտարարության մասին և մերկացնում հեղափոխության դասալիքներին, որոնք, Ժողկոմխորհի հեղափոխական վճռական քաղաքականության դեմ հակահեղափոխության հարձակումից սարսափած, առաջարկում էին կազմել կոալիցիոն կառավարություն։



ԿԳԿ-ի բոլշևիկ դեպուտատները, համախմբվելով Վ. Ի. Լենինի շուրջը, քվեարկում են բոլշևիկների ֆրակցիայի անունից Վ. Ավանեսովի մտցրած բանաձևի օգտին, մերժելով ձախ էսէռների բանաձևը։

1917 թվականի նոյեմբերի 8-ին ԿԳԿ-ի նախագահ է ընտրվում կոմունիստական կուսակցության և սովետական պետության կառուցողներից մեկը՝ Լենինի զինակից Յակով Միխայլովիչ Սվերդլովը։ Սվերդլովի հետ Ավանեսովը փոխադարձ խորին հարգանքի ու անսահման վստահության մթնոլորտում իր բոլոր ուժերը ներդրեց սովետական պետության կառուցման և ամրապնդման գործում։ Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ նա վարում էր մեծ քաղաքականություն, զբաղված ռազմատնտեսական գործնական հարցերով։

Ավանեսովը 1918 թվականի սովետական առաջին սահմանադրության ստեղծման հանձնաժողովի անդամ էր և այդ հանձնաժողովի քարտուղարը։ Նա իր գործնական առաջարկներով օգնում էր հանձնաժողովի ողջ աշխատանքին, կրքոտ կերպով պաշտպանում էր սովետական հանրապետության կառուցման ֆեդերատիվ սկզբունքը և հանձնաժողովի նիստերում բազմիցս հանդես է եկել ի պաշտպանություն լենինյան այդ սկզբունքի։ Ավանեսովը մասնակցել է սովետական պետության գերագույն մարմինների կառուցվածքին ու ֆունկցիաներին վերաբերող շատ ու շատ դեկրետների, օրենքների, հրահանգների նախապատրաստման աշխատանքներին։ Նա կազմել է նաև կանանց միջազգային տոնի՝ Մարտի 8-ի տոնակատարության վերաբերյալ օրենքի նախագիծը։

Վ. Ավանեսովը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի առաջին շրջանում կատարում է կուսակցության մի շարք պատասխանատու հանձնարարություններ։ Որպես Կենտգործկոմի նախագահության անդամ՝ նա մտնում է Պետրոգրադի ռազմահեղափոխական կոմիտեի մեջ և եռանդուն աշխատանք է ծավալում հակահեղափոխական խռովությունների, բուրժուական չինովնիկների սաբոտաժի և բուրժուական մամուլի դեմ, անսասան հետևողականությամբ իրականացնում կուսակցության ցուցումները։

1917 թվականի դեկտեմբերի 7-ին Ժողկոմխորհը որոշում է ընդունում հակահեղափոխության, սաբոտաժի և սպեկուլյացիայի դեմ պայքարելու համար Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողով (Չեկա) ստեղծելու մասին, և Վ. Ավանեսովը նշանակվում է Չեկայի կոլեգիայի անդամ։ Ցերեկը նա աշխատում էր Կենտգործկոմի քարտուղարությունում և ռազմահեղափոխական կոմիտեում, իսկ երեկոները, հաճախ էլ գիշերները, Ձերժինսկու հետ՝ Չեկայում։ Ավանեսովը ժողովրդական կոմիսարների սովետի անդամ էր, որի նիստերում Լենինի հանձնարարությամբ սիստեմատիկաբար զեկուցումներով հանդես էր գալիս տնտեսական և սովետական շինարարության բազմաթիվ հարցերի մասին։

1917 թվականի դեկտեմբերին Ժողկոմխորհի որոշմամբ Վ. Ավանեսովը նշանակվում է ՌՍՖՍՀ ազգությունների գործերի ժողովրդական կոմիսարիատին կից Հայկական գործերի կոմիսար, Ազգժողկոմատի կոլեգիայի, նույն ժողկոմատի օրգան «Ժիզն նացիոնալնոստեյ» թերթի խմբագրական կոլեգիայի անդամ։

Հայ ժողովրդի համար այդ ծանր ժամանակաշրջանում Հայկական գործերի կոմիսարիատը մեծ աշխատանք կատարեց։ Այն հիրավի լայն գործունեություն ծավալեց հայ ժողովրդին ֆիզիկական բնաջնջումից փրկելու, Հայաստանը իմպերիալիզմի լծից ազատագրելու, դաշնակցականների անփառունակ տիրապետությունը տապալելու և Հայաստանում սովետական իշխանություն հաստատելու նպատակով։

Հայկական գործերի կոմիսարիատը, Վ. Ավանեսովի և Վահան Տերյանի ղեկավարությամբ, սովետական կառավարության և անձամբ Վ. Ի. Լենինի հոգատարության շնորհիվ, մեծ օգնություն ցույց տվեց թուրքական ջարդարարների ճիրաններից փրկված և Սովետական Ռուսաստանում ապաստան գտած հարյուր հազարավոր գաղթական հայերին։ Հայ գաղթականների համար բացվեցին տասնյակ հիվանդանոցներ, դպրոցներ, որբանոցներ, ակումբներ, գրա-

դարաններ, նրանց ցույց տվեց դրամական և նյութական մեծ օգնություն։

Սովետական կառավարությունը 1918 թվականի հունվարին Անդրկովկասի հայ գաղթականությանն օգնելու նպատակով տրամադրել էր ավելի քան 6 միլիոն ռուբլի։ Սակայն այդ գումարը տեղ չի հասնում. ճանապարհին այն հափշտակում են ցարական գեներալներ Կալեդինը և Կոռնիլովը։

Վ. Ավանեսովը, ստանալով Լենինի համաձայնությունը հայ գաղթականության համար նոր գումար բաց թողնելու մասին, հարցը ներկայացնում է Ժողկոմխորհին, որը Լենինի նախագահությամբ ընդունում է հետևյալ որոշումը.

«Ժողովրդական կոմիսարների խորհուրդն իր 1918 թվականի հունիսի 26-ի նիստում, լսելով ընկ. Ավանեսովի հայտարարությունը հայ գաղթականներին անհապաղ օգնություն ցույց տալու անհրաժեշտության մասին, որոշեց.

Նկատի ունենալով, որ հայ գաղթականների օգտին 1918 թվականի հունվարի 15-ին բաց թողնված 3 միլիոն 490 հազար ռուբլի գումարով դրամը և ներքին գործերի կոմիսարիատի (գաղթականական գործերի բաժնի) բաց թողած 2 միլիոն 704 հազար 784 ռուբլի գումարը ճանապարհին զավթվել է Կալեդինի և Կոռնիլովի բանդաների կողմից, Ժողկոմխորհը որոշեց վերոհիշյալ գումարները, ընդամենը 6 միլիոն 194 հազար 784 ռուբլի, կրկին բաց թողնել Հայկական գործերի հանձնաժողովին՝ հայ գաղթականներին անհապաղ օգնություն ցույց տալու համար։

Հիշյալ գումարն անհապաղ փոխադրել Համառուսաստանյան Կենտգործկոմի դրամարկղը՝ Հայկական գործերի կոմիսարիատի համար»։

1918—1920 թվականներին Հայկական գործերի կոմիսարիատը սովետական կառավարությունից քանիցս ստանում է նման խոշոր գումարներ, ինչպես նաև մեծ քանակությամբ կտորեղեն, հագուստ, ոտնաման ու այդ ամենը բաժանում հայ գաղթականներին։ 1919 թվականի օգոստոսին հայ գաղթականությանը հղած դիմումի մեջ Ավանեսովը միանգամայն իրավացիորեն գրում է. «Միմիայն սոցիալիստական Ռուսաստանն է, որ եղբայրաբար բաժանում է հայ ժողովրդի տառապանքներն ու ցավերը և օգնության հասնում հայ գաղթականությանը»։

Կարելի է առանց չափազանցության ասել, որ 1917—1921 թվականներին Վ. Ավանեսովի գլխավորությամբ Հայկական գործերի կոմիսարիատի ծավալած գործունեությունն ընդգրկում էր հայկական իրականության գրեթե բոլոր կողմերը. Կենսագործելով կուսակցության քաղաքականությունը, Վ. Ավանեսովն այդ ժամանակաշրջանում հետևողական պայքար մղեց դաշնակցության դեմ, մերկացնելով նրա բուրժուաազգայնական էությունը և Հայաստանում դաշնակցականների տիրապետության հակաժողովրդական քաղաքականությունը։ Նա գործուն մասնակցություն ունեցավ Հայաստանում սովետական իշխանության հաստատման և ամրապնդման գործում և մինչև իր կյանքի վերջն աջակցում էր Սովետական Հայաստանի բարգավաճմանը։

Վ. Ավանեսովը 1918 թվականի նոյեմբերի 30-ին ստեղծված և Լենինի գլխավորությամբ գործող բանվորագյուղացիական պաշտպանության խորհրդի անդամ էր, որտեղ անշեղորեն կատարում էր մեծ առաջնորդի հանձնարարությունները։ Ավանեսովը խորհրդի գրեթե բոլոր նիստերում զեկուցումներով հանդես էր գալիս զանազան հարցերով, որոնք երկրի պաշտպանության համար ունեին վճռական նշանակություն։

1919 թվականի աշնանը, երբ Դենիկինը սպառնում էր Մոսկվային, ստեղծվում է Մոսկվայի շրջանի պաշտպանության եռյակ։ Վ. Ավանեսովը այդ եռյակի անդամ էր։ Իր անսպառ եռանդի և կազմակերպչական տաղանդի ողջ ուժով նա ապահովում էր Բանվորագյուղացիական պաշտպանության խորհրդի և նրա նախագահ Վ. Ի. Լենինի բոլոր ցուցումների իրագործումը՝ ռազմաճակատը զենքով, հանդերձանքով և պարենով ապահովելու համար։ Ինքը հաճախ մեկնում էր ռազմաճակատ և անձամբ ստուգում մատակարարման վիճակը։ Դենիկինի ջախջախումից հետո Բանվորագյուղացիական պաշտպանության



խորհրդի փոխարեն ստեղծվում է Աշխատանքի և պաշտպանության խորհուրդ (ԱՊԽ), որի նախագահը Վ. Ի. Լենինն էր, իսկ Ավանեսովը, լինելով այդ խորհրդի անդամ, ԱՊԽ-ի նախապատրաստական նիստերի գծով Լենինի տեղակալն էր։

Անտանտի նոր արշավանքի կապակցությամբ 1920 թվականի մայիսի 28-ին Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեն Աշխատանքի և պաշտպանության խորհրդին կից ստեղծում է ռազմական դրությունը հանրապետությունում իրագործող կոլեգիա, որի նախագահն Ավանեսովն էր։

Ռազմական գործերում Ավանեսովի խաղացած դերի մասին Կ. Ե. Վորոշիլովը գրել է. «Կոմունիստական կուսակցության և բանվոր դասակարգի նվիրված այդ մարտիկի հեղափոխական գործունեությունը շատ հաճախ կապված է եղել կարմիր բանակի մարտական աշխատանքի, պրոլետարական պետության պաշտպանության կազմակերպման հետ։

1919 թվականին, զբաղեցնելով ընկ. Լենինի գլխավորած Բանվորագյուղացիական պաշտպանության խորհրդի անդամի պատվավոր պոստը, լինելով Մոսկվայի շրջանի պաշտպանության եռյակի անդամ... ընկ. Ավանեսովն իր ողջ ուժերն ու առողջությունը նվիրաբերում էր պրոլետարական հեղափոխության ծառայելուն»։

Լենինը պետական աշխատանքի մեջ էր ներգրավում ամենակազմակերպված ու գործունյա, ամենակարգապահ ու բանիմաց հեղափոխականներին։ Նա մարդկանց այդ հատկությունները զարգացնում ու ձևավորում էր իր աշխատանքի ոճով, վարվելակերպի ու վարքագծի սեփական օրինակով։ Լենինը և Սվերդլովը, մատնանշում է Աբել Ենուկիձեն, Ավանեսովին շատ բարձր էին գնահատում որպես կարգապահության, կազմակերպվածության, գործիմացության տիպար, այդ պատճառով էլ կարևոր շատ հանձնաժողովների ղեկավարումը նրան էին հանձնարարում։ Իլյիչը անվերապահորեն հավատում էր Ավանեսովի խոսքին։ Փաստաթղթերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Իլյիչը, իրոք, պետական, տնտեսական, ռազմական շինարարության հարցերի մշակման և լուծման ժամանակ, Ձերժինսկու, Ցյուրուպայի, Կրասինի, Կուրսկու և լենինյան տիպի մյուս գործիչների հետ, Ավանեսովին մշտապես պահում էր աշխատանքի քուրայում, պայքարի առաջին գծում։

Աշխատանքի և պաշտպանության խորհրդում դրսևորվում է Ավանեսովի՝ որպես լենինյան տիպի պետական գործչի, ողջ կերպարը։ ԱՊԽ-ի նախապատրաստական գրեթե բոլոր նիստերի նախագահը 1920—23 թվականներին Ավանեսովն էր։ ԱՊԽ-ի նիստերում գրեթե ամեն անգամ երկրի պետական, տնտեսական, ռազմաքաղաքական դրության մասին զեկուցումներով նա էր հանդես գալիս։

Վ. Ի. Լենինը այդ տարիներին սովետական պետական ապարատի բարելավման և կատարելագործման վերաբերյալ իր մտահղացումների իրագործմանը մասնակից էր անում Ավանեսովին, պետական և տնտեսական քաղաքականության հարցերի մշակման և որոշման ժամանակ ակտիվ աշխատանքի դնում նրան։ Տասնյակ նամակներ և երկտողեր են պահպանվել՝ գրված Լենինի կողմից, որոնք վկայում են, թե Լենինը որքան էր վստահում Ավանեսովին։

1919 թվականին Վ. Ավանեսովը Լենինի առաջարկով նշանակվում է Պետական վերահսկողության ժողովրդական կոմիսարի առաջին տեղակալ։ Այդ կոմիսարիատը շուտով վերակառուցվեց և դարձավ Բանվորագյուղացիական տեսչության ժողովրդական կոմիսարիատ (ԲԳՏ)։ Այստեղ նա աշխատեց մինչև 1924 թվականը։ Ավանեսովը, որպես պետական լենինյան տիպի ականավոր գործիչ, իր կարողությունները և կազմակերպչական մեծ տաղանդը դրսևորեց այստեղ՝ հանդիսանալով կոմիսարիատի փաստական ղեկավարը։ ԲԳՏ-ն պետական ապարատի նոր, պետությունների պատմության մեջ իր նախատիպը չունեցող օրգան էր, որի խնդիրն էր ստուգել և բարելավել սովետական ամբողջ պետական և տնտեսական ապարատը, էժանացնել, կատարելագործել, դեմոկրատացնել այն, մոտեցնել մասսաներին։ Հանրահայտ է, թե որքան մեծ ջանքեր և ժամանակ է հատկացրել այդ հարցին սովետական պետության

ղեկավար Լենինը, թե որքան է նա աշխատել բուն ԲԳՏ-ի կառուցվածքի և աշխատանքի բարելավման վրա։

ԲԳՏ-ի կոլեգիայի՝ Ավանեսովի կողմից մշակված արձանագրությունների, հրամանների, հրահանգների, գրագրությունների ուսումնասիրությունը ցույց է տալիս, թե որքան ճիշտ է ըմբռնել Ավանեսովը սովետական պետական ապարատի կատարելագործման լենինյան գաղափարը, թե որքան համառ ջանքեր է թափել նա դրանք իրագործելու համար։

Հետագա տարիներին Ավանեսովը վարել է պետական պատասխանատու մի շարք պաշտոններ։ 1924—1925 թվականներին նա աշխատում է որպես ՍՍՀՄ արտաքին առևտրի ժողկոմի տեղակալ, իսկ 1925 թվականից ընտրվում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության գերագույն խորհրդի նախագահության անդամ, որտեղ և աշխատում է մինչև իր մահը։

Բնութագրելով Ավանեսովի աշխատասիրությունը, հանուն աշխատանքի հանգիստն ու առողջությունը զոհաբերելու նրա բնավորությունը՝ Դեմյան Բեդնին գրել է. «Գիշեր է. Կոմունան քնել է; Կարճ քուն է մտել մշտապես անխոնջ Սվերդլովը։ Չի քնել միայն Ավանեսովը...»։ «Նա ապրում էր աշխատանքի համար,— նշել է Ենուկիձեն,— և ցանկանում էր ապրել միայն դրա համար։ Նա մահից չէր վախենում»։

Կոմունիստական կուսակցության Կենտկոմը, սովետական կառավարությունը, անձամբ Վ. Ի. Լենինն Ավանեսովին բուժելու համար ձեռնարկում էին բոլոր միջոցները, բայց նա, ինչպես վկայում է Ենուկիձեն, սաբոտաժի էր ենթարկում այդ ամենը, և աշխատանքից չկտրվելու համար հրաժարվում երկար ժամանակով բուժման գնալուց։

1921 թվականի դեկտեմբերին Վ. Ի. Լենինը ՌՍՖՍՀ առողջապահության ժողկոմ Սեմաշկոյին գրել է հետևյալ երկտողը.

«Ինձ հայտնում են, որ Ավանեսովը, լինելով բոլորովին վատ վիճակում, բռնադատում է իրեն։ Չէ որ թոքերից մեկը չկա և այլն։ Խնդրում եմ Ձեզ նշանակել միանգամայն վստահելի պրոֆեսորների և հանձնարարել նրանց, որ տան գրավոր կարծիք (թե՛ ախտորոշումը, թե՛ բուժումը)»։

1922 թվականի սկզբին կրկին սուր բնույթ է ստանում Ավանեսովի հիվանդությունը։ Որոշվում է նրան անհապաղ բուժման ուղարկել արտասահման։ Այդ առթիվ Լենինը հեռագրում է Ռիգայի սովետական դեսպանին։

«Բոլոր ջանքերը թափեցեք, որպեսզի անհապաղ վիզա ստանաք Ավանեսովի՝ ԲԳՏ ժողկոմի տեղակալի համար։ Ժամանած գերմանացի բժիշկները գտել են, որ նա ծանր հիվանդ է։ Գարունը նրա համար առանձնապես վտանգավոր է։ Նրան պետք է անհապաղ մեկնել։ Գործադրեք բոլոր ուժերը։ Բոլոր երաշխիքները տալիս ենք։

Անհապաղ պատասխանեցեք։ Լենին» (Ленинский сборник, XXXV, стр. 335)։

1922 թվականի ապրիլին Լենինի համառ պահանջով հաջողվում է Ավանեսովին պոկել աշխատանքից և բուժման ուղարկել արտասահման։

Վերադառնալով բուժումից, նա կրկին մխրճվում է աշխատանքում։ Սակայն անողոք հիվանդությունը հետապնդում է նրան։ 1930 թվականի փետրվարի 8-ին նա վերջին անգամ ելույթ է ունենում Սովետների համագումարում։ Մարտի 16-ին դադարում է բաբախելուց հավատարիմ լենինյան Ավանեսովի սիրտը։

«Խիստ և անհողդողդ, երբ գործը վերաբերում էր հեղափոխության պաշտպանությանը, անողոք՝ հակահեղափոխության դեմ մղվող պայքարում, բացառիկ զգայուն և խոհուն, երբ խոսքը վերաբերում էր մարդուն, սրտակից բարեկամ և ընկեր, այսպիսին էր Ավանեսովը»,— կարդում ենք մահախոսականում։

Ավանեսովի պայծառ կյանքը, նրա հմայիչ կերպարը հատկանշական են լենինյան տիպի պետական ու կուսակցական գործչին։ Նա, ինչպես բոլշևիկյան կուսակցության լենինյան գվարդիայի մյուս ներկայացուցիչները, անձնուրաց ծառայեց պրոլետարական հեղափոխությանը։ Վ. Ավանեսովի հեղափոխական փոթորկալի կյանքը կենդանի օրինակ է այն բանի, թե ինչպես պետք է ապրել և մաքառել հանուն լենինիզմի հաղթանակի, հանուն կոմունիզմի կառուցման։

---



# ԱՄՆ-Ը ԵՐԿԸՆՏՐԱՆՔԻ ԱՌՋԵՎ

**Հ. ՀԱԿՈԲՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ կոմկուսի գլխավոր քարտուղար Գես Հոլի կարծիքով, «ընտրություններ 84-ը», հավանաբար, ամենակարևոր ընտրություններն են Միացյալ Նահանգների պատմության մեջ։ ԱՄՆ-ը կանգնած է երկընտրանքի առջև, քանի որ կառավարող հանրապետական կուսակցության ամենապահպանողական թևը Ռոնալդ Ռեյգանի գլխավորությամբ Միացյալ Նահանգները հասցրել է վտանգավոր սահմանագծին, վտանգի տակ դնելով ողջ մարդկության, այդ թվում նաև սեփական ժողովրդի գոյությունը։

Այս տեսակետից հանրապետական կուսակցությանն սպառնում է դժվարին պայքար՝ կառավարման ղեկն իր ձեռքում պահելու համար։ Ե՛լ ավելի լուրջ փորձություն է սպասում դեմոկրատներին, որոնք պետք է պայքարեն այդ ղեկը ձեռք բերելու՝ Սպիտակ տունը և սենատը նվաճելու համար։

## 1. ԴԵՄՈԿՐԱՏՆԵՐԸ ԳԼԽԱՎՈՐ ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆԻՑ ԱՌԱՋ

Պրեզիդենտի և փոխպրեզիդենտի ընտրություններն ընդունված է համարել ամենաերկարատև, հոգնեցուցիչ, բայց և առավել կարևոր քաղաքական կամպանիան Միացյալ Նահանգներում։ Եվ, այնուամենայնիվ, ընթացիկ տարվա ընտրություններին տրվում է առանձնահատուկ նշանակություն, քանի որ գլխավոր խնդիրը, սենատոր Էդվարդ Քենեդիի բնորոշմամբ, «միջուկային դարի ամենավտանգավոր պրեզիդենտին» պարտության մատնելն է։ Իսկ Ռեյգանին և ռեյգանիզմը պարտության մատնելու համար անհրաժեշտ են արտակարգ մեծ ջանքեր և բոլոր հակառեյգանական ուժերի միասնություն։ Ընդդիմադիր դեմոկրատական կուսակցության գլխավոր խնդիրը նախընտրական պայքարի ընթացիկ փուլում հակառեյգանական տարբեր ուժերին իր ընտրական ծրագրի շուրջը համախմբելն է։ Իսկ այդ ծրագիրն ընդունվեց հուլիսի 16-ից 20-ը Սան Ֆրանցիսկոյում տեղի ունեցած դեմոկրատների ազգային համագումարում։ Դեմոկրատները կարողացան հմտորեն որսալ ամերիկյան հասարակությանը ներկայումս հուզող գլխավոր պրոբլեմները, որոնց մասին կարելի էր կռահել ոչ միայն ընդհանուր իրավիճակից, այլև հասարակական կարծիքն ուսումնասիրող հաստատությունների ամենավերջին հարցումների արդյունքներից։ Այսպես, Գելեպի ինստիտուտի հարցումներից պարզվեց, որ ամերիկացիների գլխավոր մտահոգությունը միջազգային լարվածությունն է ու միջուկային պատերազմի սպառնալիքը։ Երկրորդ տեղում է գործազրկության խնդիրը։ Երրորդ տեղում է կյանքի արժողության խնդիրը և, ի վերջո, նրանց հուզում է բյուջեի ռեկորդային դեֆիցիտը, որի համար վաղ թե ուշ, եթե ոչ ամբողջովին, ապա հիմնականում, պետք է վճարեն ամերիկյան քաղաքացիները։ Գրեթե նույն արդյունքներն է տվել Լուիս Հարիսի հաստատության կատարած հարցումը։ Խաղաղության խնդիրը դարձյալ առաջին տեղումն է և հարցման ենթարկվածների 66 տոկոսը քննադատաբար է մոտեցել պատերազմի և խաղաղության հարցում Ռեյգանի վարած գծին։

Դեմոկրատական կուսակցության ղեկավարները, ինչպես համագումարում արտասանած ճառերում, այնպես է ընդունած ընտրական ծրագրում, ինչպես ասում են, մատը դրեցին հենց այդ ցավոտ տեղերի վրա։ Եվ թեև համագումարը մերժեց երեք թեկնածուներից երկուսի՝ սևամորթ կրոնական գործիչ, քաղաքացիական իրավունք-

ների առաջամարտիկ, հանգուցյալ Մարտին Լյութեր Քինգի համախոհ ու զինակից, առավել արմատական Ջեսի Ջեկսոնի և Կոլորադո նահանգից սենատոր Գերի Հարթի ուղղումները, այնուամենայնիվ, վերը նշված հարցերն իրենց արտահայտությունը գտա՞ն դեմոկրատների ծրագրում: Դեմոկրատական կուսակցությունը Ռեյգանի վարչակազմին մեղադրում է միջազգային իրադրությունը սրելու և միջուկային աղետի վտանգը ուժեղացնելու համար, այն բանի համար, որ նա ոչ մի համաձայնություն չի կնքել Սովետական Միության հետ սպառազինությունների սահմանափակման շուրջը, որ նա մտադիր է պատերազմ սանձազերծել Կենտրոնական Ամերիկայում: Հարևանցիորեն նկատենք, որ 70-ական թվականներին ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը կնքել են 17 պայմանագիր: Դրանցից 10-ը այսօր չի գործում: Դրանց զգալի մասը վերաբերում է տնտեսական համագործակցության բնագավառին, որտեղ Վաշինգտոնի վարչակազմի քաղաքականությունը Սովետական Միության նկատմամբ, ինչպես ասում է ԱՄՆ-ի և Կանադայի ինստիտուտի տնօրեն, ակադեմիկոս Գեորգի Արբատովը, շատ մոտ է տնտեսական պատերազմին: Ռեյգանի վարչակազմը մնում է հավատարիմ 1980 թվականի իր ընտրական պլատֆորմի դրույթներին, որոնք ազդարարում էին՝ ոչ մի բանակցություն Սովետական Միության հետ, և ԱՄՆ-ը պետք է ձգտի ռազմական գերազանցության: ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի դիվանագիտական հարաբերությունների ողջ պատմության ընթացքում ներկայումս, իրոք, մենք գործ ունենք ամենաթշնամաբար տրամադրված, առավել հակասովետական, ամենառազմամոլ կառավարության հետ:

Դեմոկրատական կուսակցության նախընտրական ծրագիրը, դատապարտելով ներկայիս վարչակազմի խելացնոր ագրեսիվ կուրսը, միջազգային կլիման առողջացնելու կոչ է անում և ընտրողներին խոստանում իշխանությունն ստանձնելու դեպքում առաջարկել անցկացնել սովետա-ամերիկյան բարձր մակարդակի կանոնավոր հանդիպումներ, հասնել «միջուկային սպառազինությունների լիակատար փոխադարձ և ստուգման ենթակա սառեցման», մտցնել միջուկային զենքի ստորգետնյա փորձարկումների և հակաարբանյակային զենքի փորձարկումների մորատորիում, բանակցություններ սկսել տիեզերքի ռազմականացումը կանխարգելելու խնդրի շուրջը, սենատին առաջարկել վավերացնել ՍՍՍ—2 պայմանագիրը, դադարեցնել «MX» հրթիռների և «Բ—1» ռմբակոծիչների արտադրությունը:

Դեմոկրատական կուսակցության ղեկավարությունը կարողացավ հասնել այն բանին, որ նախընտրական պլատֆորմի մեջ չմտցվեցին Ջեսի Ջեկսոնի առաջարկությունը՝ իշխանության գլուխ անցնելու դեպքում առաջինը միջուկային զենք չգործադրելու պարտավորություն ստանձնելու, ավելի քան 1.400 պատգամավորների առաջարկությունը՝ ԱՄՆ-ի աննախադեպ ծավալուն ռազմական բյուջեն էապես կրճատելու մասին: Միևնույն ժամանակ պլատֆորմը պարունակում է ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի ռազմական ծախսերը ավելացնելու և ռազմական հզորությունը մեծացնելու կոչեր, ինչպես նաև հակասովետական բնույթի մտացածին դրույթներ ու պնդումներ:

Ընդհանուր առմամբ դեմոկրատների ծրագիրը, ինչպես և դա վայել է մեծ բիզնեսի կուսակցություններից մեկին, չի հրաժարվում ուժի քաղաքականությունից, թեպետև կոչ է անում միջազգային վեճերը լուծել դիվանագիտական միջոցներով:

Ներքին քաղաքականության բնագավառում դեմոկրատական կուսակցությունը գտնում է, որ Ռեյգանի վարչակազմի օրոք հարուստներն ավելի են հարստացել, իսկ աղքատները դարձել են ավելի աղքատ: Նա կառավարությանը մեղադրում է սոցիալական ծրագրերն աղճատելու, ազգային փոքրամասնությունների իրավունքները անտեսելու համար և ամերիկացիներին խոստանում է «տնտեսական բարգավաճում» ու «սոցիալական արդարություն»: Սակայն այդ նպատակներին հասնելու եղանակների հարցում չկա կոնկրետություն և անկարելի է ծրագրից կռահել, թե ինչպես են դեմոկրատները մտադիր լուծել երկրի տնտեսական պրոբլեմները: Դեմոկրատներն իրենց մրցակիցների գլխավոր թուլությունը համարում են բյուջեի դեֆիցիտը և վիթխարի պետական պարտքը, հրավիրելով նրանց հրապարակային բանավեճի այդ հարցերի շուրջը:

Ընդհանուր առմամբ դեմոկրատական կուսակցության նախընտրական ծրագիրը հեռու է արմատական լինելուց և, ինչպես պետք էր սպասել, զերծ չէ հակասականությունից ու երկվությունից: Այլ կերպ էլ չէր կարող լինել այն կուսակցության



ծրագիրը, որը, այսպես թե այնպես, ի վերջո, ներկայացնում է մեծ բիզնեսի որոշակի մասի շահերը և այդ պատճառով չի կարող ձերբազատվել դասակարգային մտածողության ու գործելակերպի սահմանափակությունից: Համենայն դեպս անժխտելի է, որ իր անհետևողականությամբ և երկվությամբ հանդերձ այդ ծրագիրը պարունակում է կարևոր պոտենցիալ հնարավորություններ իր շուրջը համախմբելու հակառեյգանական ուժերին. արհմիություններին, աֆրոամերիկացիներին, լատինաամերիկացիներին, կանանց, հակապատերազմական շարժման մասնակիցներին, Ռեյգանի սոցիալական քաղաքականությունից տուժող տարեց ընտրողներին՝ ռեյգանիզմը ԱՄՆ-ի քաղաքական կյանքից բացառելու համար:

Համագումարը ձայների զգալի մեծամասնությամբ դեմոկրատական կուսակցության անունից պրեզիդենտի պաշտոնի թեկնածու առաջադրեց նախկին փոխպրեզիդենտ Ուոլտեր Մոնդեյլին, իսկ փոխպրեզիդենտի պաշտոնի համար՝ 48-ամյա իրավագետ, իտալացի վտարանդիների դուստր Ջեռալդին Ֆեռարոյին: Միացյալ Նահանգների պատմության մեջ առաջին անգամ կին գործիչը առաջադրվում է պետական այդպիսի բարձր պաշտոնի թեկնածու: Համընդհանուր կարծիքով, Մոնդեյլի այդ քայլը (պրեզիդենտի պաշտոնի հավակնորդն է ընտրում իր տեղակալի թեկնածությունը) նպատակ ունի նվաճել կին ընտրողների ձայները, որոնք ընտրողների ընդհանուր թվի կեսն են կազմում:

Առաջադրված թեկնածուները չեն պատկանում դեմոկրատական կուսակցության ամենաարմատական թևին: Այդ թևը գլխավորում է Ջեսի Ջեկսոնը, որն առաջարկում է վերականգնել դիվանագիտական հարաբերությունները Կուբայի հետ, խաղաղ ճանապարհով կարգավորել ճգնաժամը Կենտրոնական Ամերիկայում, սառեցնել ու սահմանափակել միջուկային սպառազինությունները, ամերիկյան միջին հեռահարության հրթիռները հեռացնել Արևմտյան Եվրոպայից, հրաժարվել տիեզերական տարածությունը ռազմականացնելու պլանից, վերսկսել բանակցությունները Սովետական Միության հետ և հասնել սպառազինությունների մրցավազքի դադարեցման: Ներքին կյանքում Ջեկսոնը պահանջում է աշխատանք բոլորի համար, սոցիալական արդարություն և ռասայական խտրականության իսպառ վերացում: Ջեկսոնյան թևը դեմոկրատական կուսակցության ներսում փոքրամասնություն է կազմում (Ջեկսոնը համագումարում ստացավ 465 ձայն, Մոնդեյլի ստացած 2.191 և Հարթի՝ 1.200 ձայնի դիմաց): Բայց սևամորթ ու իսպանալեզու ամերիկացիներին, ընչազուրկներին, առաջադեմ հայացքներ ունեցող սպիտակամորթ ամերիկացիներին ներկայացնող այդ փոքրամասնությունն զգալի ազդեցություն ունի երկրում, որը չի կարող չանդրադառնալ ընտրությունների արդյունքների վրա՝ հօգուտ դեմոկրատ թեկնածուների:

## Է. ԼՈՒՐՋ ՄՏԱՀՈԳՈՒԹՅՈՒՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆՆԵՐԻ ՇԱՐՔԵՐՈՒՄ

Դեմոկրատական կուսակցության համագումարը զգալի փոփոխություն մտցրեց նախընտրական կամպանիայի ընթացքի մեջ:

Ռոնալդ Ռեյգանը (որը մինչ այդ իրեն համարում էր բացարձակապես անպարտելի) և նրա ընտրական շտաբը լրջորեն մտահոգված են, թե ինչպիսին կլինի ընտրությունների ելքը: Դրանով է բացատրվում, որ հիմա Ռեյգանը հատկապես փոխել է իր ելույթների հնչերանգը՝ ձևանալով «խաղաղասեր», հավաստիացնելով, թե ինքն իբր կողմնակից է «արդյունավետ երկխոսության» Սովետական Միության հետ և անկեղծորեն ձգտում է հասնել սպառազինությունների վերահսկվող սահմանափակման: Նման հավաստիացումների առթիվ նախկին սենատոր և պրեզիդենտի պաշտոնի թեկնածու Ջորջ Մակգովերնը դեմոկրատական կուսակցության համագումարում հայտարարեց. «Առաջիկա ամիսներին մենք, անտարակույս, կլսենք հանրապետական վարչակազմի հերթական «խաղաղասիրական» հայտարարությունները: Սակայն նրանց հավատալ չի կարելի: Դրանք սոսկ խուսանավումներ են՝ անհանգստացած ամերիկացիներին հանգստացնելու համար: Մենք դեռ շատ բան պետք է անենք, որպեսզի ԱՄՆ-ը մղենք դեպի խաղաղության ուղին»:

Իրավիճակը Ռեյգանին թելադրում է խուսանավել, զբաղվել երեսպաշտությամբ, «մեծ բիզնեսի» պահապանի, ռասիստի, բռնատիրական վարչակարգերի հովանավորի և ռազմատենչ ճուռակի զենքն ու զրահը թաքցնել աղքատախնամ բարեգործի, դեմոկրատի և խաղաղության կողմնակցի պատմուճանի տակ: Ընտրողների ձայները նվաճելու նպատակով Ռեյգանը երեսպաշտորեն դիմեց նեգրերին, փորձելով սպա-

դել իր իշխանության օրոք ուժեղացած ռասայական խտրականությունը, ապա դիմեց կանանց, որոնք առանձնահատուկ դեր ունեն հակապատերազմական շարժման մեջ: Մշակման հաջորդ առարկան դարձավ ԱՄՆ-ի իսպանալեզու համայնքը, որտեղ հաշվվում է 14,6 միլիոն մարդ: Իհարկե, այսպես կոչված «ազատ ձեռնարկատիրության» ջատագովը և պաշտպանը չհապաղեց ամենից առաջ գովեստներ շռայլել ԱՄՆ-ի լատինաամերիկյան ծագում ունեցող բիզնեսմենների հասցեին, հայտարարելով, որ նրանք «ձեռնարկատիրության ազատության շնորհիվ ստեղծում են արժեքներ, որոնք Ամերիկան դարձնում են ոչ միայն պարզապես հարուստ, այլև գեղեցիկ երկիր»:

Ռեյգանը գիտակցաբար անտեսում է այն փաստը, որ փոքրաթիվ լատինաամերիկյան ծագում ունեցող բիզնեսմենների վիճակը ամենևին բնութագրական չէ միլիոնավոր լատինաամերիկացի (չիկանոս) ընտանիքների համար, որոնց 30 տոկոսը գտնվում է աղքատության սահմանագծից ներքև, որոնց շրջանում գործազրկությունը հասնում է 40—50 տոկոսի, որ լատինաամերիկացիներն ԱՄՆ-ում կատարում են ամենացածր վարձատրվող, հաճախ ամենանվաստ ու առողջության համար վնասակար աշխատանքները, իսկ կրթության հարցում նրանք զիջում են նույնիսկ աֆրոամերիկացիներին: «Իր իսկ էությամբ,— ասում է ԱՄՆ-ի կոմկուսի գլխավոր քարտուղար Գես Հոլը,— կապիտալիզմն անմարդկային է: Ռեյգանի կապիտալիզմը անմարդկային է իր հաշվենկատ սադիստական դաժանությամբ, որն իր հավասարը չի ունեցել ամերիկյան կառավարությունների պատմության մեջ»:

Սպիտակ տան ներկայիս տնօրենը սկսել է հաճախակի շոշափել աղքատության պրոբլեմը, քանի որ նրա հակառակորդները մեծ հմտությամբ օգտագործում են նրա դեմ ռեյգանոմիկայի ամենաբնորոշ գծերից մեկը՝ հակասոցիալական քաղաքականությունը, որի հետևանքով շեշտակիորեն ավելացել է այն ընտանիքների թիվը, որոնք պաշտոնապես ընդունված չափանիշներով դասվում են աղքատների շարքը: Բնակչության մարդահամարի բյուրոյի տվյալներով միայն անցյալ տարի ԱՄՆ-ում 2,6 միլիոն մարդ համալրել է չքավորների բանակը: Չափանիշ ընդունելով նորմալ սնվելու հնարավորությունը, մարդահամարի բյուրոն պնդում է, որ ներկայումս ընչազուրկների թիվն ԱՄՆ-ում հասնում է շուրջ 35 միլիոնի, որը երկրի բնակչության 15 տոկոսն է: Եվ Ռեյգանը, որը մշտապես պնդել է, թե Ամերիկայի գրեթե բոլոր դժբախտությունների պատճառը «վաղնջական ամերիկյան արժեքների» և ամենից առաջ շուկայական տնտեսության բամահրումն է, որ աղքատներին օգնելը «երկրին խանգարում է առաջ շարժվել և ծանր բեռի նման ընկնում է նրա տնտեսության վրա», այժմ ձևացնում է, թե խորապես մտահոգված է աղքատության խնդրով: Նա երեսպաշտորեն հայտարարում է, որ ազգային ողբերգություն կլիներ, եթե թեկուզև մեկ ամերիկացի երեխա պառկեր քնելու քաղցած և եթե զառամյալներից որևէ մեկը չունենար նորմալ սնվելու հնարավորություն: Մինչդեռ կառավարական ծախսերը «տնտեսելու» քաղաքականությունը, որին ձեռնամուխ եղավ պրեզիդենտը Սպիտակ տուն մուտք գործելուց անմիջապես հետո, հանգեցրեց բուն սոցիալական ծրագրերի կրճատմանը: Բյուջեի կրճատված միջոցների երկու երրորդը վերաբերում է այն ծրագրերի համար նախատեսված հատկացումներին, որոնք շոշափում են չունևոր ամերիկացիների շահերը: «Պրեզիդենտը,— գրում է «Նյու Յորք թայմսը»,— կրճատում է աղքատներին օժանդակելու ծրագրերը, որպեսզի փոխհատուցի հարուստներից գանձվող հարկերի շեշտակի իջեցումը»: Բիզնեսից գանձվող հարկերի կրճատումն ըստ Ռեյգանի կոչված է խրախուսելու «մասնավոր ձեռներեցությունը» կամ «շուկայական տնտեսությունը» վարկային տոկոսի անսովոր բարձր մակարդակի պայմաններում, որը կառավարությունը սահմանեց ինֆլյացիայի դեմ պայքարելու նկատառումով: Կոնգրեսի բյուջետային բյուրոյի տվյալներով հարկերի կրճատման պատճառով պետության գանձարկղը մուտք չգործած միջոցների 85 տոկոսը նախկինում գանձվել է այն ընտանիքներից, որոնք ունեն տարեկան 20 հազար դոլլարից ավելի եկամուտ:

Ռեյգանը գտնում է, թե ներքին քաղաքականության մեջ ինքը հասել է կարևոր նվաճումների, որ ռեյգանոմիկան կարողացել է տնտեսական անկումը փոխարինել «տնտեսական աշխուժացմամբ», իջեցնել ինֆլյացիայի մակարդակը, կրճատել գործազրկությունը: Անտարակույս, տնտեսական աշխուժացումն ԱՄՆ-ի կապիտալիստական տնտեսության ցիկլային զարգացման արտահայտությունն է և, բնականաբար, ունի ժամանակավոր բնույթ: Իրոք, ինֆլյացիայի մակարդակն իջել է, սակայն ներկայումս կյանքի արժողությունը 20 տոկոսով ավելի բարձր է, քան այն ժամանակ, երբ Ռեյգանը մուտք գործեց Սպիտակ տուն: Նույնը պետք է ասել գործազրկության մասին, որը, թեև ինչ-որ չափով կրճատվել է, բայց դեռևս ավելի բարձր է, քան այն ժամանակ, երբ Ռեյգանը դարձավ պրեզիդենտ: Աշխատավարձերը ներկայումս 5 տոկոսով ավելի ցածր են, քան այն ժամանակ: Աղքատության սահմանից ներքև ապրողների թիվը Ռեյգանի վարչակազմի օրոք ավելացել է հինգ միլիոնով: Միլիոնավոր աղքատներ զրկվել են սննդի կտրոններից: Կես միլիոն մարդ համալրել է անօթևան ամերիկացիների բանակը: Սնանկացել են հազարավոր մանր ֆերմերներ և բիզնեսմեններ: Արդյունաբերության մեջ այսպես կոչված կառուցվածքային ճգնաժամի պատճառով տուժել են միլիոնավոր արդյունաբերական բանվորներ, քանի որ կառավարությունը միջոցներ չի տրամադրում բանվորների մասնագիտական վերապրակավորմանը:

Ռեյգանոմիկան, սակայն, ունի և կայուն արդյունքներ, ինչպիսին են մոնոպոլիաների շահույթների աճը, որոնք այս տարի կազմել են 2 միլիարդ դոլլար, հարկերի կրճատումից ձեռնարկատերերի ձեռք բերած 750 միլիոն դոլլարը և անընդհատ ավելացող ռազմական բյուջեն:

Մինչդեռ ԱՄՆ-ի ընդհանուր ֆինանսատնտեսական իրավիճակը խիստ վատթարացել է. առևտրի դեֆիցիտը կազմել է 130 միլիարդ դոլլար, ֆեդերալ կառավարության պարտքը հասել է 2,5 տրիլիոն դոլլարի՝ տարեկան ավելանալով 200 միլիարդ դոլլարով, թեև Ռեյգանը իշխանությունն ստանձնելու պահին խոստացել էր մինչև 1984 թվականը հավասարակշռել պետական բյուջեն: Կառավարությունը միայն պետական պարտքի տոկոսների ձևով վճարում է տարեկան 120 միլիարդ դոլլար: Ռեյգանի կառավարման տարիներին 850 միլիարդ դոլլարով կրճատվել է աշխատավարձը և 130 միլիարդ դոլլարով՝ սոցիալական միջոցառումների ծրագիրը: Ֆերմերների պարտքը հասել է 230 միլիարդ դոլլարի, որը ամենամեծն է ԱՄՆ-ի պատմության մեջ, իսկ աշխատավորների ապառիկ գնումների և գրավ դնելու համար ունեցած պարտքը 1 տրիլիոն դոլլար է, և նրանք պարտավոր են որպես տոկոսավճար մուծել 720 միլիարդ դոլլար:

Զարգացած երկրների 800 միլիարդ դոլլարի հասնող պարտքի մեծ մասը ամերիկյան բանկերից վերցված վարկեր են, որոնց համար նշանակված են շատ բարձր տոկոսային դրույքներ: Զարգացող երկրները այդ պարտքի համար միայն որպես տոկոս պետք է վճարեն ավելի քան 90 միլիարդ դոլլար: Ամերիկյան վարկատու բանկերը միայն որպես տոկոսավճար վաստակում են 1տրիլիոն դոլլար:

Թանկ է նստում ռեյգանոմիկան նաև ԱՄՆ-ի արևմտաեվրոպական դաշնակիցների վրա: Ամերիկյան բանկերի բարձր հաշվարկային դրույքները թանկացրել են վարկերը ԱՄՆ-ում, իսկ Արևմտյան Եվրոպայում այն մնում է էժան, և այս հողի վրա սկսվել է կապիտալների արտահոսք Արևմտյան Եվրոպայից դեպի ԱՄՆ, որտեղ հարկերի շեշտակի իջեցման շնորհիվ կապիտալն ավելի շահութաբեր է:

Կապիտալների արտահոսքի պատճառով արևմտաեվրոպական պետությունները հնարավորություն չունեն ընդլայնել արտադրությունն իրենց մոտ և նվազեցնել գործազրկությունը: Եվ եթե ԱՄՆ-ում վերջին մեկ տարում գործազուրկների թիվը նվազել է, ապա եվրոպական տնտեսական համագործակցության երկրներում ավելացել է ու շարունակում է ավելանալ: Միաժամանակ կապիտալների արտահոսքն ԱՄՆ առաջ է բերել դոլլարի սով Արևմտյան Եվրոպայում և, հետևաբար, դոլլարի արժեքի բարձրացում կապիտալիստական մյուս վալյուտաների նկատմամբ: Անկասկած, այս ամենը սրում է հակասությունները Միացյալ Նահանգների և արևմտաեվրոպական պետությունների միջև, որովհետև ավելի քան որոշակի է, որ Վաշինգտոնի վարչակազմը բացահայտորեն ձգտում է ԱՄՆ-ի ֆինանսատնտեսական պրոբլեմները լուծել զարգացող երկրների և մինչև իսկ դաշնակից արևմտաեվրոպական պետությունների հաշվին: Սակայն այս կարգի երևույթների նշանակությունն ընտրություններում որոշելու համար պետք է ընդունել, որ համենայն դեպս միջին ամերիկացուն չեն հուզում ո՛չ Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի աշխատավորների հոգսերը, ո՛չ արևմտաեվրոպացիների վիճակը: Ինչպես ասում են, «սեփական շապիկն ավելի մոտ

է մարմնին»: Միջին ամերիկացուն տվյալ պահին չի անհանգստացնում նաև ԱՄՆ-ի անընդհատ աճող պետական պարտքը: Նա բավարարված է այն բանով, որ եկամտահարկի շեշտակի նվազեցման և դոլլարի դիրքերի ամրապնդման շնորհիվ ինքն ավելի շատ և ավելի էժան է գնում, քան մեկ տարի առաջ, որ նրա ունեցած դոլլարի դիմաց արտասահմանում վճարում են ավելի շատ ապրանք, ուրիշ վալյուտաներ, ոսկի և ծառայություններ: Թեև այդ բոլորը, ինչպես նաև ինֆլյացիայի մակարդակի իջեցումը, ժամանակավոր գործոնների նշանակություն ունեն և վաղ թե ուշ վրա է հասնելու օբյեկտիվ հաշվեհարդարը, այնուամենայնիվ, անժխտելի է, որ դրանք որոշակիորեն մեծացնում են Ռեյգանի հաջողության հավանականությունը: Անհրաժեշտ է հաշվի առնել միջին ամերիկացու սպառողական հոգեբանությունը, որի մասին Թեոդոր Դրայզերը գրել է. «Ինձ համար միջին կամ ինչ-որ ստանդարտացված ամերիկացին տարօրինակ, անկանոն զարգացած էակ է, խելացի և մինչև իսկ առաջ գնացած մեխանիկայի, սարքավորումների հարցերում և այն ամենի մեջ, ինչ վերաբերում է նյութական բաների հետ կապված տեխնիկական հմտությանը, բայց բացարձակապես զուրկ է ճշմարիտ հոգեկան խորաթափանցությունից, գրականության ու արվեստի պատմության ճիշտ իմացությունից և նրա գիտակցությունը մթագնել կամ միտքը հաղթահարել է զուտ նյութական և անհոդաբաժան մանրամասների բազմազանությունը, որոնցով նա շրջապատված է»:

Ահա այդ միջին ամերիկացու համար դժվար է ըմբռնել ռեյգանոմիկայի իրական էությունը, տեսնել արտաքին, ժամանակավոր «բարիքների» ալիքի տակ թաքնված խութերը, ռեյգանոմիկայի, որը Գես Հոլի բնութագրմամբ՝ ոչնչով չսահմանափակված, ոչնչով չվերահսկվող և ոչնչով չհարկադրվող պետական-մոնոպոլիստական կապիտալիզմ է:

Ուստի Ռեյգանին պարտության մատնելու կարևոր պայմաններից մեկը ռեյգանոմիկան ամերիկյան ընտրողների աչքում պսակազերծ անելն է, նրա իրական դասակարգային արմատների և էության անհրաժեշտ խորությամբ բացահայտումը, որը, դժբախտաբար, դեմոկրատներն անկարող են անել լիբերալ ըմբռնումների դիրքերից:

### 3. ՌԵՅԳԱՆԻԶՄԸ ԻԲՐԵՎ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ռեյգանոմիկան ստեղծում է նյութական բազա Ռեյգանի արտաքին քաղաքականության համար, որի բնորոշ գծերն են. սպառազինությունների մրցավազքի ընդլայնումն ու խորացումը, զանգվածային բնաջնջման միջոցների նոր, ավելի ահավոր տեսակների ու համակարգերի ստեղծումն ու կուտակումը, տիեզերական տարածությունները ռազմականացնելու պլանները, կայսերապաշտական հավակնությունները, գլոբալ մասշտաբի ագրեսիվ գործողությունները, գրեթե ամբողջ աշխարհն ԱՄՆ-ի կենսական շահերի ոլորտներ հռչակելը: Իբրև այս քաղաքականության գաղափարախոսական հիմնավորման միջոց ծառայում են անզուսպ հակակոմունիզմն ու հակասովետիզմը, սովետական ռազմական գերակշռության և «սովետական սպառնալիքի» վերաբերյալ հնամաշ հերյուրանքները:

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը, վերլուծելով միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարի սրման պատճառները, նշեց, որ իմպերիալիզմը և ամենից առաջ ԱՄՆ-ի կառավարող վերնախավը չեն ցանկանում հաշտվել այն իրողության հետ, երբ «ռեալ սոցիալիզմի պատմական նվաճումները, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման հեղինակության և ազդեցության աճը, գաղութային լուծը թոթափած երկրների առաջադիմական զարգացումը, ազգային-ազատագրական պայքարի վերելքը, հակապատերազմական շարժման վիթխարի թափը» հետզհետե առավել խոր ներգործություն են ունենում աշխարհի ժողովուրդների գիտակցության վրա:

Ամերիկյան իմպերիալիզմը սոցիալիզմի երկրների դեմ սկսել է իր մասշտաբներով և լպիրշությամբ աննախադեպ հոգեբանական պատերազմ, մտմտում է համաշխարհային տիրապետության զառանցական պլաններ և իր ագրեսիվ քաղաքականությամբ մարդկությանը հրում դեպի միջուկային արհավիրքի անդունդը: Այդ քաղաքականության «դասակարգային իմաստն ակնբախ է,— ասում է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն.— փորձել դանդաղեցնել մարդկության կյանքում կատարվող պրոգրեսիվ փոփոխությունները, վերադարձնել կորցրած դիրքերը: 60—70-ական թվականներին մի շարք խոշոր պարտություններ կրելով համաշխարհային ասպարեզում, իմպերիա-



լիզմը, ամենից առաջ ամերիկյանը, ավելի ու ավելի զանգվածային, իր ծավալով աննախադեպ գրոհներ է ձեռնարկում մեր հասարակարգի, մարքս-լենինյան գաղափարախոսության դեմ»:

Պրինսթոնի համալսարանի քաղաքական գիտությունների պրոֆեսոր Սթիվեն Քոհենը գտնում է, որ Ամերիկայի հնամենի քաղաքական հիվանդությունը՝ սովետատյացությունը ներկայումս վերածնվել է ավելի վտանգավոր ձևով, քան սառը պատերազմի համանարակը:

Այս՝ «Թայմ» հանդեսի բնորոշմամբ, «քարանձավային» հակակոմունիզմն իբրև հարվածի թիրախ ընտրել է համաշխարհային հեղափոխական պրոցեսը, որի բովանդակությունը կազմող հեղափոխական իրադարձություններն Ասիայում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում Վաշինգտոնը դիտում է իբրև կոմունիստական դավադրություններ, «միջազգային տեռորիզմ», ամենուրեք տեսնելով «Մոսկվայի ձեռքը»: Նա կոմունիզմն անվանում է «ժամանակակից աշխարհի չարիքը», Սովետական Միությունը՝ «չարիքի կենտրոն» և հռչակել է հակակոմունիստական ու հակասովետական խաչակրաց արշավանք, ապավինելով «սահմանափակ միջուկային պատերազմի», «տևական միջուկային պատերազմի», «կանխարգելիչ միջուկային հարվածի» մարդատյաց դոկտրինաներին: Այս նկատառումով Ռեյգանի վարչակազմը նպատակ ունի Արևմտյան Եվրոպայում միջին հեռահարության շուրջ 600 «Փերշինգ—2» և թևավոր հրթիռներ տեղակայելով ու միջուկային «վերազինման» միջոցով հասնել ռազմական գերակշռության ՍՍՀՄ-ի նկատմամբ: Ռեյգանի հակակոմունիզմն ամերիկյան գիտնական Արթուր Շլեզինգերի կարծիքով «բացառում է նույնիսկ հաշտեցման կամ կոմպրոմիսի միտքը: Նա բացառում է գոյակցության գաղափարը, քանզի ինչպե՞ս կարելի է կոմպրոմիսի գնալ կամ գոյակցել չարիքի հետ: Նա ոչ մի ուրիշ հեռանկար չի առաջարկում, բացի հակառակորդին «բոլոր ուժերով» դիմագրավելուց, բացի պատերազմից մինչև վերջին շունչը: Այն ճշմարիտ հավատացյալներին կոչում է «ջիհադի» (սրբազան պատերազմի), խաչակրաց արշավանքի՝ անհավատներին բնաջնջելու նպատակով»:

Անժխտելի է, որ սովետա-ամերիկյան հարաբերությունների հարցը առանցքային նշանակություն է ստանում ԱՄՆ-ի առաջիկա պրեզիդենտական ընտրություններում: Եվ ընտրական պայքարում մրցակցող կուսակցություններից ոչ մեկը չի կարող շրջանցել այդ հարցը, ինչպես և չի կարող հաշվի չնստել վիթխարի հակապատերազմական շարժման հետ, որը Ռեյգանի վարչակազմը փորձում է որակել որպես Սովետական Միության հրահրած խժդժություն:

«Հակամիջուկային, հակապատերազմական շարժման ալիքը, որը բարձրացել է Արևմուտքում,— ասում է Ա. Ա. Գրոմիկոն,— մի յուրատեսակ ժողովրդական հանրաքվե է: Պատերազմի և խաղաղության հարցում շարժման մասնակիցները չեն տատանվում: Նրանք արտահայտվում են հօգուտ խաղաղության, ընդդեմ պատերազմի նախապատրաստության պլանների և սպառազինությունների խելահեղ մրցավազքը շարունակելուն:

Փորձում են պնդել, թե իբր այդ շարժումը հնազանդվում է «Մոսկվայի ձեռքին»: Մեզ համար, հասկանալի է, հաճելի է, որ խաղաղության համար ելույթները կապում են Սովետական Միության հետ: Սակայն «Մոսկվայի ձեռքն» այստեղ գործ չունի: Հասարակայնության լայն շրջաններն իրենց հակապատերազմական ելույթներում տարերայնորեն արտահայտում են մարդկանց՝ կյանքի իրավունքը պաշտպանելու ձգտումը»:

Ռեյգանիզմը ոտնահարում է մարդու այդ առավել նվիրական իրավունքը և, որքան էլ տարօրինակ է, խաղաղասեր ձևանում: Պրեզիդենտը ճգնում է իր «խաղաղասիրությամբ» բացատրել սպառազինությունների մրցավազքը, զինված ներխուժումը Գրենադա, Նիկարագուայի նավահանգիստների ականապատումը, միջամտությունը Սալվադորի քաղաքացիական պատերազմին, արկածախնդրությունը Լիբանանում, նոր հրթիռների տեղակայումը Արևմտյան Եվրոպայում և այլն:

«Մենք զորավիգ ենք դեմոկրատիային, ռեֆորմներին և մարդկային ազատությանը: Միացյալ Նահանգները և նրանց բարեկամները վճռաբար ընդդիմանում են հարևան երկրների կողմից մեկը մյուսի դեմ ուժ գործադրելուն: Միացյալ Նահանգները հաստատապես կանգնած են խաղաղության կողմը»,— հայտարարեց Ռեյգանը իր մամուլի կոնֆերանսներից մեկում: Նա մինչև իսկ հավատացնում է, թե իր վար-

չնայած ավելի շատ բանակցություններ է վարում «ռուսների հետ, քան որևէ այլ կառավարություն» ԱՄՆ-ի պատմության մեջ, մինչդեռ ինքն է դադարեցրել ստորգետնյա միջուկային փորձարկումներն արգելելու, Հնդկական օվկիանոսն ապառազմականացնելու, հակաարբանյակային զենքի արգելման, սովորական սպառազինությունների արտածումը սահմանափակելու վերաբերյալ սովետա-ամերիկյան բանակցությունները, ինքն է կանխամտածված կերպով տորպեդահարել միջին հեռահարության միջուկային միջոցների և ստրատեգիական սպառազինությունների վերաբերյալ բանակցությունները Ժնևում:

Ճիշտ է, հակապատերազմական շարժումն ունի և իր հակոտնյան, որովհետև վարչակազմն իր կառավարման ընթացքում նախանձելի ակտիվություն է ցուցաբերել ամերիկացիներին շովինիստական, միլիտարիստական, հակակոմունիստական տրամադրություններ պատվաստելու գործում, և նրա ջանքերն անհետևանք չեն անցել:

Չնայած դրան, հակապատերազմական շարժումը մնում է իբրև խիստ կարևոր գործոն նաև ընտրական պայքարում, որը պետք է օգտագործվի հանրապետականներին պարտության մատնելու համար:

## 4. ՌԵՅԳԱՆԻ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ԿՆՇԱՆԱԿԻ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՈՒԺԵՐԻ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆ

Միացյալ Նահանգների երկկուսակցական քաղաքական համակարգն ըստ էության մոնոպոլիստական կապիտալի խմբավորումների մրցակցության արտահայտությունն է երկրի հասարակական կյանքում: Կապիտոլիումի և Սպիտակ տան համար մղվող պայքարը հետապնդում է նեղ շահադիտական նպատակներ և, բնականաբար, դեմոկրատների ու հանրապետականների հերթափոխությունը կառավարության ղեկի մոտ չի կարող մազաչափ իսկ փոխել ամերիկյան հասարակարգի սոցիալ-քաղաքական դեմքը: Սակայն Վ. Ի. Լենինը սովորեցնում էր տարբերություն դնել բուրժուազիայի տարբեր հատվածների միջև, քանի որ ժամանակ առ ժամանակ բուրժուազիայի այս կամ այն կառավարող խմբավորման մոտ կարող են գլուխ բարձրացնել ռազմամոլ տրամադրությունները կամ քաղաքական ողջախոհությունը:

Դեմոկրատական և հանրապետական կուսակցությունների պայքարը պայքար է այսպես կոչված Ուոլ-ստրիտյան խմբավորման (արևելյան) մոնոպոլիաների և Միջին ու Հեռավոր Արևմուտքի խմբավորումների միջև: Վերջին խմբավորման ընկերությունները աճեցին ու հզորացան երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին և հատկապես ետպատերազմյան շրջանում՝ սպառազինությունների մրցավազքի խմորիչի շնորհիվ: Այդ նոր ռազմական մոնոպոլիաները, որոնց անվանեցին «նեոմիլիոնատերեր», պրեզիդենտ Էյզենհաուերը մկրտեց «ռազմաարդյունաբերական համալիր» անունով, խոստովանելով, որ դրա «անօրինաչափ իշխանության կործանարար աճի հնարավորությունը գոյություն ունի և գոյություն կունենա»: Հավանաբար, Էյզենհաուերը նկատի ուներ, որ «անօրինաչափ իշխանության» գերիշխելու հավակնությունները չեն սահմանափակվելու մեկ կամ մի քանի նահանգի և մինչև իսկ ողջ Միջին ու Հեռավոր Արևմուտքի շրջանակներով: Եվ, իրոք, ռազմաարդյունաբերական համալիրը (ՌԱՀ) հանրապետական կուսակցության միջոցով շարունակ ձեռքը մեկնել է, և ոչ առանց հաջողության, դեպի ֆեդերալ կառավարման հիմնարկությունները, քանի որ սպառազինությունների մրցավազքը համապետական քաղաքականություն է և դրա ֆինանսավորումը կախված է կոնգրեսից ու ֆեդերալ կառավարությունից:

1980 թ. Ռեյգանի «Կալիֆոռնիայի թիմի» հայտնվելը Վաշինգտոնում վկայում է, որ ՌԱՀ--ի «անօրինաչափ իշխանությունն» աճում է աղետալի արագությամբ: Արևմտագերմանական «Շպիգելի» արտահայտությամբ, տեղի է ունենում ԱՄՆ-ի «կալիֆոռնիականացում»: Կալիֆոռնիան, ԱՄՆ-ի ամենաարևմտյան և բնակչության թվով (24,2 միլիոն մարդ) ամենամեծ նահանգը, դարձել է ՌԱՀ-ի որջը: Նրան բաժին է ընկնում Պենտագոնի ռազմական պատվերների 23 տոկոսը: ԱՄՆ-ի ռազմական արդյունաբերության առաջատար ընկերությունների՝ «Ջեներալ դայնեմիկսի», «Նորտրոպի», «Լիտտոնի», «Լոքհիդի», «Ռոքուելլի», «Վեստինգհաուզի» ձեռնարկությունները Կալիֆոռնիայում արտադրում են նորագույն ստրատեգիական սպառազինությունների բոլոր հիմնական համակարգերը: ՌԱՀ-ի համար Կալիֆոռնիան իդեալական «բնակավայր» է: Այստեղ կան ոչ միայն տեխնիկայի վերջին խոսքով



սարքավորված ձեռնարկություններ և գիտահետազոտական կենտրոններ, այլև բազաներ բոլոր զորատեսակների համար, ամենաժամանակակից հրթիռային միջոցների փորձարկման հրաձգարաններ:

Կալիֆոռնիայի «զինագործներն» էլ ծնել են ու սնել Ռեյգանին ու ռեյգանիզմը, Վաշինգտոնի ներկայիս վարչակազմի գլխավոր գործող անձանց: Ռեյգանը 1967—1974 թվականներին Կալիֆոռնիայի նահանգապետի պաշտոնում նահանգի մասշտաբներով գործնականում փորձարկել է ռեյգանիզմի սկզբունքները՝ բիզնեսի ձերբազատումը հարկերից, նահանգի բյուջեի դեֆիցիտը սոցիալական ծրագրերի համար նախատեսված ծախսերը կրճատելու հաշվին շտկելը և այլն: Վիետնամական պատերազմի տարիներին նա անողոքաբար ճնշում էր ուսանողական հակապատերազմական ելույթները և «խոսքի ազատության» շարժումը Բերկլիում և Կալիֆոռնիայի մյուս կրթական կենտրոններում: Սպիտակ տուն մուտք գործելու առաջին իսկ օրից նա սկսեց իր կալիֆոռնիական փորձը կիրառել ֆեդերալ մասշտաբներով: Ռեյգանը պատրաստ է հայտարարել հակապատերազմական շարժման մասնակիցներին՝ անվանելով նրանց «դավաճաններ», «հակահայրենասերներ», կարող է ցրել ամբողջ արհմիություններ, ինչպես ավիացիոն դիսպետչերների արհմիությունը:

Ինչպես 1980 թ. ընտրությունների ժամանակ, այնպես էլ հիմա Ռեյգան—Բուշ ընտրական կամպանիան ֆինանսավորում են գլխավորապես Կալիֆոռնիայի մեծահարուստները: Այդ հանգամանքը, այնուհանդերձ, չի վերացնում մեծ բիզնեսի առավել պահպանողական շրջանների, ռասիստական կուկլուքսկլանի, ուժի դիրքից քաղաքականության, կոմունիզմը բռնի ուժով բնաջնջելու կողմնակիցների թեկնածուի դիրքում նշմարվող թուլությունները: Գիտակցելով այդ իրողությունը, Ռեյգանը փորձում է նախընտրական պայքարում ծանրությունը տեղափոխել այսպես կոչված «բարոյական» կարգի հարցերի վրա, չարաշահելով հատկապես հավատացյալ ամերիկացիների կրոնական զգացմունքները:

Նա շոշափում է հանցագործությունների, աբորտի, դպրոցներում աղոթելը պարտադիր դարձնելու հարցերը: «Դեյլի ուորլդ» լրագիրն իրավամբ դրանում տեսնում է հակառեյգանական բանակը պառակտելու միտում: Ասենք, նա հույս ունի, որ աբորտը կրոնական ֆունդամենտալիզմի տեսանկյունից քննադատելը թույլ կտա գայթակղել ընտրողների մեծ զանգվածների, հատկապես գյուղատնտեսական շրջաններում:

Դեմոկրատները կարող են ռեյգանականների դեմ օգտագործել նաև այսպես կոչված «ռեյգանգեյթի» փաստը, երբ նախորդ ընտրությունների ժամանակ այժմյան պրեզիդենտի մերձավոր օգնականները Սպիտակ տնից հափշտակել էին պրեզիդենտ Քարտերի փաստաթղթերը, որը Ռեյգանին օգնել էր նախապատրաստվելու հեռուստատեսային բանավեճի իր մրցակցի հետ: Բացի այդ վարչակազմի անդամներից շատերը շահամոլական նպատակներով չարաշահել են իրենց դիրքը, և ամերիկյան մամուլը ստիպված է արձանագրել, որ դրամաշորթության և ապօրինի մեքենայությունների մեջ մերկացված կառավարական աստիճանավորների հետ տեղի ունեցած սկանդալների թվով Ռեյգանի վարչակազմը հավասարը չունի ԱՄՆ-ի պատմության մեջ:

Այս ամենը, անշուշտ, չի նշանակում, թե հանրապետականներին պարտության մատնելը հեշտ գործ է, և Սպիտակ տան բանալին արդեն Ուոլտեր Մոնդեյլի գրպանում է: Սակայն Ռեյգանն «անպարտելի» չէ, ինչպես կարծում է ինքը և ինչպես ցանկանում են ամերիկյան ընտրողներին ներշնչել ռեյգանականները: Դրությունը զգալիորեն տարբերվում է 1980 թվականի իրավիճակից: Այն ժամանակ չեզոք թեկնածու Անդերսոնը, չունենալով հաղթանակի ոչ մի շանս, այնուամենայնիվ, դեմոկրատներից խլեց կարևոր քվեներ, ակամայից մեծացնելով Ռեյգանի հաջողության հնարավորությունները: Պետք չէ նաև մոռանալ, որ, չնայած հաղթանակին, Ռեյգանի օգտին այն ժամանակ քվեարկեց, ընտրողների մեծ պասիվության պատճառով, ընտրելու համար գրանցված ամերիկացիների սոսկ 27 տոկոսը: Այնպես որ, Ռեյգանը փաստորեն փոքրամասնության ընտրյալն է: Նոյեմբերի 6-ին ընտրողների նման պասիվությունը բացառվում է: Խնդիրը, ինչպես շեշտում է Գես Հոլը, սոսկ հակառեյգանական ուժերի առավելագույն միասնության հասնելն է: Միայն այդ դեպքում հնարավոր է նոյեմբերի 6-ին ռեյգանիզմը բացառել ԱՄՆ-ի քաղաքական կյանքից:

---

Գիտական հայտնագործությունները՝

ի բարօրություն մարդկության

# ԳԻՏՆԱԿԱՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ

**Ժ. ՀԱԿՈԲՅԱՆ**
**Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՀՍՍՀ ԳԱ փորձարարական կենսաբանության ինստիտուտի մոլեկուլային էնզիմոլոգիայի լաբորատորիայի վարիչ**

ԴԵՌԵՎՍ ՀԻՆ ՀՈՒՆԱԿԱՆ փիլիսոփա Պլատոնը գրել է, որ կյանքն առանց հետազոտությունների անիմաստ է: Մեր օրերում երևան է եկել մարդու նոր տիպ, որի համար մեծագույն բարիքը բանական որոնումն է: Այս նոր հարաբերությունները խարխլված են այլ գիտնականների համոզմունքները հարգելու, միմյանց և մարդկությանը օգնություն ցույց տալու պատրաստակամության վրա: Այս առումով գիտնականները հեղաշրջում են կատարել բարոյագիտության ոլորտում:

Մեր ժամանակներում գիտությունը բավականին մասսայական է դարձել, և այն փաստը, որ աշխարհում մարդկանց զգալի մասն զբաղվում է գիտությամբ, հարուցում է մի շարք խնդիրներ: Օրինակ՝ ո՞ւմ է ծառայում գիտությունը: Իհարկե, կարելի է և այլ կերպ ձևակերպել հարցը. ծառայո՞ւմ են գիտությանը, թե՞ օգտագործում են այն սեփական բարօրության նպատակով: Սակայն մենք կամենում ենք հարցն արծարծել այս կերպ. ոչ թե ում է ծառայում գիտությունը, այլ ո՞վ է ծառայում գիտությանը: Գիտությունն ինքնին, որպես տեսական իմացության համակարգ, չի պարունակում բարոյական նորմերի օբյեկտիվ ցուցանիշներ: Գիտությունն այսօր համարվում է ռեալ սոցիալական ուժ, որը մշակում է գործունեության տեսական պրոբլեմները, որոնք ընդգրկում են ինչպես ճշմարտության որոնումները, նույնպես և աշխարհի վերափոխման խնդիրները, իսկ այդ նշանակում է, որ գիտության նպատակն են դառնում մարդը և մարդկությունը: Նման իրավիճակում միաժամանակ հառնում են գիտական գործունեության բարոյական իդեալի, գիտնականի իդեալական կերպարի և բուն գիտության ռեալ բարոյականության հարցերը: Այսօր արդեն հանրահայտ է, որ գիտությունը, ինչպես և մարդկային ամեն մի գործունեություն, ունեցում է բարոյական վարքագիծ:

Այդ պրոցեսը կապված է ժամանակակից գիտության շատ առանձնահատկությունների հետ, որոնց մասին նշել է Մարքսը՝ գիտությունը բնորոշելով որպես հասարակության հատուկ սոցիալական ինստիտուտ: Գիտության և հասարակության փոխհարաբերություններն ամբողջովին փոխկապված են: Ինչպես գիտության ոլորտում կատարվող փոխհարաբերություններն արդյունք են հասարակական իրադարձությունների, նույնպես և, ավելի մեծ չափով, հասարակական վերափոխումները տեղի են ունենում գիտության զարգացման շնորհիվ: Չնայած սկզբնական շրջանում, երբ գիտությունը հաստատվում էր իբրև տնտեսական ու քաղաքական իշխանության ապահովման միջոց, վերջինիս զարգացումը դարձավ հասարակական կյանքի գործող ուժերից մեկը: Ժամանակակից զարգացած արդյունաբերություն ունեցող ոչ մի հասարակություն չի կարող գոյատևել առանց գիտության: Չէ՞ որ արդի գիտությունը հանդես է գալիս իբրև մի գործոն, որը վերափոխում, վերակառուցում է սոցիալական գործունեության ողջ կառուցվածքը: Նման ֆունկցիա չի կատարում մարդկային գործունեության ոչ մի տեսակ:



Սոցիալիզմի օրոք գիտությունը սոցիալական առաջընթացի կարևոր գործոն է, քանի որ այն վճռական ազդեցություն է ունենում նյութական արտադրության և մարդու համակողմանի զարգացման վրա: Սովետական գիտնականները քաջ գիտակցում են, որ բոլոր բնագավառներում գիտատեխնիկական ողջ պոտենցիալի ակտիվ ու արգասավոր գործունեությամբ են անմիջականորեն պայմանավորված մեր հաջողությունները կոմունիստական շինարարության, երկրի պաշտպանունակության, հանուն խաղաղության ու զինաթափման մղվող պայքարում: Մեր երկրի գիտական մտավորականությունը կոլեկտիվ պատասխանատվություն է կրում այս կամ այն հիմնարար հետազոտության մշակման, արտադրության, գյուղատնտեսության մեջ գիտական մշակումների ներդրման, գիտական գիտելիքների պրոպագանդման համար: Այդ խնդիրն այժմ դառնում է առավել հանրանշանակ, հարուցելով բոլոր գիտնականների հետաքրքրությունը՝ անկախ նրանց մասնագիտությունից: Այժմ առավել, քան երբևէ, գիտնականները պարտավոր են մտածել, որ գիտությունն օգտագործվի հօգուտ մարդկության, հանուն մարդու զարգացման: Այժմ այս խնդիրներն առավելագույնս սկսում են հետաքրքրել կենսաբաններին, քանի որ բարոյագիտական և սոցիալական այն խնդիրները, որոնց ժամանակին բախվեցին ֆիզիկոս-ատոմագետները, մանկական զվարճություն կթվան կենսաբանական գիտությունների նվաճումների հակահումանիստական հնարավոր օգտագործման հետ կապված խնդիրների առնչությամբ: Այդ առնչվում է այն բանի հետ, որ կենսաբանական գիտությունն ավելի ու ավելի է դիմում մարդու վրա փորձարկումների կատարմանը և դրանով իսկ առաջադրում սոցիալ-փիլիսոփայական ու բարոյագիտական բնույթի խնդիրներ: Ամենակենսական հարցերից մեկը հետազոտական և արժութային մոտեցումների փոխհարաբերությունն է, գիտական հետազոտության և մարդասիրական իդեալի փոխհարաբերությունը: Այդ պայմանավորված է մի շարք օբյեկտիվ պատճառներով և ամենից առաջ նրանով, որ կենսաբան փորձարարների արդի հաջողությունները ո՛չ միայն մեծ հույսեր են ներշնչում, այլև հղի են լուրջ վտանգներով: Այսօր արդեն մոլեկուլյար կենսաբանության և մոլեկուլյար գենետիկայի հնարավորությունների սպեկտրը չափազանց լայն է:

Մի քանի օրինակներով կարելի է ներկայացնել մոլեկուլյար կենսաբանության՝ վերջին 10—15 տարիներին իրականացված հնարավորությունները: Դրան նախորդող ժամանակաշրջանը եղել է քանակական կուտակումների շրջան, որոնք վերջին տասնամյակում զգալի որակական տեղաշարժեր են առաջացրել: Մոլեկուլային կենսաբանության և մոլեկուլային գենետիկայի զարգացումը շարունակվում է մեր օրերում նույնքան արագ տեմպերով, որքան և 15—20 տարի առաջ: Ուսումնասիրությունները կատարվում են համակողմանիորեն, ֆիզիկոսների, մաթեմատիկոսների, քիմիկոսների և այլ մասնագետների լայն մասնակցությամբ: Սկզբում զատվեցին առանձին գեներ, ապա, որոշ դեպքերում, հաջողվեց ձեռնարկել դրանց սինթեզմանը: Այնուհետև հայտնագործվեց կենսաբանական կատալիզատոր-ռեստրիկտազների (վերականգնիչների) նոր խումբ, որոնք ժառանգական ինֆորմացիայի պահեստարանի՝ ԴՆԹ-ի մոլեկուլը բաժանում են հատուկ մասերի, և միայն դրանից հետո կենսաբաններին հաջողվեց որոշ դեպքերում պարզել ամբողջական գեների բազային հաջորդականությունը, փորձեր կատարել ռեկոմբինանտ մոլեկուլների և դրանց հատվածների վրա և այդ մոլեկուլները ներարկել ռեցեպիենտ բջիջներին: Այդ պահից էլ սկսվեց գենային ինժեներիայի դարաշրջանը, որի հաջողությունները բավական ուշագրավ են: Բերենք սոսկ մի քանի օրինակ, որոնք ցույց կտան, թե ինչպիսի հնարավորություններով են օժտված և որքան հեռանկարային են հետազոտությունների գենաինժեներային մեթոդները: Դիտենք, օրինակ, աճի հորմոնի գենի մանիպուլացման ժամանակ տեղի ունեցող ռեակցիաների շղթան. անջատվում է գենետիկական նյութը, կատարվում է ամինների հաջորդականության անալիզը, արհեստական պայմաններում ստանում են գեն, գենետիկական այդ նյութը տեղափոխում են մանրէի մեջ, որտեղ և պետք է տեղի ունենա կենսաբանորեն ակտիվ գենետիկական նյութերի և վերածրագրավորման մանրէների սինթեզը: Ռեակցիաների այս հաջորդական օղակներից երևում է, որ արտաքին գենետիկական ինֆորմացիան կարող է նույնիսկ զատվել իր տիրոջից՝ կրողից և այլ տեր «գտնել» իր համար: Ռեակցիաների նման հաջորդականություն այժմ իրականացված է հենց աճի հորմոնի գենի վերա-

ընտրողաբար խախտում է ժառանգականության մեխանիզմը և նպաստում ժառանգական հիվանդությունների առաջացմանը, հանգեցնելով անհատի թերարժեքության և դեգրադացման:

Անգլիացի կենսաբան Ռ. Օստինը, որը երկար տարիներ զբաղվում է արհեստական պայմաններում մարդու սաղմը աճեցնելու հնարավորության ուսումնասիրմամբ, առաջարկում է գիտնականի բարոյական նորմերը գնահատելիս խստորեն տարբերակել երկու ուրույն կողմեր: Առաջին. գիտնականի պատասխանատվությունը հիմնարար հետազոտության ընթացքում, երբ նա պետք է նոր տեղեկություն ստանա՝ անկախ բարոյական որևէ նկատառման: Երկրորդ. գիտնականի պատասխանատվությունը գիտական հասումների կիրառման առումով, որոնք հաճախ (հատկապես բուրժուական հասարակարգում) չեն ենթարկվում գիտնականի իշխանությանը, և բխում են ոչ թե գիտությունից, այլ դրա շահագործումից: Նման դիրքորոշումն ընդունելի չէ մեզ համար: Ներկա պայմաններում հասարակության առաջ գիտության պատասխանատվության (ինչպես և ամեն մի գիտնականի անձնական պատասխանատվության) ժխտումը հնարավորություն է ընձեռում արդարացնելու գիտական հասումների մարդասիրական նպատակներով օգտագործումը: Կա գիտնականների մի խումբ ևս, որը գտնում է, թե գոյություն ունի աշխատանքի ինչ-որ բաժանում: Ինֆորմացիա ստեղծող գիտնականները, որոնք իրենց կատարած աշխատանքից ստանում են գիտական և գեղագիտական հաճույք, հաստատում են. «Մենք ստեղծում ենք գործիքները, իսկ դուք պետք է հոգաք այն մասին, թե ինչպես օգտագործեք այն»: Սրանք պատկանում են գիտնականների այն խմբին, որը կողմնակից է գիտության բարոյական չեզոքության: Միանգամայն ակնհայտ է, որ այս դոկտրինան բարոյական մի թակարդ է, խիղճն ու զգոնությունը թոթափելու մի հասարակ միջոց: Գիտնականներն իրենց ուսերին այժմ կրում են վիթխարի պատասխանատվություն և չի կարելի խոսել գիտության չեզոքության մասին: Մոլեկուլային կենսաբանության և մոլեկուլային ժառանգականության արդի հասումները հնարավորություն են ընձեռում եզրակացնելու, որ գիտնական-կենսաբանների պատասխանատվությունը հասել է որակական նոր աստիճանի: Փոխվում են բարոյագիտական խնդիրների բնույթն ու դրվածքը, տեղի է ունենում համընդհանուր քննարկումից անցում բարոյագիտական նորմերի գնահատման կոնկրետ վերլուծությունների:

Արդի գիտության ոլորտում, ժամանակակից հասարակության մեջ, երբ գիտության ամենաանակնկալ հասումները արագորեն գործնական կիրառություն են գտնում, սոցիալ-բարոյագիտական խնդիրները հաճախ ծագում են առանձին գիտական հայտնագործությունների քննարկման ժամանակ: Այդ նշանակում է, որ գիտական պատասխանատվության հարցերը հառնում են նաև ամեն մի կոնկրետ հետազոտողի և ոչ միայն գիտնականների խմբակցությունների առջև, և որ նրանք պետք է լուծեն այդ իբրև անձամբ իրենց վերաբերող հարցեր, մի հանգամանք, որը շեշտում է գիտության և բարոյականության փոխադարձ կապը:

Գիտատեխնիկական արդի հեղափոխության պայմաններում գիտության դերի որակական փոփոխությունը, գիտնականների թվի մեծացումը առավել չափով են բևեռում ուշադրությունը գիտական գործունեության բարոյագիտական հարցերի վրա: Գիտությունն այժմ սերտորեն կապված է բարոյականության հետ, գիտնականներն այսօր առավել, քան երբևէ, պատասխանատու են իրենց հետազոտությունների նպատակների ու միջոցների, սոցիալական հետևանքների, մարդու և մարդկության ճակատագրի համար: Սովետական գիտնականի բարոյական հավատամքի դրսևորումն են նրա քաղաքացիությունն ու մարդասիրությունը, բոլորանվեր ծառայությունը ճշմարտությանն ու գիտությանը, կոլեկտիվիզմը, խստապահանջությունը իր և այլոց նկատմամբ:

Մարդկության նկատմամբ հոգատարությունն է առիթ ծառայել այն բանի, որ դեռևս 1971 թ. Սովետական Միությունը, մյուս սոցիալիստական երկրները, ինչպես և աշխարհի այլ պետություններ առաջարկեցին և ընդունեցին կոնվենցիա՝ կենսաբանական և թունավոր զենքերի մշակումը, արտադրությունն ու կուտակումը արգելելու և դրանք ոչնչացնելու մասին: Կոնվենցիան ուժի մեջ մտավ 1975 թ. և 1978 թ. այն վավերացրին ավելի քան 80 պետություններ, այդ թվում՝ ՍՍՀՄ-ը, սոցիալիստական համագործակցության երկրները, ԱՄՆ-ը, Մեծ Բրիտանիան և այլ երկրներ: Ղեկա-



վարվելով գենաինժեներային հետազոտությունների անվտանգության սկզբունքով՝ 1978 թ. ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին կից մոլեկուլային կենսաբանության և մոլեկուլային գենետիկայի պրոբլեմների միջգերատեսչական գիտատեխնիկական խորհուրդը և ՍՍՀՄ ԳԱ նախագահությունը հաստատեցին պաշտոնական մի փաստաթուղթ— ԴՆԹ-ի ռեկոմբինանտների հետ կապված աշխատանքների անվտանգության ժամանակավոր կանոններ: Այդ կանոնները մշակել են գենային ինժեներիայի բնագավառի առաջատար գիտնականների կոլեկտիվներ և ժամանակավոր են լոկ այն պատճառով, որ հարցը դեռևս անբավարար է ուսումնասիրված:

Իրենց կյանքը գիտությանը նվիրած մարդկանց համար այսօր չկա ավելի հրատապ և կենսական խնդիր, քան ակտիվ գործունեությունը հանուն խաղաղության, հանուն ողջ մարդկության ապագայի: Այս առումով կարևոր դեր է խաղում Պագուոշյան շարժումը, որն սկզբնավորվել է ավելի քան քառորդ դար առաջ, նախաձեռնող խմբի կազմակերպմամբ, որի մեջ էին Ա. Էյնշտեյնը, Բ. Ռասելը, Ֆ. Ժոլիո-Կյուրին և ուրիշներ: Այս խմբի նախաձեռնությամբ ընդունվեց մանիֆեստ, որն ստորագրել էին ժամանակի բոլոր խոշոր գիտնականները: Իր ողջ պատկառազդությամբ հանդերձ, գիտնականների Պագուոշյան շարժումն ունի լուրջ թերություններ. գործունեության բազայի ու ոլորտի սահմանափակությունն է այդ: Այս շարժման հաջողությունները համեստ են, որովհետև այն դեռևս մասսայական չէ: Անհրաժեշտ է, որ գիտնականները միաձուլվեն հանուն խաղաղության ծավալված համաշխարհային շարժմանը, այդ շարժումը դարձնեն մասսայական, հրապարակեն նոր մանիֆեստ աշխարհի բոլոր լեզուներով, որպեսզի այն մշտապես լինի աշխարհի բոլոր գիտնականների, պետական գործիչների, աշխարհի ճակատագրի համար պատասխանատու մարդկանց սեղանին:

Տասը տարի առաջ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեցին «Մոլեկուլային կենսաբանության և մոլեկուլային գենետիկայի արագ զարգացման և դրա հասումները ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու միջոցառումների մասին»: Կուսակցությունը և կառավարությունը մոլեկուլային կենսաբանության, գենային ինժեներիայի զարգացման հարցը համարում են պետականորեն կարևոր ու նշանակալից, նախատեսում հետազոտությունների ֆինանսավորման բարելավում, կադրերի պատրաստման գործի ընդլայնում, գիտական նոր ենթաբաժինների կազմակերպում, գիտության այս կարևոր բնագավառի հետազոտությունների ինտենսիվության համար անհրաժեշտ մատակարարումների ապահովում:

Հանրապետության կենսաբանների համար վճռական նշանակություն ունեցավ ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի և Հայաստանի գիտությունների ակադեմիայի նախագահության որոշումը հանրապետությունում մոլեկուլային կենսաբանության և մոլեկուլային գենետիկայի զարգացման մասին: Այս կարևոր միջոցառումների արգասիքն են հանրապետությունում ստեղծված գենային ինժեներիայի օջախները, առաջին հերթին՝ ակադեմիական հաստատություններում, արված են գիտական կադրերի պատրաստման առաջին քայլերը, պայմաններ են ստեղծվում թանկարժեք և աշխատատար փորձարկումների կազմակերպման համար: Կարելի է չտարակուսել, որ մոտ ապագայում այս բնագավառի հետազոտությունները ծանրակշիռ ավանդ կներմուծեն մեր երկրի մոլեկուլային կենսաբանության զարգացման ոլորտում: Այս առումով հույժ կարևոր և օգտակար գործ են կատարում հանրապետության գիտությունների ակադեմիային կից ֆիզիկո-քիմիական կենսաբանության և բիոտեխնոլոգիայի հարցերի միջգերատեսչական գիտատեխնիկական խորհուրդը, գիտությունների ակադեմիայի կենսաբանական գիտությունների բաժանմունքը:

Հայաստանի գիտական հասարակայնությունը համակ ուշադրությամբ է վերաբերվում սպառազինության մրցավազքի սանձահարմանը, խաղաղության ամրապնդման գործին ծառայող կոնստրուկտիվ գաղափարներին: Հանրապետության գիտնականները հանդես են գալիս հօգուտ մյուս երկրների գիտնականների հետ համագործակցության ընդլայնման. նրանց միավորում են անհանգստությունը ռազմական վտանգի աճման, սպառազինությունների մրցավազքի աննախընթաց թափի համար, պատերազմի վտանգի վերացման, յուրաքանչյուր մարդու առաջնագույն իրավունքի՝ ապրելու իրավունքի ապահովման ձգտումը:

---

# ԱՆՎԵՐՋՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ԵՎ ՄԱԹԵՄԱՏԻԿԱՅԻ «ՃԳՆԱԺԱՄԸ»

**Ս. ՀԱԿՈԲՅԱՆ**

Անվերջությունը կազմում է գիտական իմացության, մասնավորապես, մաթեմատիկայի ողջ էությունը և, միևնույն ժամանակ, դրա հիմնական դժվարությունը: Անցումը վերջավոր առարկաների մասին զգայական, փաստական գիտելիքից ընդհանուրի, մնայունի, անվերջի իմացությանը կապված է տրամաբանական և իմացաբանական բնույթի բազմաթիվ դժվարությունների հետ և փիլիսոփայության պատմության մեջ այն ուղեկցվել է էմպիրիզմի ու ռացիոնալիզմի միջև մղվող դարավոր պայքարով: Գիտության պատմությունը վկայում է, որ նրա այս կամ այն բնագավառում գիտական փաստերի աստիճանական կուտակմանը և համակարգմանը մեծ մասամբ հաջորդում են տեսական ընդհանրացումներն ու աշխարհայացքային ըմբռնումների թռիչքային փոփոխությունները: Այսպես, օրինակ, մեր դարասկզբին պարզ դարձավ, որ ֆիզիկայի բնագավառում ձեռք բերված հսկայական փաստական նյութին անհնարին է տալ հետևողական գիտական բացատրություն՝ մնալով մատերիայի, տարածության և ժամանակի դասական ըմբռնումների շրջանակներում: Քննադատելով «ֆիզիկական» իդեալիզմը նորագույն բնագիտության մեջ՝ Վ. Ի. Լենինը **Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ** աշխատության մեջ ցույց տվեց, որ ֆիզիկան այդ ճգնաժամային վիճակից կարելի է դուրս բերել՝ նրանում դիալեկտիկական մտածելակերպի ներթափանցման շնորհիվ: Հարաբերականության և ապա քվանտային տեսությունների ստեղծման շնորհիվ, ինչպես հայտնի է, իրականացվեց հեղափոխությունը ֆիզիկայում, որի հետ էլ փոխվեցին դասական պատկերացումների հետ կապված նրա հիմնական հասկացությունները:

Նմանօրինակ պրոցես ապրեց նաև մաթեմատիկան մեր դարասկզբին: Պարզվեց, որ մաթեմատիկայի տեսական հիմքը զերծ չէ ներքին տրամաբանական հակասություններից, որոնք հայտնի են «բազմությունների տեսության պարադոքսներ» կամ «տրամաբանական անտինոմիաներ» անունով: Մաթեմատիկական դրույթների տրամաբանական ճշգրտությունն արդեն դառնում է կասկածելի, եթե մնում ենք «ամբողջ», «մաս», «անվերջ բազմություն», «տարր», «պատկանելություն» և այլ հասկացությունների դասական ըմբռնումների շրջանակներում: Ֆիզիկայի նմանողությամբ այստեղ ևս պետք էր սպասել, որ վաղ թե ուշ տեղի կունենան հիմնական հասկացությունների և սկզբունքների արմատական փոփոխություններ: Եվ իրոք, մաթեմատիկայում ծագած տրամաբանական դժվարությունների ու հակասությունների առնչությամբ առաջացավ մի վիթխարի խնդիր, որը կոչվում է մաթեմատիկայի հիմնավորում: Այդ խնդիրը վաղուց արդեն դուրս է եկել զուտ մաթեմատիկայի շրջանակներից, ստացել է փիլիսոփայական, իմացաբանական և մեթոդաբանական նշանակություն, քանի որ մաթեմատիկայի հիմնավորման հարցը իր մի կողմով մարդկային իմացության ճշմարտացիության հարցն է ընդհանրապես: Ժամանակակից մաթեմատիկայում հենց այդ բնույթի հարցերի շուրջն է ծավալվում մատերիալիզմի և իդեալիզմի, դիալեկտիկայի և մետաֆիզիկայի պայքարը:



Մաթեմատիկայի հիմնավորման խնդրի պատմական արմատներն ըստ էության շատ խոր են: Քանի որ բնական թիվը մաթեմատիկայի ամենապարզ օբյեկտներից է, պատմականորեն խնդիր է դրվել ողջ մաթեմատիկան հանգեցնել բնական թվերին՝ դրանով իսկ այն դնելով ավելի հուսալի հիմքի վրա: Այս խնդիրը, որը հայտնի է մաթեմատիկայի թվաբանացում անունով, իր զգալի մասով լուծվել է դեռևս անալիտիկ երկրաչափության ստեղծման շնորհիվ, որի միջոցով հնարավորություն է ստեղծվում երկրաչափական ձևերի ուսումնասիրությունը հանգեցնելու թվերի միջև սահմանված հարաբերություններին: Մաթեմատիկայի թվաբանացման խնդիրն ավելի հրատապ է դառնում մաթեմատիկական անալիզի տրամաբանական հիմնավորման կապակցությամբ: Հայտնի է, որ անալիզի հիմնական գաղափարը՝ «անվերջ փոքրը», իր ստեղծման օրից ի վեր կապված է եղել որոշակի տրամաբանական բնույթի դժվարությունների հետ, որոնց հաղթահարումը, ի վերջո, հանգեցրել է անալիզի և ֆունկցիաների տեսության թվաբանացմանը: Անշուշտ, դա խոշոր նվաճում է եղել, սակայն կարևոր է նկատել, որ այդ եղանակով մաթեմատիկան հանգեցվել է ոչ թե պարզապես ամբողջ թվերին, այլ ամբողջ թվերի վերջավոր և անվերջ համակարգերին· Մաթեմատիկան ամբողջ թվերի բազմություններին հանգեցնելն ըստ էության չի վերացնում նրա հիմունքների բարդությունները, քանի որ գոյություն ունեցող տրամաբանական դժվարությունները վերջին հաշվով խտանում են անվերջության գաղափարի հակասական բնույթի մեջ: Հենց դրա դրսևորումն են բազմությունների տեսության պարադոքսները, որոնք ուղղակիորեն առնչվում են անվերջ բազմությունների հետ: Այսպես, օրինակ, բազմությունների տեսության մեջ ապացուցելի է, որ յուրաքանչյուր անվերջ բազմություն քանակական բնութագրով գերազանցելի է մեկ ուրիշ ավելի հզոր բազմությամբ, սակայն միաժամանակ ապացուցելի է, որ, սակայն, բոլոր բազմությունների բազմությունը այդ նույն առումով անգերազանցելի է: Այս և մի քանի այլ հակասություններ, որոնք կապվում են նույնպես անվերջ բազմությունների հետ, վկայում են, որ «անվերջ փոքրի» հետ կապված տրամաբանական դժվարությունները ոչ թե հաղթահարվել, այլ պարզապես թարգմանվել են բազմությունների տեսության լեզվով՝ կուտակվելով «անվերջ բազմության» մեջ: Ուստի և մաթեմատիկական իմացության առանցքային դժվարությունը ինչպես եղել, այնպես էլ մնում է, վերջին հաշվով, անվերջությունը:

Անվերջությունը, ինչպես և ցանկացած մաթեմատիկական հասկացություն, վերացարկման արդյունք է, և ժամանակակից մաթեմատիկայի ու տրամաբանության մեջ այն ըմբռնվում է երկու ձևով՝ պոտենցիալ անվերջություն և ակտուալ անվերջություն: Պոտենցիալ անվերջությունը դիտվում է որպես անընդհատ գործողություններ կատարելու պոտենցիալ հնարավորության արդյունք, որտեղ բազմության անվերջ տարրերը ներկայանում են որպես անվերջ կազմավորվող պրոցեսի հաջորդական քայլեր, երբ յուրաքանչյուր n-րդ տարրից հետո ստեղծվում է հաջորդը՝ n+1-րդը: Այսպիսի անվերջության տարրերը միաժամանակ գոյություն չունեն, նրանք ծնվում են աստիճանաբար, ընդ որում կառուցման ընթացքը շարունակելի է, իսկ անվերջությունն ամբողջությամբ ավարտուն կերպով առկա տրված չէ: Ակտուալ անվերջությունը ավելի բարձր կարգի վերացարկման արդյունք է: Այստեղ, վերանալով մարդկության ոչ միայն փաստական, այլև սկզբունքային հնարավորությունների սահմաններից՝ յուրաքանչյուր անգամ մեկական քայլ կատարելու մտային պրոցեսից, ենթադրվում է, որ անվերջ թվով քայլեր արդեն արված են, և անվերջությունը ներկայանում է ավարտուն, կատարյալ կերպով, ներկայանում է միանգամից:

Մաթեմատիկայի հիմունքներում տրամաբանական հակասությունների ու դժվարությունների առաջացման պատճառը շատ մաթեմատիկոսներ (ինտուիցիոնիզմի ներկայացուցիչներ Վայլ, Հայտինգ և ուրիշներ) գտնում են մաթեմատիկայում անվերջության գաղափարի չափից ավելի «ազատ» գործածության մեջ: Ուստի նրանք առաջարկում են հրաժարվել ակտուալ անվերջի գաղափարից և բավարարվել միայն պոտենցիալ անվերջության ընդունումով: Ինտուիցիոնիզմի տեսակետից հավաստի չէ նաև տրամաբանության «երրորդի բացառման օրենքը», որը վերջին հաշվով ենթադրում է նույն՝ ակտուալ անվերջության գաղափարը, ուրեմն, պետք է հրաժարվել նաև այդ օրենքից: Նման կարգի հրաժարումները, ինչ խոսք, այնքան էլ դյուրին գործ չեն: Դեռևս Արիստոտելն իր ժամանակին նկատել է, որ անվերջությու-

մեթոդի խոշոր թերությունն այն է, որ նախօրոք պետք էր իմանալ արդյունքը՝ այն ապացուցելու համար» (Стройк Д. Я., Краткий очерк истории математики, М., 1964, стр. 56)։ Անվերջությունից խուսափելու փորձերը մաթեմատիկայում «հատուցվում էին» տեսության խիստ սահմանափակությամբ ու զանազան թերություններով։

Հատվածների անհամաչափելիության պրոբլեմը լուծվում է իռացիոնալ թվի գաղափարը մաթեմատիկական ասպարեզ մուծելուց հետո։ Մասնավորապես, իռացիոնալ թվով է արտահայտվում քառակուսու անկյունագիծը, եթե որպես չափման միավոր է դիտվում այդ քառակուսու կողմը։ Իռացիոնալ թիվն արդեն նոր երևույթ էր մաթեմատիկայում. նրա միջոցով մաթեմատիկական ճշգրիտ մեթոդներով անվերջ պրոցեսները հնարավոր է դառնում ներկայացնել կատարյալ և ավարտուն տեսքով։ Օրինակ, երբ ասում ենք, որ քառակուսու անկյունագիծը նրա կողմից մեծ է $\sqrt{2}$ անգամ, ապա հատվածների վերադրման անվերջ պրոցեսը պատկերացնում ենք իրականացված, վերանում ենք ոչ միայն մեր փաստական, այլև սկզբունքային հնարավորությունների սահմաններից, այսինքն՝ կատարում ենք ավելի բարձր կարգի վերացարկում, պոտենցիալ անվերջությունից անցնում ակտուալ անվերջությանը։

Իռացիոնալ թվի ներմուծմամբ որոշակի կերպարանք ստացավ անընդհատության գաղափարը, որի հիման վրա նոր ժամանակներում ծնունդ առան մաթեմատիկական ավելի հզոր տեսություններ։ Պրակտիկ կյանքի պահանջներից դրդված, XVII—XVIII դարերում գիտական մտածողության մեջ թափանցեցին նոր հասկացություններ ու մեթոդներ, որոնց արդյունքում ստեղծվեց դիֆերենցիալ և ինտեգրալ հաշիվը։ Այս նոր հայտնագործություններն արդեն նոր հեղաշրջում էին բնագիտության մեջ։ Ֆ. Էնգելսը **Բնության դիալեկտիկա** աշխատության մեջ այդ հայտնագործությունները դիտում է որպես դիալեկտիկական մտքի թափանցում մաթեմատիկայի բնագավառը։ «Միայն դիֆերենցիալ հաշիվն է,— գրում է նա,— բնագիտությանը հնարավորություն տալիս մաթեմատիկորեն պատկերելու ո՛չ միայն **վիճակները,** այլև **պրոցեսները,** շարժումը» (Ֆ. Էնգելս, **Բնության դիալեկտիկա,** «Հայաստան» հրատ., 1969, էջ 282)։

Այդ դարաշրջանի գիտնականներից շատերը հակված էին տալու մաթեմատիկայի առարկայի տարերային մատերիալիստական մեկնաբանություն։ Զարգացող տեխնիկայի և մյուս գիտությունների մեջ մաթեմատիկայի ձեռք բերած հսկայական կիրառական խնդիրների տպավորության ներքո կարծես ստվերում էին մնում տեսության տրամաբանական հիմնավորման հարցերը, և անվերջության նկատմամբ ցուցաբերվում էր պակաս զգուշավոր ու համեմատաբար ազատ վերաբերմունք։ Իսկ դա անհետևանք չմնաց. որոշ գաղափարների, առանձնապես «անվերջ փոքրի» քննությամբ պարզվեց նրա անհստակ և հակասական բնույթը։ Մի դեպքում այն նույնացվում էր զրոյի հետ և հաշվման ընթացքում անտեսվում էր, իսկ մեկ այլ դեպքում՝ դիտվում որպես զրոյից միանգամայն տարբեր որոշակի մեծություն, որի հետ կարելի է կատարել ցանկացած գործողություն։ Հենց այս հանգամանքը որոշ մտածողների հիմք է տվել պնդելու, որ մաթեմատիկական անալիզի հիմնական հասկացությունները զուրկ են առարկայական բովանդակությունից։ Իսկ սուբյեկտիվ իդեալիստ Բերկլին, ծայրահեղության հասցնելով այդ բոլորը, ուղղակիորեն հայտարարել է, որ անալիզի առարկան, սկզբունքները և նրանում օգտագործվող մտահանգումներն ավելի ակնհայտ և պարզ չեն, քան կրոնի խորհուրդները և հավատի դոգմաները։ Անվերջ փոքրի հասկացության տրամաբանական հակասականությունն ակնհայտ էր, բայց զարմանալին այն է, որ այդպիսի՝ տրամաբանորեն չհիմնավորված, գործողությունների կատարումով ստացվում էր ճշմարիտ արդյունք։ Նկատի ունենալով այն հանգամանքը, որ այստեղ հավաստիությունը ձեռք է բերվում գաղտնի ճանապարհով, Կ. Մարքսն այդ հաշիվն իր **Մաթեմատիկական ձեռագրերում** համարում է «միստիկական դիֆերենցիալ հաշիվ»։ Վերլուծելով այն բաղադրիչ քայլերի ու անցումների բնույթը, որոնք կատարվում են դիֆերենցման ժամանակ, Կ. Մարքսը գրում է, որ դիֆերենցման գործողության (ինչպես և ընդհանրապես բացասման բացասումի) ըմբռնման ողջ դժվարությունը հենց այն է, որ ցույց տրվի, թե ինչով է այն տարբերվում այդպիսի պարզ գործողություններից և ինչպես է այդ պատճառով հան-



գեցնում իրական արդյունքների (տե՛ս К. Маркс, Математические рукописи, М., 1968, стр. 29)։

Անվերջ փոքրի «առեղծվածի» բացահայտումը մեծ ջանքեր էր պահանջում գիտնականներից։ Զենոնի ապորիաներից հետո սա երկրորդ խոշոր «ալեկոծությունն» է մաթեմատիկական մտքի զարգացման ընթացքում, այսպես ասած՝ մաթեմատիկայի երկրորդ ճգնաժամը, երբ սուր կերպով դրվում էր մարդկային իմացության ճշմարտացիության հարցը։ Այս դարաշրջանում մաթեմատիկան արդեն բավականաչափ հասուն և զարգացած գիտություն էր, համապատասխանում էր արտադրության, տեխնիկայի և բնագիտության պահանջներին՝ ուղղակիորեն նպաստելով դրանց բուռն զարգացմանը, իսկ, որ կարևոր է, մաթեմատիկական մեթոդը հասցնում էր իրական արդյունքների։ Սակայն տեսությունը մնում էր ինչ-որ միստիկական քողով սքողված, իսկ իրական արդյունք կոչվածը ձեռք էր բերվում ոչ այնքան «ազնիվ» միջոցներով։ Մաթեմատիկան, Էնգելսի պատկերավոր արտահայտությամբ, «Ճաշակեց իմացության խնձորը, որը նրա առաջ հսկայական հաջողությունների, բայց դրա հետ մեկտեղ նաև մոլորությունների ասպարեզ բացեց» (Ֆ. Էնգելս, **Անտի-Դյուրինգ,** «Հայաստան» հրատ., 1967, էջ 115)։ Երբ մաթեմատիկայի մեջ մուծված փոփոխական մեծությունները տարածվեցին անվերջ փոքրի և անսահման մեծի վրա, «ընդմիշտ չքացավ մաթեմատիկական ամեն մի բանի բացարձակ նշանակության և անհերքելի ապացուցվածության կուսական վիճակը. սկսվեց տարաձայնությունների դարաշրջանը» (նույն տեղը)։ Այս դարաշրջանում մաթեմատիկան իմացաբանական առումով հաղթահարել էր առաջին ճգնաժամի դժվարությունները, քանի որ նրա հասկացությունները թույլ էին տալիս նկարագրել շարժումը գործնականորեն, բայց ոչ՝ տրամաբանական խստությամբ։ Ուստի արծարծված պրոբլեմները պետք է խթանեին մաթեմատիկայի հետագա զարգացումը տեսության հիմքերի **տրամաբանական** հիմնավորման ուղղությամբ։ Հենց դրան էլ նվիրվեցին մի քանի սերունդների հետազոտությունները։

Ֆրանսիացի մաթեմատիկոս Կոշին ցույց տվեց, որ անվերջ փոքրի «անպատասխանատու» գործածությունը կարելի է փոխարինել ավելի ճշգրիտ հասկացության՝ հաջորդականության սահմանի կիրառմամբ։ Սահմանի միջոցով որոշակի է դառնում նաև այնքա՜ն կարևոր, բայց մինչ այդ այնքա՜ն մշուշոտ անընդհատության գաղափարը։ Այնուհանդերձ, սահմանային տեսությունն էլ իր տրամաբանական ներքին կառուցվածքով ու բովանդակությամբ այնքան կատարյալ չէր, որ հնարավորություն ընձեռեր պատասխանելու բոլոր ծագող հարցերին։ Մաթեմատիկական անալիզի և շարքերի տեսության կառուցվածքում առաջ էին գալիս նոր խնդիրներ, որոնց մեթոդաբանական հետազոտություններն անհրաժեշտաբար դրդում էին պոտենցիալ իրականացման անվերջությունից անցնել ակտուալ անվերջության վերացարկմանը։

Անալիզի հիմնական հասկացությունների ճշգրտման հետագա աշխատանքները, որոնք կատարվեցին Կ. Վայերշտրասի, Դեդեկինդի, Գ. Ֆրեգեի, Պեանոյի և այլոց աշխատություններում, բերեցին անալիզի և ֆունկցիաների տեսության «թվաբանացմանը», իսկ սահմանի գաղափարը հիմնավոր կերպարանք ստացավ միմիայն Գ. Կանտորի անվերջ բազմությունների տեսության մեջ։ Այդ բոլորն այնքան հաջող էր թվում, որ 1900 թվականին, անվերջ փոքրերի հաշվի ստեղծումից ավելի քան երկու հարյուրամյակ հետո, ժամանակի նշանավոր մաթեմատիկոսներից մեկը՝ Ա. Պուանկարեն, գոհունակությամբ հայտարարեց. «Այսօր մենք կարող ենք ասել, որ ձեռք է բերված բացարձակ ճշգրտություն»։ Երկրորդ խոշոր ճգնաժամը մնացել էր ետևում։

Բազմությունների տեսության առաջացման նախադրյալներն առկա էին անցյալ դարի երկրորդ կեսի մաթեմատիկայի գրեթե բոլոր բնագավառներում։ Արդեն աստիճանաբար կուտակվել և տարերայնորեն կիրառվում էին շատ հասկացություններ և սկզբունքներ, ինչպես օրինակ, անվերջ բազմության գաղափարը, արտապատկերումը, փոխմիարժեք համապատասխանությունը և այլն։ Նորաստեղծ տեսության մեջ «մաքուր ձևով» և բացահայտորեն դրսևորվում էին այն բոլոր նկատառումներն ու ենթադրությունները, որոնք անբացահայտ և քողարկված ձևով տեղ էին գտնում մինչկանտորյան մաթեմատիկայում։ Շնորհիվ բազմությունների տեսության մաթեմատիկան ձեռք բերեց գրեթե բոլոր բնագավառների զարգացման և հիմնավորման

միացյալ միջոց, հաղթահարվեցին մաթեմատիկական մտածելակերպում պատմականորեն առաջացած գրեթե բոլոր դժվարությունները, և տեսությունն ամբողջությամբ ապրեց նոր թափ և վերելք:

Սրանով է պայմանավորված այն, որ XIX դարի վերջի և XX դարի առաջին տասնամյակները Կանտորի տեսության «հաղթական երթի» ժամանակներ էին: Չնայած Արիստոտելից մինչև Կանտոր ակտուալ անվերջության գաղափարը փիլիսոփաներին և մաթեմատիկոսներին կասկածելի էր թվում, այսուհանդերձ, Կանտորի գաղափարները արժանացան մեծ ընդունելության, թեև նրա տեսության հիմքում բացահայտորեն ընկած էր հենց ակտուալ անվերջության գաղափարը: Կանտորն ինքը խոստովանում է, որ ակտուալ անվերջության գաղափարին հանգել է գրեթե իր կամքից անկախ, իր կողմից բարձր գնահատվող ավանդույթներին հակառակ, պարզապես **տրամաբանական** հարկադրանքով՝ տարիներ շարունակ պրպտումներ կատարելուց հետո (տե՛ս Кантор Г., Основы общего учения о многообразиях. «Новые идеи в математике», сб., № 6, 1914, стр. 20):

Մաթեմատիկայի հետագա զարգացումը ցույց տվեց, որ բազմությունների տեսության մեջ նվաճումների հետ մեկտեղ խտացել են նաև մաթեմատիկական իմացության դժվարությունները: Պուանկարեի հայտարարությունից հետո դեռ երկու տարի չէր անցել, երբ պարզ դարձավ, որ այդ տեսությունն իր հիմքերում շատ հեռու է բացարձակորեն ճշմարիտ լինելուց, քանի որ դրանում առաջանում են տրամաբանական հակասություններ: Բազմությունների տեսության պարադոքսների հետ կապված է մաթեմատիկայի հիմունքների՝ թվով երրորդ ճգնաժամը, որը մաթեմատիկան ապրում է մինչև օրս:

Պարադոքսներն առաջանում են տեսության, ինչպես ընդունված է ասել, եզրային մասերում, ծայրաստիճան վերացարկված բազմությունների հետ: Պարադոքսալ է այն, որ տեսության մեջ ապացուցելի են որևէ դրույթ և միաժամանակ այդ դրույթի ժխտումը: Մինչդեռ տրամաբանության հակասության օրենքի համաձայն երկու իրարամերժ դատողություններից մեկն ու մեկը կեղծ է: Այդպիսի մտահանգումները չեն համապատասխանում երկարժեք տրամաբանության պահանջներին, այսինքն՝ պարադոքսներն ունեն զուտ տրամաբանական բնույթ:

Տեսության յուրաքանչյուր ճգնաժամ որոշակի ձևով բնութագրում է նրա զարգացման մակարդակը տվյալ ժամանակաշրջանում: Զենոնի ապորիաներում արտահայտվում է տեսական և էմպիրիկ գիտելիքների միջև եղած հակասությունն անտիկ գիտության սահմաններում: Այդ շրջանում մաթեմատիկան դեռևս ի վիճակի չէր նկարագրել նույնիսկ պարզագույն պրոցեսներ: Թեև տեսության տրամաբանական հիմնավորման հարցերը երբեք չեն անտեսվել, այնուամենայնիվ, առաջին «ճգնաժամի» հիմնական դժվարությունն ավելի շատ իմացաբանական բնույթի էր, քան տրամաբանական: «Անվերջ փոքրի» դարաշրջանում պրակտիկայի փոփոխության հետ մեկտեղ զարգացել էր նաև մաթեմատիկական իմացությունը, անտիկ աշխարհում ծագած դժվարություններն իմացաբանական առումով հաղթահարվել էին, դիալեկտիկան թափանցել էր մաթեմատիկայի բնագավառը: Այժմ տեսության ճշմարտացիության հիմնական չափանիշը դրա արդյունքների համապատասխանությունն էր շրջապատող երևույթներին, բայց միջոցների միջև խիստ խտրություն չէր դրվում. «Նպատակն արդարացնում է միջոցները»: Բազմությունների տեսության փուլում մաթեմատիկան իր խիստ վերացական և ընդհանրական բնույթով արդեն «հեռացել էր» զգայական նյութից, այդ պատճառով առաջին պլան էին մղվել նրա դրույթների ճշմարտացիության տրամաբանական չափանիշները:

Այժմյան պարադոքսներում միմյանց ուղղակիորեն չեն հակասում տեսական պատկերացումներն ու փաստական գիտելիքը (ինչպես առաջին ճգնաժամի դեպքում), ոչ էլ օգտագործվող հասկացություններն են անորոշ (ինչպես երկրորդ ճգնաժամի ժամանակ): Դրանցում արտահայտվում է անհամապատասխանությունը տրամաբանության օրենքների և տեսական այնպիսի մտահանգումների միջև, որոնք արտածվում են միանգամայն ճշմարտանման հիմունքներից: Ի դեպ, պարադոքսներն առնչվում են այնպիսի բազմությունների հետ, որոնք գործնականում բոլորովին չեն կիրառվում մաթեմատիկայի որևէ բնագավառում:



Եթե մաթեմատիկայի առաջին ճգնաժամը պայմանականորեն համարենք **տեսության անբավարարության** ճգնաժամ, երկրորդը՝ **չհիմնավորված միջոցների,** ապա նման պայմանականությամբ ներկա ճգնաժամը կարելի է համարել **հակասական հետևությունների** ճգնաժամ: Եթե նախորդ ճգնաժամերի ժամանակ առաջացել է կասկած հիմնականում բուն մաթեմատիկական այս կամ այն սկզբունքի կամ մեթոդի նկատմամբ, ապա ներկայումս կասկածանքի ոլորտն ավելի է մեծանում, մաթեմատիկականին ավելանում է նաև տրամաբանականը. կասկածի է ենթարկվում նաև տրամաբանության սկզբունքների համապարփակությունը, հավիտենականությունը:

Տրամաբանության հարցը պարադոքսների առնչությամբ բարձրանում է ոչ միայն այն առումով, որ մաթեմատիկական դրույթների ճշմարտացիության տրամաբանական չափանիշն այժմ դարձել է ավելի գործնական, և նաև ոչ այն պատճառով, որ մաթեմատիկական մտահանգումները տրամաբանության օրենքների կիրառության արդյունք են: Դրանում առկա է մեկ այլ հանգամանք ևս. բազմությունների տեսության մեջ խախտվում են ոչ միայն զուտ մաթեմատիկական օրինաչափություններ, այլ նաև մտածողության սկզբունքները: Հասկացությունների և մեթոդների խիստ համընդհանրության շնորհիվ «բազմությունների տեսությունն իր զգալի մասով դառնում է մաթեմատիկական տրամաբանություն, արտահայտված ուրիշ՝ բովանդակային լեզվով» (Ф. А. Медведев. Развитие теории множеств в XIX веке, М., 1965, стр. 11): Պատահական չէ, որ մաթեմատիկայի հիմնավորման ժամանակակից ուղղություններից մեկը՝ լոգիցիզմը, առաջին պլան է մղում մաթեմատիկայի զարգացման զուտ տրամաբանական մեթոդը:

Բազմությունների տեսության զարգացմամբ, ինչպես ասվեց, մաթեմատիկան հասել է այնպիսի ընդհանրության, որ նրանում որոշակիորեն արտացոլվում են նաև մտածողության պրոցեսի սկզբունքները: Մասնավորապես այնպիսի հասկացություններ, ինչպիսիք են, օրինակ, «բոլոր բազմությունների բազմություն», «բոլոր կարդինալ թվերի բազմություն», «բոլոր օբյեկտների բազմություն» և այլն, որոնց կիրառությունը կապված է պարադոքսների առաջացման հետ, ունեն ոչ մաթեմատիկական ծագում դասական իմաստով և առավել ևս չեն արտահայտում նախատիպ ունեցող իրական առարկաների որևէ հարաբերության արտացոլումներ: Դրանցում ընդհանրական ձևով արտահայտվում են մտային պրոցեսների արդյունքները: Իհարկե, ինչպես ցանկացած գաղափար, այնպես էլ այստեղ հիշատակվածները, վերացարկման արդյունք են: Սակայն այդ օբյեկտները որակապես տարբերվում են սովորական բազմություններից, դրանց վրա ճիշտ չի լինի առանց բացառությունների տարածել բազմությունների տեսության բոլոր սկզբունքները:

Ժամանակակից հետազոտությունները պարզում են, որ հիշատակված օբյեկտների առնչությամբ պարադոքսներ առաջացել են վերջին հաշվով այն պատճառով, որ դրանց մասին կշռադատությունների մեջ անբացահայտ ձևով տեղ են գտել պոտենցիալ անվերջությամբ սահմանափակվածության սաղմեր, այնինչ դրանց հաղթահարման համար, ընդհակառակը, հարկ կա, հենվելով ակտուալ անվերջության վերացարկման վրա, անցնել ծայրաստիճան ծավալուն, «հասուն» անվերջության գաղափարին: Եթե այլ մակարդակներում մի անվերջը գերազանցելի է մեկ այլ կարգի անվերջով, ապա «հասուն» մակարդակում անվերջությունն անգերազանցելի է ընդհանրապես: Այս մակարդակում անվերջության ծավալման բոլոր հնարավորությունները ընկալվում են որպես սկզբունքորեն կատարված և ավարտված:

Հանրագումարի բերելով այս բոլորը, տեսնում ենք, որ մաթեմատիկայի զարգացման ճանապարհին ծագած խոշոր դժվարությունների առաջացման պահին մաթեմատիկական մտածելակերպը ուղղակի կամ անուղղակի ձևով սահմանափակվել է պոտենցիալ անվերջության վերացարկումով, իսկ դրանց հաղթահարումը պատմականորեն իրականացվելիս, որպես անհրաժեշտություն, անցում է կատարվել ակտուալ անվերջության գաղափարին: Փիլիսոփայության տեսանկյունից պոտենցիալ իրականացման վերացարկումը ներկայացնում է անվերջ քանակական սահմանական փո-

փոխություն, այնինչ ակտուալ անվերջությունը թույլ է տալիս դիտել այդ անվերջ պրոցեսի ավարտը, այսինքն՝ ներկայացնում է այնպիսի քանակական փոփոխություն, որի արդյունքում ի հայտ է գալիս նոր որակ: Գիտության զարգացման յուրաքանչյուր փուլում, երբ մաթեմատիկայում տեղի են ունեցել արմատական փոփոխություններ, ընդլայնվել է մաթեմատիկական օբյեկտների ոլորտը և մշակվել են որակապես նոր ու ավելի հզոր մեթոդներ, ամեն անգամ անհրաժեշտաբար, բացահայտ կամ անբացահայտ ձևով կիրառվել է ակտուալ անվերջության վերացարկումը: Զարգացման պատմությունն այնպիսի ընթացք է ունեցել, որ յուրաքանչյուր փուլում ծագած դժվարությունների հաղթահարման կապակցությամբ առաջ են եկել հասկացություններ, այդ թվում՝ անվերջության նոր ըմբռնումներ, որոնց սահմաններում, սակայն, ծնվել են նորանոր դժվարություններ: Վերջիններս էական դեր են ունեցել գիտության հետագա զարգացման ուղղությունը որոշելիս: Այստեղ ևս գործում է գիտական իմացության զարգացման այն օրինաչափությունը, ըստ որի «Ի տարբերություն մյուս ճարտարապետների, գիտությունը ոչ միայն կերտում է երկնային դղյակներ, այլև կառուցում է շենքի առանձին բնակելի հարկերը նախքան նրա հիմքը գցելը» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 13, стр. 43): Հիրավի, երկարամյա զարգացման ընթացքում մաթեմատիկան «բնակելի հարկերը» կառուցելուց հետո պարբերաբար բազմիցս անդրադարձել է իր հիմքերի կառուցմանը և վերակառուցմանը:

Կասկածից վեր է, որ մաթեմատիկայում բացառված չեն լինի հետագա ուրիշ խոշոր դժվարություններ, որոնցից մի քանիսը գուցե և համարվեն ճգնաժամեր: Պետք է կարծել, որ այդ դժվարությունները մեծ մասամբ կախված կլինեն անվերջության ըմբռնումից, իսկ դրանց հաղթահարման արդյունքում անվերջի գաղափարը կդառնա է՛լ ավելի հստակ և որոշակի:

---



# ԻԲՐԵՎ ՍԻՐՈ ԱՌՀԱՎԱՏՉՅԱ

**ԳՈՐԻՍԻ ԽՆՁՈՐԵՍԿ** գյուղում իմ առաջին ծանոթը պետական տնտեսության կուսկազմակերպության բյուրոյի անդամ Էդիկ Փանդունցը եղավ: Ամառ էր, մենք՝ մայրաքաղաքային մի խումբ լրագրողներ, նստել էինք կալերում, որտեղ կարմրահատ ցորենն էր շեղջված, և իրիկնահովը մեզ էր հասցնում ցորենի ու մեղրի խառը հոտը: Օրն արդեն հրաժեշտ էր տալիս, և ամառային աստղազարդ երկնքում կայծկլտում էին հազարավոր մանրիկ լուսատուներ: Մեզնից քիչ այն կողմ գիշերելու էր պատրաստվում գյուղը, իսկ կալերում դեռ եռուզեռ էր: Բեռնատար ավտոմեքենաները, որ հեռավոր հանդերից կրում էին կարմրաշեկ հատիկը, կանոնավոր հաջորդականությամբ հերթափոխում էին միմյանց: Նրանց հեռարձակ լույսերից մի պահ հստակորեն գծագրվում էին հորիզոնը եզերող սրակատար ժայռերի ուրվապատկերները, որոնք հետո անմիջապես թաղվում էին խավարի մեջ: Ամպերի տակից շուտով դուրս սահեց լուսնի կլոր սկավառակը, և կալը, լեռները, ճանապարհն ու ողջ Խնձորեսկը ողողվեցին թափանցիկ կաթնագույնով: Փանդունցն անմիջապես նայեց ժամացույցին և, ասես արդարանալով, նկատեց.

— Ուշ է արդեն, էս ինչո՞ւ չեկավ, գոմում հիմա էլ անելիք չկա:

Մեկը կշեռքի մոտ խմբվածներից, կարծեմ գլխավոր գյուղատնտես Գրիշա Գալըստյանը, արձագանքեց.

— Արամայիսի համա՞ր անելիք չկա... Նա երբ էլ ուզենա, մի գործ կճարի,— և ապա իսկույն էլ ձայնեց.— հե՜ն, լույսեր են երևում, նրա «Նիվան» կլինի:

Իրոք, քիչ անց կալ մտավ Արամայիսի «Նիվան», և նա մոտեցավ մեզ՝ բարձրահասակ, նիհարավուն, հոգնած ու անհամբեր տեսքով:

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց՝ ոչ մեկին չդիմելով, և հավաքվածները մի տեսակ մեղավոր ժպտացին.

— Բան էլ չէ, նստիր, ընկերները քեզ տեսնել են ուզում:

Նա թեթևակի հոգոց հանեց.

— Տնաշեններ, այդպես ասեիք, էլի, երեխան հիվանդ էր, ես էլ կարծեցի նրա պատճառով է...

— Դե, չէ՛, չէ՛, նստիր, ի՞նչ ես խառնվում իրար:

Հետո մենք երկար ժամանակ զրուցում էինք կիսամութի մեջ, և նա, ասես արդարանալով, բացատրում էր «իր տագնապը»:

— Չեմ կարող ոչ մի բանի նկատմամբ անտարբեր լինել, գիտեմ, երեխա է, հիվանդացել է, կլավանա, բայց էլի տեղս չեմ գտնում...

Այդ «տեղը չգտնելը» (հետո հասկացանք) նրա համար պարզապես բնավորության հատկանիշ է, բայց դա այն տեղը չգտնելը չէ, երբ մարդ ողջ մի կյանք ապրում է՝ այդպես էլ առանց հասկանալու, թե ինչու է ապրել, այլ այն, երբ եղածով չի բավարարվում, ցանկանում է միշտ շարժման մեջ լինել, միշտ գործի մեջ, միշտ այրվելով, ու բարիքը հենց դրանից էլ ծնվում է:

Ահա և օրինակը. մարդը ապրում և աշխատում էր հարազատ գյուղում: Վատ չէր աշխատում (ամեն մի կովից ստանում էր 2.000 կիլոգրամ կաթ) և վատ էլ չէր վաստակում (ամսական 200—250 ռուբլի աշխատավարձ): Բոլորը նրա մասին գովեստով էին խոսում, հաճախակի էր արժանանում պարգևների, խրախուսանքների: Բայց... նա ինքը հոգեպես հանգիստ չուներ, տեսնում էր, տնտեսությունը շատ դանդաղ է առաջ գնում, ավելի հաճախ դոփում է տեղում, և Խնձորեսկի փառքը խամրում է աչքի առաջ, հաջողությունները նվազում՝ հալոցք ընկած ձյան պես:

Ժողով չկար, որտեղ կրքեր չեռային, որտեղ կոմունիստների՝ մեկը մյուսին կպչելու, թերությունը սեփական անձից վանելու և ընկերոջ վզին փաթաթելու տրամա-

դրությունները չիշխեին: Իսկ Արամայիսին այդ բոլորից հեռու էին պահում. մարդն իր գործը գերազանց է կատարում, ֆերմայում նրան հասնող չկա: Ո՛չ Աշոտ Մանուչարյանը, ո՛չ Վոլոդյա Հայրապետյանը, ո՛չ Հովիկ Հակոբջանյանը, ովքեր Արամայիսի ավանդական, անփոփոխ մրցակիցներն են, նրան հավասար չեն կարողանում քայլել, թեև պակաս կթվորներ ու իրենց գործի պակաս գիտակներ չեն: Մի խոսքով, հերոսը միշտ վեր է բոլորից, և նրանից դժգոհություններ երբեք չեն հնչում:

Բայց նա ինքը գոհ չէր իրենից: Ամեն մի գովեստ դառն դեղահաբ էր թվում. ախր, կողքին մարդիկ տենքում են, իսկ ինքը ճախրում է բարձունքներում, մի՞թե դա ուրախություն է: Երկար է մտածում, ծանր ու թեթև անում, կարդում, ականջի ծայրով լսում մասնագետների ու ղեկավարների պատմածները. հատկապես կոլեկտիվ ու անհատական կապալի մասին, որը նրան միանգամից գայթակղում է. ահա թե որն է փակուղուց դուրս գալու ելքը: Ուզում էր խոսել տնտեսության նորընծա դիրեկտոր Սեյրան Խաչատրյանի հետ (գիտեր՝ նա նույնպես հարգանքով է վերաբերվում աշխատանքի կազմակերպման նոր ձևին, մըտածում է այն իրենց մոտ արմատավորելու մասին) ու համարձակությունը չէր ներում: Ներքուստ կշտամբում էր իրեն՝ էլ ի՞նչ հերոս ես դու...

Իսկ Խաչատրյանն իր հերթին գտել էր «օբյեկտը». մարդիկ բոլորը չէ, որ համարձակ ձեռք են մեկնում նորույթներին, բայց Արամայիսը չի վախենա՝ համառ է, հաստատակամ, նյարդերով ասես հասկանում է այս կամ այն գործի պիտանիությունը: Եվ կայացավ նրանց զրույցը: Խաչատրյանը հիմա վստահորեն կարող է ասել, որ ընտրության հարցում չի սխալվել: Երկար խոսեցին նրանք, և ահա Արամայիսի համար սկսվեցին տագնապներով լի օրեր: Նախկին չորս հոգիանոց օղակում ընդգրկվեց ևս երեք հոգի, և յոթով, ամենամյա 85-ի փոխարեն, սկսեցին խնամել 207 կով: Խնամքը, կերակրումը, պահպանությունը տարվում է խիստ ռեժիմով, կարգ ու կանոնով, զոոտեխնիկայի օրենքներին լիովին համապատասխան: Առաջին հոգսը համարվեց գոմում սանիտարական պայմանների ստեղծումը. հաճախակի թիմարում էին կովերին, մաքրում, կթից առաջ պարտադիր լվանում էին կրծերը, մերսում: Աչքաթող չէր արվում ոչ մի մանրուք՝ օդափոխությունից սկսած մինչև գոմաղբի մաքրումն ու ավտոմատ ջրումը: Այստեղ էլ ականջը միշտ մեխանիզմների ձայնին էր. նրանք պետք է սարքին վիճակում լինեն, գործեն անխափան: Կուսակցական ժողովներում հիմա արդեն լուռ չէր նըստում, խոսում էր, վիճում, ապացուցում իր կատարած գործի արդյունավետությունը, խրախուսում նրանով հետաքրքրվողներին, այն իրենց մոտ արմատավորել ձգտողներին: Հատկապես հուզվում էր անասնաշենքերի հին, անբարետես ու ոչ համարավետ լինելու վիճակից. այդպիսի գոմերում, հազար կտոր էլ դառնաս, հոլ ասելուց ավելի վեր չես թռչի: Իսկ դա Խընձորեսկին հիմա չի բավարարում: Տնտեսությունն արդեն գտել է իրեն, առաջ է քայլում, նրա անունը կրկին հնչում է շըրջանի լավագույնների մեջ: Լարված ու հոգսերով լեցուն օրերը հաջորդում են միմյանց, դառնում շաբաթներ, ամիսներ, տարի: Եվ ահա կուսակցական հաշվետու ժողովում ամփոփվում են 1983 թվականի արդյունքներն ու... մարդիկ մի պահ չեն հավատում լսածին: Արամայիս Հայրյանը իր ղեկավարած յոթ մարդուց բաղկացած օղակով յուրաքանչյուր կովից ստացել է... 3.780 կիլոգրամ կաթ: Չնվաճված բնագիծ ոչ միայն Խնձորեսկում, այլև ողջ Գորիսի շրջանում:

...Պատմում է այս մասին Փանդունցը, իսկ ես, լուսնյակի և էլեկտրալամպերի խառն լույսի տակ նայում եմ Արամայիսի դեմքին: Նայում եմ ու... զարմանալի բան. ոչ ուրախություն կար այնտեղ, ոչ էլ շեշտված գոհունակություն, որը շատ բնական կլիներ նման պարագայում:

— Ժամանակին շատ բան աչքաթող արեցինք, թերություններ կուտակեցինք,— խուլ, դժգոհ ձայնով միջամտում է Արամայիսը,— բայց էլի ամեն մի կովից համարյա 3.300 կիլոգրամ կաթ էի ստանում, այնպես որ 3.780-ը դեռ շատ հեռու է բավարար համարվելուց: Գոնե ինձ, իմ օղակի համար ես դա սահման չեմ համարում: 4.000՝ ահա թե որը պետք է վաղվա չափանիշը լինի: Դրան գումարած ևս մի հանգամանք՝ ֆերման ընդհանուր առմամբ պիտի առաջ գնա, մեկ կամ երկու հոգու ցուցանիշը դեռ ամբողջ կոլեկտիվի ցուցանիշը չէ: Մեզ անասնաշենքեր են պետք, համալիր մեքենայացում, արմատական վերափոխություն, աշխատանքային ու կուսակցական ամուր կարգապահություն:

Նա խոսում է մի քիչ խռպոտ, անհանգիստ ձայնով և ճիշտ ինքն իր նման է՝



նվաճումով գոհ, բայց ոչ բավարարված, փառքի դափնիների վրա չհանգստացող, միշտ նորը որոնող և իրենից հետո լուսավոր հետքեր թողնող: Այդ հետքերը, հարկավ, այն բարձր թվերն են, որ դարձյալ գրանցվում են նրա անվան դիմաց արդեն ընթացիկ 84-ում՝ մարդկանց ստիպելով պատկառանքով նայել դրանց ու նաև մի տեսակ մղելով լուռ գոտեմարտի: Եվ նա գիտե այդ ու չի վախենում, նա ինքը ձըգտում է այդ գոտեմարտին, ինքը պայքարի մեջ է քաշում գործընկերներին՝ հաղթանակի հասնելու իր հնարքները ցույց տալով, անձնական օրինակով ապացուցելով դրանց ճշմարտացիությունը:

— Ինձ ի՞նչն է կապալային մեթոդի մեջ գերադասելի թվում,— կրքոտ կերպով շարունակում է Արամայիսը,— այն, որ մեր օղակի յուրաքանչյուր անդամին, նախկինի հետ համեմատած, այժմ 8—9 կով ավելի է հասնում, իսկ ցուցանիշներով առավել բարձր ենք, քան այն ժամանակ, երբ չորս հոգով էինք...

— Արամայիս, կապալը հուսալիորեն իր ճանապարհն է հարթում, դու քեզնից պատմիր,— ընդհատում է նրան Էդիկ Փանդունցը:— Պատմիր քո մանկությունից, այն բանից, թե ինչպես դարձար անասնապահ, ինչպե՞ս անցար քո երկար ճանապարհը և չե՞ս ափսոսում, արդյոք, ընտրությանդ համար: Ընկերները նաև այդ են ուզում իմանալ:

Նա հանկարծակիի է գալիս.

— Խոսքն, ախր, իմ մասին չէր:

— Իսկ մենք ուզում ենք, որ քո մասին լինի,— խոսակցությանը խառնվում եմ ես:— Մենք բոլորս էլ, մեկը՝ քիչ, մյուսը՝ շատ, մեր սերն ու նվիրումն ենք ներդնում աշխատանքի մեջ, իսկ մեզ շրջապատող մարդկանց մասին, այն մարդկանց մասին, ովքեր դժվար մասնագիտություն են ընտրել ու հավատարիմ են դրան, ամեն բան չէ, որ գիտենք: Այստեղից էլ՝ խորհրդավոր կարծիքը նրանց ունակությունների վերաբերյալ: Այ, դուք սոցիալիստական աշխատանքի հերոս եք, կոմունիստ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, հարգանքով ու փառքով շրջապատված, բայց, արդյո՞ք քո կյանքում ամեն ինչ հարթ ու հանգիստ է ընթացել, արդյո՞ք տատանումներ չես ունեցել, ինչպե՞ս ես կարողացել հաղթահարել դժվարությունները, գնալ քո՛ ուղիով: Եվ ո՞րն ես համարում քո հաջողության գաղտնիքը:

Նա ժպտում է՝ միանգամից շատ հարցեր չե՞ս տալիս, և լռում է մի պահ:

— Պատասխանս վերջին հարցից կըսկսեմ. իմ գաղտնիքը, այսինքն՝ տվյալ դեպքում հաջողությունների բանալին, որը ոչ լաբորատոր հետազոտումներով է բացատրվում, ոչ էլ գիտական ուսումնասիրությունների կատարումով, նրա լուծումը հասարակ մի բառի՝ աշխատասիրության մեջ է:

Նվիրված, ջանադիր աշխատանքով սարեր շուռ կտաս: Մանավանդ, երբ կողքիդ հուսալի ընկերներ են, լավ, ազնիվ մարդիկ, որոնց կարող ես դժվարության պահին հենվել: Իսկ դժվարությունները մեր աշխատանքում՝ որքան ուզեք: Դրանից էլ հաճախ տատանումները: Ա՛յ, հարցնում եք՝ տատանումներ չե՞մ ունեցել: Ինչո՞ւ չէ: Կթվորի աշխատանքը հեշտերից չէ: Պատահում է տարին անբարենպաստ է լինում, կերը՝ քիչ, ցածրորակ, սարերում շարունակ անձրևներ են տեղում, և անասունների մեջ հիվանդություն է տարածվում... Թեկուզ հազար կտոր եղիր, բարձր արդյունքի չես հասնում... Այդ ժամանակ երանի ես տալիս նրանց, ովքեր իրենց ժամին գործի գնում, իրենց ժամին գալիս են տուն, ովքեր քեզ նման ամեն օր չեն թըրջվում անձրևից ու չեն խաշվում տապից, գիշերները մինչև լույս գոմահոտի մեջ դես ու դեն չեն ընկնում: Եվ հիշում ես, որ դու դպրոցում գերազանցիկ աշակերտ ես եղել, ու ուսուցիչներդ լավ ապագա են գուշակել քեզ համար ու զարմացել, երբ մի օր փոխանակ Երևանի ճամփան բռնելու, ֆերմա ես գնացել ու ինժեների և ուսուցչի փոխարեն անասնապահ դարձել:

Եվ, այնուամենայնիվ, չեմ դժգոհում, ազնիվ խոսք, չեմ դժգոհում: Սիրելուց բացի, անասնապահ դառնալն ինձ համար մի տեսակ երդումի նման էր ու թեկուզ տասը կյանք էլ ունենայի, էլի նույն ճանապարհը կընտրեի: Պատճառը խոր անձնական է. դպրոցը նոր էի ավարտել, երբ եղբայրս՝ Արբակ Հայրյանը, որ դարձյալ կթվոր-անասնապահ էր, սարում ավտովթարից մահացավ: Նա իր գործը շատ էր սիրում և այդ սիրով վարակել էր նաև ինձ, ու ես մտածեցի, որ իրավունք չունեմ մեր սիրուն դավաճանելու: Եվ իբրև եղբորս նկատմամբ տածած սիրո առհավատչյա, գնացի նրա ճանապարհով, որով քայլում եմ ահա արդեն քանչորս տարի:

Իբրև սիրո առհավատչյա. նա ասաց այդ բառերը, և ես դրանք պահեցի հիշողության մեջ. դրանից ավելի լավ չես էլ ասի,

ու եթե քո գործը շաղախված է այդ առհավետ սիրով, դու նրան երբեք ու երբեք չես դավաճանի:

...Նրան՝ երիտասարդ տղային, կոլեկտիվում լավ ընդունեցին: Տարեց անասնապահները սովորեցրին այն ամենը, ինչ գիտեին իրենք, հաղորդակից դարձրին իրենց գաղտնիքներին, որ ճանաչել էին երկար տարիների ընթացքում, սովորեցրին ամենօրյա աշխատանքի մեջ հեռուն նայել: Արամայիսն ուշիմ աշակերտ եղավ. սկսելով ընդամենը՝ 1.500 կիլոգրամից, շատ շուտով դարձավ ֆերմայի փարոսը՝ ստանալով ամեն մի կովից 2.000 կիլոգրամ կաթ: Հետո թվերը միմյանց հաջորդեցին՝ 2.200, 2.500, 2.700, ապա և 3.000: Աշխատանքի հինգերորդ տարում արդեն նրա անունը պատվավոր տեղ գրավեց հանրապետության առաջավորների շարքում. երիտասարդ կթվոր-անասնապահն արժանացավ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի: 1973-ին նրա կուրծքը զարդարեց Լենինի շքանշանը, այդ տարի էլ նա գինվորագրվեց կուսակցությանը: Երաշխավորեցին տարեց ընկերները, նրանք, ում մոտ աշխատանքային մկրտություն էր ստացել, բռնել մեծ կյանքի քննությունը...

Կոմունիստ Արամայիս Հայրյանը նոր եռանդով ու ոգևորությամբ սկսեց աշխատել: Եվ կրկին նվաճեց մի նոր բարձունք, որի անմիջական գնահատությունը եղավ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ ընտրվելը:

Իսկ 1981-ին, երբ արդեն 3.000-ական էր, վարպետ կթվոր-անասնապահ, երբ շրջանում ամենուր ուսումնասիրում էին նրա փորձը և մրցում նրա հետ, նրան շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի պատվավոր կոչում...

Արամայիս Հայրյանը հիմա նոր ձևով է սկսել աշխատել: Ասել է թե՝ նոր դժվարություններ են երևան եկել, բայց նա համառությամբ շարունակում է իր ուղին՝ դեպի նոր բարձունքներ տանող ուղին:

ՏԱՆՅԱ ԹԱՆԴԻԼՅԱՆ

---



---

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ, թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

---

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

---

*Հանձնված է շարվածքի 15.08.84 թ.: Ստորագրված է տպագրության 5.09.84 թ.: ՎՖ 04669*
*Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16.482: Պատվեր 1784*

---

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.